Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7
ՀՈՒԼԻՍ
1986 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

**Խմբագրության հասցեն՝**

*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ**

| | |
|---|---|
| գլխավոր խմբագիր | 52—89—93 |
| գլխավոր խմբագրի տեղակալ | 52—99—06 |
| պատասխանատու քարտուղար | 52—99—22 |
| պատասխանատու քարտուղարի տեղակալ | 56—59—93 |

**Բաժիններ**

| | |
|---|---|
| մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի | 52—05—58 |
| կուսակցական կյանք | 52—25—43 |
| սոցիալ-տնտեսական պրոբլեմների | 52—57—56 |
| գիտության և կուլտուրայի | 52—99—34 |
| գրական աշխատողներ | 52—66—77 |
| | 56—59—94 |
| թղթարկիչ, սրբագրիչ | 53—86—11 |
| | 52—99—36 |








# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1986 թվականի հունիսի 16-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը՝

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների պետական պլանի և դրա իրացման հետ կապված՝ կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի 1986 թվականի հունիսի 10—11-ը Բուդապեշտում կայացած խորհրդակցության արդյունքների մասին:

Այդ հարցերի շուրջը պլենումում զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Զեկուցման շուրջը պլենումում ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝

ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի. Վորոտնիկովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն. Ելցինը, Վոլգայի ՍՍՀՄ 50-ամյակի անվան ավտոմոբիլի գործարանի էլեկտրիկների բրիգադավար ընկ. Վ. Մ. Մալիխինը, էլեկտրոնային արդյունաբերության մինիստր ընկ. Վ. Գ. Կոլեսնիկովը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստր ընկ. Ս. Վ. Կոլպակովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ն. Սլյունկովը, Ղազախստանի կոմկուսի Ակտյուբինսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ն. Տրոֆիմովը, ՍՍՀՄ պետական ագրոարդյունաբերական կոմիտեի նախագահ ընկ. Վ. Ս. Մուրախովսկին, ՍՄԿԿ Կեմերովոյի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Երմակովը, Իվանովոյի Ս. Մ. Կիրովի անվան մանածագործական ֆաբրիկայի դիրեկտոր ընկ. Վ. Ն. Գոլուբևան, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Կ. Պուգոն, ՍՄԿԿ Վոլգոգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ի. Կալաշնիկովը, ՍՄԿԿ Թաթարիայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Ի. Ուսմանովը, սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման համակարգերի մինիստր ընկ. Մ. Ս. Շկաբարդնյան, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Ի. Պատիաշվիլին,

հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերության մինիստր ընկ. Բ. Վ. Բալմոնտը:

Պլենումը հավանություն տվեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների պետական պլանի նախագծին և ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ շարադրված՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի դրույթներին ու հետևություններին, որոնք նպատակամղված են ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացմանը: Նպատակահարմար համարվեց հնգամյա պլանը դնել ՍՍՀՄ Գերագույն սովետի քննարկմանը:

Պլենումի մասնակիցները միահամուռ ընդունեցին Սովետական Միության աշխատավորներին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմում՝ տասներկուերորդ հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար համաժողովրդական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին:

Պլենումը բարձր գնահատեց Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Բուդապեշտում կայացած խորհրդակցության արդյունքները և լիովին հավանություն տվեց սովետական պատվիրակության գործունեությանը այդ խորհրդակցությունում:

Նշված հարցերի վերաբերյալ պլենումի ընդունած որոշումները հրապարակվում են մամուլում:

Պլենումում քննության առնվեցին և հավանության արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի առաջարկությունները կազմակերպական հարցերի վերաբերյալ՝ կապված ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ նստաշրջանի անցկացման հետ:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:

---

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1986-1990 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԵՎ ՆՐԱ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար **Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ** զեկուցումը

Ընկերնե՛ր:

Այսօր մենք պետք է քննարկենք, թե ինչպես է կենսագործվում համագումարի սահմանած գլխավոր գիծը, ամփոփենք ետհամագումարյան աշխատանքի նախնական արդյունքները և դասեր քաղենք այդ աշխատանքից, սահմանենք կուսակցության հերթական խնդիրները:

Համագումարից հետո, իհարկե, այնքան էլ շատ ժամանակ չի անցել: Բայց ժամանակն այնքան պատասխանատու է, և հասարակության առջև այսօր ծառացող խնդիրները այնքան մեծ են, որ չենք կարող մշտական վերահսկողության տակ չպահել վերափոխումների երակազարկը, մեր մտահղացումներն ու պլանները չբաղդատել կյանքի իրական ընթացքի հետ: Կարճ ասած՝ խոսքը վերաբերում է ընթացիկ մոմենտի էությանը, այն բանին, թե մտահղացումների եռանդը ինչպես է վերածվում գործողությունների եռանդի, թե մենք ինչ խոչընդոտների ու բարդությունների ենք հանդիպել, ինչպես պետք է գործենք այսուհետև:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո սովետական հասարակությունը շարժման մեջ մտավ բոլոր ոլորտներում՝ քաղաքական, տնտեսական, հոգևոր: Հասարակական զարգացումը հզոր դինամիկ լիցք ստացավ, որը հանգեցրեց մասսաների քաղաքական ինքնագիտակցության բարձրացման: Պահանջկոտության, խստապահանջության, ճշմարտացիության այն մթնոլորտը, որն իշխում էր համագումարում, մոբիլիզացնող ազդեցություն է ունենում բոլոր պրակտիկ գործերի վրա: Սովետական մարդիկ ջերմորեն արձագանքում են նորարարական նախաձեռնություններին, պաշտպանում դրանք, վճռականորեն հանդես գալիս հանուն այն բանի, որ վերակառուցումը լինի ամենուրեք և կրի գործարար բնույթ: Այս ամենը վկայում է, որ համագումարյան գաղափարները հաստատուն կերպով մտնում են հասարակական գիտակցության մեջ, օբյեկտիվորեն կանխորոշում տեղի ունեցող պրոցեսների անշրջելի բնույթը:

Այժմ մենք ավելի շատ ենք համոզված, որ համագումարում ընդունել ենք ճիշտ, ներկա ժամանակի բեկումնային բնույթին համապատասխանող որոշումներ: Դրանք կոչված են առանձնահատուկ դեր խաղալու երկրի, ամբողջությամբ վերցրած՝ սոցիալիզմի բախտի մեջ, ինչը, անշուշտ, հեռուն գնացող հետևանքներ կունենա ամբողջ համաշխարհային զարգացման համար: Մենք ավելի լրիվ, կոնկրետ ենք պատկերաց-

նում կուսակցության նախաձեռնությամբ սկսված վերափոխումների թե՛ մասշտաբները, թե՛ խորությունը և թե զանազան կարգի այն բարդությունները, որ տակավին պետք է հաղթահարել: Ավելի լավ ենք տեսնում նաև մեր հնարավորությունները. այսօրվա և պոտենցիալ:

Համագումարի նկատմամբ հետաքրքրությունը չի թուլանում արտասահմանում: Հետաքրքրությունը հատկապես խոր է սոցիալիզմի երկրներում: Համագումարի որոշումները գործուն ազդակ են դարձել խաղաղության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում: Բարեկամների կողմից ցույց տրվող հավանությունն ու պաշտպանությունը մեզ համոզում են ընտրած կուրսի ճշտության մեջ, հիշեցնում են բարձր պատասխանատվությունը դրա հետևողական, նպատակասլաց կենսագործման համար:

Աշխարհի ոչ սոցիալիստական մասի իրատեսորեն մտածող մարդիկ ընդհանուր առմամբ կարողացան մեկ անգամ էլ տեսնել, որ սոցիալ-տնտեսական զարգացման մեր մասշտաբային պլանները անխզելիորեն կապված են այնպիսի արտաքին քաղաքականության հետ, որը նպատակամղված է խաղաղ շինարարությանը, համակողմանի միջազգային համագործակցությանը:

Մեր պլանները այլ կերպ դիմավորեցին միլիտարիզմի ու ագրեսիայի ուժերը, որոնց գլուխ կանգնած են Ամերիկայի Միացյալ Նահանգների հետադեմ շրջանները: Նրանք այժմ ավելի մեծ թշնամանքով են պայքարում միջազգային իրադրությունը առողջացնելու, այնպիսի միջազգային հարաբերություններ ձևավորելու սովետական նախաձեռնությունների դեմ, որոնք համապատասխանեին միջուկատիեզերական դարի բնույթին:

Մի խոսքով, ընկերներ, ներքին խնդիրներն ու արտաքին պայմանները հաշվի առնելով, մենք պետք է քննարկենք հնգամյա պլանի հանգուցային հարցերը: Այն կազմում է մեր աշխատանքի հիմնահենքը մոտակա տարիներին և հեռանկարում:

Մենք թևակոխել ենք ետհամագումարյան գործունեության այնպիսի փուլ, երբ պարտավոր ենք ցույց տալ վերակառուցվելու և կառուցելու, նոր ձևեր ու մեթոդներ որոնելու, ձեռք բերվածով ոչ մի րոպե չգայթակղվելու կարողություն: Այժմ գնահատականների գլխավոր չափանիշ են դառնում էկոնոմիկայի զարգացման դինամիկ տեմպերի հասնելը, արդյունավետության բարձր ցուցանիշները, սոցիալական ոլորտում դրական լուրջ փոփոխությունները: Մեր մասին կդատեն ոչ թե ըստ մտահղացումների, այլ ամենից առաջ, ըստ հասարակության մեջ կատարված ռեալ փոփոխությունների, ըստ գործնական արդյունքների:

# I. ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՌԱՋԻՆ ԴԱՍԵՐԸ

Ընկերնե՛ր, մենք պարտավոր ենք պրակտիկ գործերի և արդյունքների տեսանկյունից մոտենալ բոլոր կուսակցական կոմիտեների, սովետական և տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների գործունեության գնահատմանը:

Հենց այդպիսի մոտեցումը թույլ կտա ճիշտ կողմնորոշվել ոչ միայն այն բանում, ինչը տեղի է ունենում, այլև այն բանում, թե ինչպես այսուհետև կառուցել պրակտիկան: Սա պետք է անել նաև այն պատճառով, որ ռեալ կյանքում, ինչպես մենք տեսնում ենք, զարգանում են ոչ միայն դրական միտումները. դրանք, անշուշտ, գերիշխում են հասարակության մեջ, այլ կան նաև արգելակիչ գործոններ, որոնց բախվում է վերակառուցման պրոցեսը: Դրանք երբեմն կրում են օբյեկտիվ բնույթ, բայց ավելի հաճախ գալիս են իներցիայից, քարացած սովորույթներից, կարծրացած հոգեբանությունից:

Այսօր իրենց ակտիվորեն են դրսևորում նրանք, ովքեր հաստատուն կանգնել են XXVII համագումարի դիրքերում, եռանդով ներգրավվել են աշխատանքի մեջ, չեն խնայում ոչ ժամանակ, ոչ ուժեր, փնտրում և գտնում են իրենց արժանի տեղը վերակառուցման պրոցեսի մեջ: Քիչ չեն նաև այնպիսի ընկերները, որոնք քաղաքականապես հասկանում են նոր ձևով աշխատելու անհրաժեշտությունը, բայց պարզա-



պես չգիտեն, թե դա ինչպես իրագործեն պրակտիկորեն: Նրանց պետք է ըստ ամենայնի օգնել: Մենք չենք կարող չնկատել նաև նրանց, ովքեր տակավին չեն ըմբռնել կատարվող վերափոխումների էությունը, ովքեր սպասողական վիճակում են կամ էլ չեն հավատում կուսակցության մտահղացած տնտեսական ու քաղաքական շրջադարձի հաջողությանը:

Հասարակության վրա խոր ազդեցություն է գործում մասսաների ստեղծագործության զարգացման՝ որպես արագացման հիմքի, համագումարի հիմնադրույթը: Այդ հիմնադրույթը ամենասերտ կերպով կապված է սոցիալական արդարության համար, դեմոկրատիայի զարգացման, լիակատար հրապարակայնության համար, կյանքը մանրբուրժուական հոգեբանության բոլոր դրսևորումներից մաքրելու համար մղվող պայքարի հետ: Աճում է սովետական մարդկանց հետաքրքրությունը քաղաքականության ու էկոնոմիկայի, մշակույթի ու բարոյականության, ամբողջ հասարակական կյանքի նկատմամբ: Դա նկատելի ազդեցություն է գործում աշխատանքային ու քաղաքական ակտիվության վրա, երկրում կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման վրա:

Սովետական մարդկանց կազմակերպվածությունն ու հայրենասիրությունը բացառիկ ուժով դրսևորվեցին նաև արտակարգ հանգամանքներում, ինչպես դա եղավ Չեռնոբիլում: Ատոմակայանում տեղի ունեցած վթարը անհեղ փորձություն եղավ: Բանվորները, հրշեջները, ինժեներները, բժիշկները, գիտնականները, ռազմիկները դժվարին ժամին ցուցաբերեցին տոկունություն, անձնվիրություն, արիություն:

Ամբողջ երկիրը ոտքի ելավ՝ վերացնելու վթարի հետևանքները: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, տեղական կուսակցական և սովետական կազմակերպությունները ստանում են հսկայական թվով դիմումներ, որոնցով մարդիկ խնդրում են իրենց ուղարկել Չեռնոբիլ: Լայնորեն ծավալվել է միջոցների կամավոր հանգանակությունը փորձանքի մեջ ընկած ընտանիքների համար: Աշխատավորական շատ կոլեկտիվներ պարտավորվել են մի քանի հերթափոխ անհատույց աշխատել տուժածներին օգնելու համար:

Թույլ տվեք մեր պլենումի անունից խորին ցավակցություն հայտնել զոհվածների ընտանիքներին, սրտագին շնորհակալություն հայտնել բոլորին, ովքեր, վտանգելով կյանքը, պայքարեցին վթարի դեմ, ովքեր այսօր անձնվիրաբար վերացնում են վթարի հետևանքները:

Ընկերնե՛ր, սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր ուղղություններում մեր առջև դրվում են բարդ խնդիրներ:

Անշուշտ, միամտություն կլիներ սպասել, թե մի քանի ամսում կհաղթահարվեն այն ետ մնալն ու թերությունները, որոնք կուտակվել են տարիների ընթացքում: Բայց ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերի արագացման միտումը առկա է: Դա մենք նախ և առաջ կապում ենք ժողովրդի ակտիվ աշխատանքի հետ, հասարակության մեջ տեղի ունեցող դրական պրոցեսների հետ:

Այս տարվա հինգ ամսվա ընթացքում արդյունաբերության մեջ արտադրության աճը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմեց 5,7 տոկոս: Վերափոխումներ կան այնպիսի ճյուղերում, ինչպես օրինակ, ածխարդյունաբերությունը, սև մետալուրգիան, երկաթուղային տրանսպորտը, որոնք երկար տարիներ ետ էին մնում: Սկսել են ավելի լավ աշխատել անտառային, փայտամշակման և ցելյուլոզի-թղթի արդյունաբերության ձեռնարկությունները: Դժվարությունները առայժմ չեն կարողանում հաղթահարել նավթագործները, բայց այստեղ նույնպես երևան են եկել հուսադրող միտումներ: Դինամիկորեն են զարգանում մեքենաշինական համալիրի մի շարք ճյուղեր: Լարված աշխատանք է կատարվում ագրարային հատվածում:

Ռուսաստանի Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի շատ մարզերում ու երկրամասերում, Մերձբալթիկայում, մյուս տեղերում ակտիվ աշխատանք են ծավալել կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները, աշխատավորական կոլեկտիվները, որոնք գործնականորեն են ցույց տալիս, թե ինչի կարելի է հասնել նախաձեռնության զարգացման, ձեռնարկություններում ստեղծագործական գործարար մթնոլորտի ստեղծման դեպքում:

Ի՞նչն է այժմ առավել էականը: Դա աճի ձեռք բերված տեմպերի պահպանումն

է և դրանց հետագա արագացումը: Սա ռեալ գործ է, բայց մեծ ջանքեր կպահանջի, մանավանդ եթե հաշվի առնենք այն փաստը, որ մենք գտնվում ենք վերակառուցման ամենասկզբնական շրջանում. դեռ ամեն ինչ չի արված կազմակերպական առումով, առայժմ ոչ լրիվ ուժով են աշխատում տնտեսական այն լծակները ու խթանները, որոնք պետք է վճռական ազդեցություն գործեն ժողովրդական տնտեսության մեջ հետագա բարեփոխումների ընթացքի վրա:

Էկոնոմիկայում կատարված փոփոխությունների վերլուծությունը ամենևին լիակատար չի լինի, եթե անվիճելի հաջողությունների հետ մեկտեղ մենք չմատնանշենք թուլությունները, այն հանգամանքները, որոնք մեզ խանգարում են: Ես կասեի, որ բուն իսկ վերակառուցումն էլ առայժմ դանդաղ է ընթանում: Շատ ձեռնարկություններում առաջվա պես բարգավաճում է գրոհայնությունը, դեռևս գործում է հին լոզունգը՝ պլանը կատարել ինչ գնով էլ լինի: Շրջադարձը դեպի որակ, արդյունավետություն, ղեկավարման նոր մեթոդներ տեղի է ունենում դժվարությամբ և հիվանդագին կերպով: Բայց այսօր պետք է առավելագույն չափով պարզ լինի. Կենտկոմը հաստատակամորեն կվարի ամեն առողջ բան, այն ամենը պաշտպանելու գիծ, ինչը համապատասխանում է համագումարի որոշումներին, ինչը գործնականում նշանակում է վերակառուցում, առաջընթաց: Մենք նույնպիսի հաստատակամությամբ կպայքարենք այն ամենի դեմ, ինչը խանգարում է այդ պրոցեսին:

Այն նորը, ինչ սկսվեց ապրիլյան պլենումում և իր զարգացումը ստացավ XXVII համագումարի որոշումներում, կապված է ոչ միայն տնտեսական ոլորտի, այլև ամբողջ հասարակության խոր վերակառուցման հետ: Սա հասարակ պրոցես չէ: Այն պահանջում է ջանքեր և լուրջ փոփոխություններ կադրերի, բոլոր աշխատավորների մտածողության մեջ: Մեզ որոշակի չափով հաջողվեց հաղթահարել պասսիվությունը, բարձրացնել պատասխանատվությունն ու կազմակերպվածությունը, ավելի մեծ ասպարեզ տալ նախաձեռնությանը: Դրա հետ մեկտեղ ձեռնարկություններում, կառավարման ոլորտում, գիտական հիմնարկներում և ստեղծագործական կոլեկտիվներում, կուսակցական ու սովետական մարմինների գործունեության մեջ վերակառուցման պրոցեսն ընթանում է խափանումներով, ետ են քաշում հին մոտեցումները, դեռևս ուժեղ է իներցիան:

Հարկ է լինում բախվել այնպիսի փաստերի, երբ գործերը փոխարինվում են խոսքերով, երբ քննադատությանը չեն հաջորդում գործնական հետևություններ, իսկ ինքնաքննադատությունը ինքնախարազանման ձև է ընդունում: Որոշ ղեկավարներ հայտարարություններ են շռայլում հրապարակայնության մասին, ճիշտ են խոսում կոլեկտիվի դերի, կյանքում դեմոկրատական հիմունքների զարգացման մասին, բայց դժբախտությունն այն է, որ դրանով էլ ամեն ինչ վերջանում է: Այդպես էլ ստեղծվում է վերակառուցման պատրանք. խոսքով ամեն ինչ կարգին է, իսկ ռեալ փոփոխություններ չկան: Դրա պատճառով վերակառուցումը պարապ դարձապտույտներ է գործում: Դոփում է տեղում:

Համագումարից հետո անցած ժամանակը ցույց տվեց, որ մեր առաջընթացի և տնտեսավարման նոր մեթոդների յուրացման տեմպերը ոչ քիչ չափով արգելակվում են կառավարման ապարատի մեծածավալությամբ և նրա աշխատանքի անարդյունավետությամբ: Շատ հիվանդագին է ընթանում մի կողմից կենտրոնական տնտեսական գերատեսչությունների, մինիստրությունների և մյուս կողմից՝ ձեռնարկությունների, արտադրական միավորումների, աշխատավորական կոլեկտիվների միջև իրավունքների ու պարտականությունների վերաբաշխման պրոցեսը:

Նույնիսկ կառավարման մարմինների ֆունկցիաների փոփոխման դեպքում որոշ ղեկավարներ ձգտում են ամեն միջոցով պահպանել իրենց հրամանատարական իրավունքները, թեև ամենքի համար արդեն պետք է հասկանալի ու ակներև լինի հետևյալ պարզ միտքը. էկոնոմիկայի ներկա մասշտաբների դեպքում մինիստրության կամ գերատեսչության ոչ մի, նույնիսկ ամենաորակյալ ապարատ չի կարող իր վրա վերցնել բոլոր հարցերի հաջող լուծումը, չի կարող փոխարինել աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական մտքին:

Ապարատի ամենազորության կույր հավատի վկայությունը նաև այն փաստն է, որ կենտրոնում այժմ էլ են ստացվում խնդրանքներ կառավարման նորանոր մարմինների ստեղծման, լրացուցիչ հաստիքների հատկացման մասին: Մի շարք հանրապետություններ, չարդարացված կերպով ձգտելով պատճենել կենտրոնում գործող կառավարման կառուցվածքը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առաջարկություն են ներկայացրել ստեղծելու նոր մինիստրություններ ու գերատեսչություններ: Եվ դա այն ժամանակ, երբ նրանք արդեն ունեն 50 և ավելի մինիստրություններ ու գերատեսչություններ, կառավարման այլ մարմիններ:



Անցած ամիսները համոզիչ կերպով ցույց տվեցին, որ հասարակության մեջ վերակառուցումը անհնար է առանց կուսակցության բոլոր օղակներում նրա աշխատանքի ոճի ու մեթոդների վերակառուցման: Այս հարցերը արժանի են, որ դրանց մասին խոսվի ավելի մանրամասնորեն, և ես դեռ կանդրադառնամ դրանց:

Այժմ կուզենայի ընդգծել այն հսկայական դերը, որ նոր ոճի հաստատման գործում պատկանում է կուսակցական մարմինների ղեկավարներին: Նրանց դիրքորոշմամբ, գործելակերպով ու վարքագծով է մեծապես պայմանավորված, թե որքան հետևողականորեն ու եռանդագին կվերակառուցվի կուսակցական աշխատանքը:

Այս առումով առանձնապես պետք է խոսել միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, երկրկոմների ու մարզկոմների առաջին քարտուղարների, և, իհարկե, կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների առաջին քարտուղարների դերի մասին: Հենց նրանք են պարտավոր տոն տալ աշխատանքում, ցուցադրել քաղաքական մտահորիզոնի լայնություն, խնդիրների ըմբռնման խորություն, կազմակերպչական ունակություններ, բարձր պատասխանատվություն. գնահատումների մեջ քննադատական և ինքնաքննադատական մոտեցում, կուսակցայնություն՝ այս բառի ամենավեհ իմաստով: Միայն այդ դեպքում կարելի է ակնկալել հաջող արդյունքներ, ստեղծագործական մթնոլորտ շրջանում, քաղաքում, մարզում, հանրապետությունում:

Ընկերնե՛ր, իսկ ի՞նչ հիմնական հետևություններ պետք է անել համագումարից հետո առաջին ամիսների մեր աշխատանքից:

Գլխավորն այն է, որ կուսակցության, ժողովրդի մեջ ակտիվորեն պաշտպանվում է համագումարի քաղաքական գիծը: Կազմակերպելով և համախմբելով աշխատավորներին՝ վերակառուցվում է կուսակցությունն ինքը: Անցած ամիսները մեկ անգամ ևս հավաստեցին. վերակառուցումը վերաբերում է ամենքին՝ շարքային կոմունիստից մինչև Կենտկոմի քարտուղար, բանվորից մինչև մինիստր, ինժեներից մինչև ակադեմիկոս: Վերակառուցումը կարող է մինչև վերջ հասցվել համաժողովրդական գործ դառնալով միայն: Եվ այն ամենը, ինչը խանգարում է դրան, պետք է վճռականորեն վերացվի:

Եվս մի կարևոր հետևություն: Մասսաների ստեղծագործությունը չի կարելի փոխարինել նույնիսկ ամենալավ դիրեկտիվներով: Վերակառուցումը ենթադրում է աշխատավորական կոլեկտիվների, բոլոր կադրերի նախաձեռնության և ինքնուրույնության ըստ ամենայնի զարգացում: Արդի պայմաններում անթույլատրելի է բոլոր հարցերի լուծումը կենտրոնից, ասենք դա գործնականորեն էլ անհնար է: Այս ճշմարտությունը պետք է յուրացնեն բոլորը: Գործնական հարցերի լուծման համար պատասխանատվության հիմնական մասը պետք է իրենց ուսերին առնեն ձեռնարկությունների և միավորումների աշխատավորական կոլեկտիվները: Իսկ նրա հաջող գործունեության համար, գիտատեխնիկական առաջադիմության ծավալման համար անհրաժեշտ տնտեսական, իրավական, սոցիալական պայմանների ստեղծումը կառավարման կենտրոնական մարմինների ուղղակի պարտականությունն է:

Եվ, վերջապես, համագումարից հետո անցած ժամանակը և վերջին իրադարձությունները ամենայն համոզչությամբ հավաստում են ճշմարտության այն դասի սկզբունքային նշանակությունը, որի մասին խոսվեց համագումարում: Ամեն մի իրավիճակում մենք պետք է հիշենք Լենինի զգուշացումը. «Սարսափելի են պատրանքներն ու ինքնախաբեությունները, կործանարար է ճշմարտությունից վախենալը»: Կուսակցությանն ու ժողովրդին հարկավոր է ամբողջ ճշմարտությունը՝ մեծում և փոքրում: Միայն դա է դաստիարակում քաղաքացիական պարտքի զարգացած զգացում ունեցող մարդիկ, իսկ սուտն ու կիսաճշմարտությունը այլասերում են գիտակցությունը, ձևախեղում անհատին, խանգարում ռեալիստական հետևությունների, գնահատականների մշակմանը, առանց որի չի կարող լինել ակտիվ կուսակցական քաղաքականություն:

# II. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ՓՈՒԼԸ

Ընկերնե՛ր, մենք պետք է քննարկենք հնգամյա պլանը և այն խնդիրները, որ պետք է լուծեն կուսակցությունը, երկրի բոլոր աշխատավորները հնգամյա պլանի կատարման համար:

Տասներկուերորդ հնգամյակին հատուկ դեր է հատկացվում: Սոցիալ-տնտեսական զարգացման տեմպերը, ժողովրդի բարեկեցության մակարդակը կախված կլինեն այն բանից, թե մենք այդ տարիներին ինչպիսի հիմք կդնենք ժողովրդական տնտեսության մեջ արմատական վերափոխումների իրականացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար:

Հնգամյա պլանը, ինչպես դուք գիտեք, հեշտ չի ծնվել: Տնտեսավարման նախկին մեթոդները և պլանավորումը «ըստ բազայի», ինչպես ցույց էին տալիս հաշվարկները, էկոնոմիկան փակուղի էին մտցնում: Մենք տարվա ընթացքում հաստատակամորեն փնտրում էինք նոր մոտեցումներ, որոնք պայմաններ ստեղծեին արտադրության ինտենսիվացման խորացման համար, ապահովեին գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման տեմպերի արագացում: XXVII համագումարին ներկայացված էին կուսակցության ժամանակակից տնտեսական ու սոցիալական քաղաքականության պահանջներին համապատասխանող Հիմնական ուղղությունները:

Հնգամյա պլանը նախապատրաստելիս մեզ հաջողվեց քանակական, իսկ որ գլխավորն է՝ որակական ցուցանիշների մեծ մասով դուրս գալ տնտեսական ու սոցիալական զարգացման Հիմնական ուղղությունների առաջադրանքների վերին մակարդակը: Պլանի նախագիծը խորապես ու համակողմանիորեն քննարկվեց Կենտկոմի քաղբյուրոյում, հավանության արժանացավ և դրվում է այս պլենումի քննարկմանը:

Պլանի ո՞ր առանձնահատկությունների վրա հարկ կլիներ ուշադրություն դարձնել:

Ամենից առաջ պետք է ասել, որ ամբողջությամբ վերցրած, պլանը համապատասխանում է XXVII համագումարի դրույթներին: Պլանով նախատեսված են ուժերի ու միջոցների համակենտրոնացում էկոնոմիկայի զարգացման արմատական ուղղություններում, կառուցվածքային և ինվեստիցիոն քաղաքականության փոփոխում՝ հօգուտ հանրային արտադրության ինտենսիվացման: Պլանը նպատակամղում է ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման, ակտիվ ռեսուրսախնայման, տնտեսական լծակների ու խթանների ներգործության ուժեղացման երկարաժամկետ նորմատիվների կիրառման, կառավարման և տնտեսավարման նոր մեթոդների օգտագործման:

Էկոնոմիկայի փոփոխությունների մասին առավել լրիվ պատկերացում են տալիս պլանով նախատեսված բացարձակ հավելաճերը: Դրանցից կարևորագույնները մեկուկես անգամ ավելի բարձր են, քան անցած հնգամյակում: Ասենք, ազգային եկամուտը կավելանա 124 միլիարդ ռուբլով՝ տասնմեկերորդ հնգամյակի 79 միլիարդ ռուբլու դիմաց: Արդյունաբերական արտադրանքի հավելաճը կկազմի 200 միլիարդ ռուբլի՝ 133 միլիարդ ռուբլու դիմաց և գյուղատնտեսության միջին տարեկան համախառն արտադրանքի հավելաճը՝ 29 միլիարդ ռուբլի՝ 10 միլիարդ ռուբլու դիմաց: Ընդսմին կարևոր է ընդգծել, որ տեմպերի արագացում է նախատեսված հնգամյակի առաջին տարիներից սկսած:

Պլանով նախատեսված բարձր բնագծերը պահանջեցին նորովի մոտենալ տնտեսական աճի աղբյուրների որոշմանը: Այստեղ որոշիչը գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիման վրա արտադրության արդյունավետության ցուցանիշների արմատական բարելավումն է: Սա, ընկերներ, այն հիմքն է, որի վրա կառուցված է ամբողջ պլանը:

Նախատեսվում է նոր հնգամյակում ազգային եկամտի մեջ ավելացնել կուտակման ֆոնդի բաժինը՝ այն հասցնելով 27,6 տոկոսի: Դա ռեալ պայմաններ է ստեղծում կապիտալ ներդրումների հավելաճի բացարձակ չափերի մեծացման համար: Ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության գծով դրանց հավելաճի տեմպը կարագանա՝ 1981—1985 թվականների 15,4 տոկոսից հասնելով 23,6 տոկոսի: Պլանով նախատեսված է գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման ընդարձակ ծրագիր: Այդ նպատակների համար հատկացումները կավելանան 70 տոկոսով, իսկ արտադրական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ դրանց բաժինը հնգամյակի վերջին կանցնի 50 տոկոսից:



Լայն մասշտաբներով կծավալվեն արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, նոր տեխնոլոգիաների ներդրումը: Այս ամենը նախադրյալներ կստեղծի աշխատապայմանները բարելավելու և մինչև 1990 թվականը ձեռքի աշխատանքներից ավելի քան 5 միլիոն մարդ ազատելու համար, որ ավելի քան երկու անգամ շատ է, քան անցած հնգամյակում: Խոշոր միջոցներ են ձեռնարկված էներգետիկ և նյութական ռեսուրսների խնայողության համար:

Ամբողջությամբ վերցրած, ընկերներ, գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, կառավարման և տնտեսավարման մեթոդների կատարելագործման նպատակով պլանով նախատեսված միջոցառումների կոմպլեքսը հնարավորություն կտա բարձրացնել ազգային եկամտի հավելաճի միջին տարեկան տեմպերը մինչև 4,1 տոկոսով կամ գրեթե մեկ երրորդով ավելի նախորդ հնգամյակի համեմատությամբ:

Էկոնոմիկայի արագացված զարգացման հիման վրա նախատեսվում է իրականացնել սոցիալական խոշոր ծրագիր: Կավելանան բնակչության ռեալ եկամուտները, կբարելավվի պարենի, ժողովրդական սպառման ապրանքների մատակարարումը, կընդլայնվի սպասարկման ոլորտը, կշարունակվի առողջապահության և կրթության կատարելագործման աշխատանքը:

Հատուկ ուշադրություն է նվիրվում բնակարանային պրոբլեմի լուծմանը: Պետք է կառուցվի 595 միլիոն քառակուսի մետր բնակմակերես՝ դրա որակի և հարմարավետության միաժամանակյա բարելավմամբ հանդերձ: Ավելի արագ տեմպերով կզարգանա բնակարանային շինարարությունը գյուղում: Սրանք խոշոր միջոցառումներ են, բայց մեզ չպիտի հանգստացնեն: Սովետական մարդկանց բնակարանային պայմանների բարելավման ուղիների որոնումը պետք է շարունակվի՝ օգտագործելով բոլոր միջոցներն ու հնարավորությունները, ակտիվորեն զարգացնելով կոոպերատիվ և անհատական շինարարությունը:

Նախատեսված է ժողովրդի բարեկեցության բարձրացմանը հատկացնել ազգային եկամտի մոտավորապես չորս հինգերորդը: Անհրաժեշտ մակարդակի վրա կպահպանվի նաև երկրի պաշտպանական հզորությունը:

Մի խոսքով, տասներկուերորդ հնգամյա պլանը խոշոր քայլ է ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած տնտեսական ու սոցիալական քաղաքականության իրականացման ճանապարհին: Ըստ էության դա յուրաքանչյուր ճյուղի, յուրաքանչյուր հանրապետության, ամբողջ ժողովրդատնտեսական համալիրի և ամբողջ հասարակության գործունեության ծրագիր է: Քաղբյուրոն գտնում է. բոլոր հիմքերը կան, որպեսզի Կենտկոմի պլենումը հավանություն տա այդ պլանին և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին հանձնարարի այն ներկայացնելու ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի քննարկմանը: Ն. Ի. Ռիժկովը պլանի մասին կզեկուցի դեպուտատներին:

## ա) ՉԿՐԿՆԵԼ ԱՆՑՅԱԼԻ ՍԽԱԼՆԵՐԸ

Օբյեկտիվորեն գնահատելով ներկայացված պլանը, պետք է ուղղակի ասել, որ դրա կատարման համար լարված աշխատանք կպահանջվի: Մենք պետք է հասնենք նախատեսված բնագծերին, անցկացնենք ժողովրդական տնտեսության նոր վերակառուցում, որպեսզի պայմաններ ստեղծենք դրա արդյունավետության հետագա աճի համար: Այս ամենը, ընկերներ, պետք է անել առաջիկա հինգ տարում:

Վերջին ժամանակներս հաջողվեց որոշ չափով բարելավել աշխատանքի արդյունքները: Բայց դրան հասանք ամենից առաջ այն ռեզերվների հաշվին, որ, ինչպես ասում են, ձեռքի տակ են: Տևական և կայուն հաջողության ապահովման համար հարկավոր է հոգալ ավելի արմատական միջոցառումների մասին: Սոցիալիզմի կառուցման փորձը սովորեցնում է, որ հասարակության զարգացման բեկումնային

պահերին պետք է համարձակորեն դիմել կտրուկ շրջադարձերի, չվախենալ վճռական վերափոխումներից։

Մենք բոլորս գիտենք, թե իրենից ինչ էր ներկայացնում Ռուսաստանի էկոնոմիկան մեծ Հոկտեմբերի նախօրեին։ Նրա արդյունաբերական արտադրության ծավալը կազմում էր ԱՄՆ-ի մակարդակի ընդամենը 12,5 տոկոսը։ Լենինի, բոլշևիկների կուսակցության համար միանգամայն պարզ էր, որ սոցիալիզմը կկարողանա հաղթանակել միայն էկոնոմիկայի արմատական վերակառուցման, աշխատանքի առավել բարձր արտադրողականության ձեռքբերման միջոցով։ Սովետական իշխանության առաջին տարիներից կուսակցությունը պայքար սկսեց ժողովրդական տնտեսության վճռական նորացման նպատակով՝ դրա համար օգտագործելով բոլոր հնարավորությունները։

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի հիման վրա մեր ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում ստեղծեց ինդուստրիայի նյութատեխնիկական բազա, որի միջուկը կազմեցին այն ժամանակների համար առաջավոր տեխնիկայով հանդերձավորված գործարանները։ Ստեղծվեցին տեխնիկական առաջադիմության արագացում ապահովող ճյուղեր, եռանդուն կերպով իրագործվում էր արտադրության խոշորամասշտաբ վերազինումը։ Ժողովրդատնտեսական բարձրագույն գերակայությունը դարձավ առաջավոր գիտության և կրթության համակողմանի զարգացումը, գիտատեխնիկական որակյալ կադրերի պատրաստումը։

Հենց այս հիմքի վրա ապահովվեցին տնտեսական ու սոցիալական զարգացման արագ տեմպերը։ Երբեմնի հետամնաց գյուղացիական երկիրը պատմական ամենակարճ ժամանակամիջոցում մտավ աշխարհի առաջատար ինդուստրիալ տերությունների շարքը։ Արդեն մինչև հիսունական թվականները, չնայած պատերազմում տված հսկայական կորուստներին, մեզ մոտ արդյունաբերական արտադրության ծավալը հասավ ամերիկյան մակարդակի 30 տոկոսին, իսկ 1970 թվականին՝ 75 տոկոսին։ ՍՍՀՄ ազգային եկամուտը կազմեց ԱՄՆ-ի մակարդակի երկու երրորդը։

Սակայն 70—80-ական թվականներին մենք որոշ չափով կորցրինք նախկին դինամիզմը։ Էկոնոմիկան չկարողացավ ժամանակին էքստենսիվ ռելսերից անցնել զարգացման ինտենսիվ ռելսերի։ Իներցիայով, «ձեռք բերված մակարդակից» էր կատարվում ժողովրդական տնտեսության պլանավորումը։ Գերատեսչական շահերը արգելակում էին կապիտալ ներդրումների ու ռեսուրսների տեղափոխումը հեռանկարային ճյուղեր։ Էկոնոմիկայի գնահատման նկատմամբ համախառն մոտեցումը աղճատում էր ճշմարիտ իրադրությունը, կեղծ ազդանշաններ տալիս նրա վիճակի վերաբերյալ։

Մեր արտադրության կառուցվածքը մնում էր անփոփոխ և չէր համապատասխանում գիտատեխնիկական առաջադիմության պահանջներին։ Սովետական Միությունը արդյունահանում է զգալիորեն շատ երկաթահանք, քան ԱՄՆ-ը, և պողպատ ձուլում մեքենաշինության արտադրանքի զգալիորեն փոքր ծավալների պայմաններում, մթերում է նույնքան շինափայտ, իսկ դրա վերամշակման արգասիքներ ավելի քիչ է արտադրում։ Ազգային եկամտի, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի աճի յուրաքանչյուր միավոր ստեղծված պայմաններում մեզանից ավելի շատ ռեսուրսներ է պահանջում։

Դրությունը շտկելու համար հարկավոր է պարզորոշ տեսնել եղ մնալու պատճառները։ Դրանց էությունը նախ և առաջ կապիտալ ներդրումների քաղաքականության մեջ թույլ տրված լուրջ վրիպումներն են։ Միանգամայն անարդարացիորեն հնգամյակից հնգամյակ կրճատվում էր ինվեստիցիոն համալիրում կատարվող ներդրումների աճը։ Դրա հետևանքով մեքենաշինության այնպիսի բազային ճյուղեր. ինչպիսիք են հաստոցաշինությունը, սարքաշինությունը, հաշվողական տեխնիկան, ինչպես նաև առաջադիմական կոնստրուկցիոն նյութերի արտադրությունը, պատշաճ զարգացում չեն ստացել։ Բացի դրանից, անարդյունավետ էր կատարվում կապիտալ շինարարությունը, մեծացել էին օբյեկտների կառուցման ժամկետները, չտեղակայված սարքավորումների պաշարները։

Մենք երկրում հիմնական արտադրական ֆոնդերի արագ աճն ու կուտակումը գնահատում ենք որպես մեծ նվաճում, և դա, ընդհանուր առմամբ, արդարացի է։ Բայց դրա հետ մեկտեղ, ընկերներ, չի կարելի չտեսնել, որ դրանց վերարտադրության մեջ տարիներ շարունակ աճում էին բացասական միտումները։ Նոր ձեռնարկությունների կառուցմամբ անհիմն տարվելը և գործողների կարիքները քամահրելը ամուր կերպով մտել էին պլանային մարմինների և շատ մինիստրությունների պրակտիկայի մեջ։ Նոր օբյեկտներ էր առաքվում մեքենաների ու սարքավորումների հիմնական մասը, իսկ գործող գործարաններում ու ֆաբրիկաներում հնացած տեխնիկան փաստորեն ժամանակին չէր փոխվում։ Ֆոնդերի նորացման պրոցեսը շատ դանդաղ էր ընթանում, վատացել էր դրանց տարիքային ստրուկտուրան։

Հիմնական ֆոնդերի էքստենսիվ վերարտադրության բացասական հետևանքների թվին է պատկանում նորոգման ոլորտի չափազանց ուռճացումը։ Միայն արդյունաբերության մեջ սարքավորումների նորոգումը նստում է 10 միլիարդ ռուբլի։ Ընդ որում, այդ գումարից ավելի քան 3 միլիարդ ռուբլին ընկնում է այն տեխնիկայի նորոգմանը, որը շահագործվում է նորմատիվ ժամկետների սահմաններից դուրս։

Չի կարելի չասել նաև այն մասին, որ նման մոտեցումը դանդաղեցնում է երկրի մետաղաֆոնդի շրջանառությունը։ Հնացած մեքենաները ժամանակին վերաձուլման հանձնելու փոխարեն մետաղը մեռցվում է որպես սակավարդյունավետ սարքավորում, որը բազմիցս ենթարկվում է թանկ նստող նորոգման։ Նոր տեխնիկայի թողարկման համար հարկ է լինում մեծացնել չուգունի, պողպատի, գլանվածքի արտադրությունը, ընդլայնել երկաթահանքի, ածխի և այլ օգտակար հանածոների հանույթը։

Եվ, վերջապես, հիմնական արտադրական ֆոնդերի մեծացման էքստենսիվ ձևերը հանգեցրել են աշխատանքային ռեսուրսների արհեստական դեֆիցիտի։ Նմանք այսօր էլ են այդ փրկարար օղակից կառչում՝ աճի դանդաղ տեմպերի, պայմանագրային մատակարարումների ձախողումների, պլանները չկատարելու պատճառները բացատրելիս։ Իհարկե, մենք ծանոթ ենք երկրի ժողովրդագրական իրավիճակին։ Բայց կարելի է մի այսպիսի հարց տալ. եթե չեն բավարարում աշխատանքային ռեսուրսները, ապա էլ ինչո՞ւ ենք շարունակում նորանոր ձեռնարկություններ կառուցել և այն էլ՝ հնացած տեխնիկայի բազայի վրա, և հաճախ երեկվա արտադրանք թողարկել։

Իսկ վիճակն իրոք այդպիսին է։ Ներկայումս միայն արդյունաբերության մեջ կա մոտ 700 հազար չզբաղեցված աշխատատեղ։ Եվ դա փաստորեն սարքավորումների մեկհերթ աշխատանքի դեպքում։ Հերթափոխայնության 1,7 գործակցի անցնելու դեպքում արդյունաբերության մեջ թափուր աշխատատեղերի թիվը կանցնի չորս միլիոնից։ Դրանց ստեղծման վրա տասնյակ միլիարդավոր ռուբլիներ են ծախսվել։ Եվ ստացվում է, որ գործող ձեռնարկություններում աշխատում են հին սարքավորումները, իսկ նորերում մարդ չկա, որ կանգնի հաստոցի մոտ։ Միջոցները ծախսված են, իսկ պատշաճ հատույց չկա։

Ընկերնե՛ր։ Այսօր պլենումում անհրաժեշտ կհամարեի առանձնակի ուշադրություն դարձնել այն փաստին, որ ինվեստիցիոն քաղաքականության մեջ եղած թերությունները առավելագույնս կործանարար են անդրադարձել մեքենաշինության ճյուղերի զարգացման ու տեխնիկական մակարդակի վրա։

Մեքենաշինության մեջ կապիտալ ներդրումների բաժինը ինվեստիցիաների ընդհանուր ծավալում չարդարացված կերպով նվազեցված էր։ Դրան մասնակցել են թե՛ պլանավորող մարմինները, թե՛ մինիստրությունները։ Խարխլվել է ինժեներական ստեղծագործության վարկը, ջլատվել են տեխնիկա մշակողների աշխարհահռչակ հայրենական դպրոցները։ Առաջացել է նմանակման և միջակության արատավոր փիլիսոփայությունը։ Դրա հետևանքով արտադրանքի մի մասը չի համապատասխանում գիտության և տեխնիկայի արդի մակարդակին։

Ի՞նչ է պատահել, ընկերներ, որո՞նք են ստեղծվող մեքենաների տեխնիկական մակարդակի առնչությամբ առաջացած վիճակի արմատները։ Նախ և առաջ դրանք այն են, որ ըստ էության մինչև հիմա մեզանում բացակայել է համաշխարհային նորագույն նվաճումների սիստեմային վերլուծությունը։ Նոր տեխնիկա մշակելիս փաստորեն որակի և հուսալիության բարձրագույն մակարդակի ձեռքբերում չի նախատեսվել։ Վերջին ժամանակներս, ճիշտ է, սկսել են անցկացնել տեխնիկայի գնահատում ըստ նմանակների։ Սակայն այդ դեպքում որպես չափանմուշ կիրառվում են ոչ առաջին թարմության արտասահմանյան մոդելները։ Դա անդրջրհեղեղյան մտածողության և աչքակապության տխուր օրինակ է նրանց կողմից, ովքեր պատաս-

խանատու են անհրաժեշտ տեխնիկայի ստեղծման համար: Իսկ ո՞ւմ են խաբում այդ բոլոր մարդիկ: Ստացվում է, որ իրենց ժողովրդին են խաբում:

Դեպի արտադրանքի միջին, երբեմն էլ ցածր տեխնիկական մակարդակ առաջացած կողմնորոշումը որոշակի չափով օրինականացվել էր գործող ստանդարտների պատճառով: Ստանդարտների համակարգը կոնստրուկտորներին չէր մոբիլիզացնում նոր լուծումների որոնմանը, արգելք չէր դնում հետամնաց տեխնիկայի արտադրության ճանապարհին: Այս երևույթին իր դերն է խաղացել նաև այն, որ գիտահետազոտական շատ ինստիտուտներում ու կոնստրուկտորական բյուրոներում առաջացել էր անլիարժեքության սինդրոմ: Ստեղծագործական ցածր արդյունքները արդարացվում էին նրանով, թե իբր անհնար է ավելի լավ աշխատել: Ասենք, գիտնականների, կոնստրուկտորների, ինժեներների աշխատանքի խթանման գործում էլ ամեն ինչ բարեհաջող չէր:

Տարիներ շարունակ պատշաճ ուշադրություն չէր նվիրվում գիտահետազոտական և փորձառական բազայի զարգացմանը, դրանց անհրաժեշտ կապիտալ ներդրումներ ու ռեսուրսներ չէին հատկացվում:

Հասկանալի է, որ այս ամենը չէր կարող չանդրադառնալ մեքենաշինության տեխնիկական մակարդակի վրա, գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի վրա:

Այսպիսին էր, ընկերներ, այն իրավիճակը, որը նախորդում էր ապրիլյան պլենումին: Այն համակողմանիորեն վերլուծվեց Կենտրոնական կոմիտեում: Մշակված միջոցառումները արժանացան պլենումի և կուսակցության համագումարի միահամուռ հավանությանը: Ուզում եմ մեկ անգամ ևս նրանց, ովքեր ձգտում են մեզ ետ քարշ տալ, ասել. մենք չենք կարող և չենք հաշտվի այդ կարգի փորձերի հետ և պետք է խափանենք նախկին մոտեցումներն ու սխալները բազմացնելու ամեն նկրտում, առաջին հերթին՝ գիտատեխնիկական առաջադիմության ոլորտում:

Համոզված եմ, որ Կենտկոմի պլենումը սկզբունքային գիծ կբռնի մեր ներքին քաղաքականության այդ արմատական հարցում, կպաշտպանի քաղբյուրոյի և կառավարության այն բոլոր անհրաժեշտ միջոցառումները, որոնք թույլ են տալիս հեղափոխականացնել մեր էկոնոմիկայի զարգացումը, այն դուրս բերել գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդային դիրքեր: Ես արդեն առիթ ունեցել եմ ասելու, թե այս կապակցությամբ ինչպիսի պատասխանատվություն է ընկնում Կենտրոնական կոմիտեի անդամների ուսերին, որոնք ընտրվել են ՍՄԿԿ XXVII համագումարում: Մենք, ընկերներ, չենք կարող խուսափել այդ պատմական պատասխանատվությունից:

Իսկ առաջին հերթին ի՞նչ պետք է անել տասներկուերորդ հնգամյակի լարված պլանը լավագույնս կատարելու և գիտատեխնիկական առաջադիմության հետագա արագացման անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու համար:

## բ) ԱՐԱԳԱՑՆԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՅՈՒՄԸ, ԵՌԱՆԴՈՒՆ ԿԵՐՊՈՎ ԶԱՐԳԱՑՆԵԼ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի կենսագործման աշխատանքի գլխավոր օղակները մենք անմիջականորեն կապում ենք ինվեստիցիոն և կառուցվածքային քաղաքականության վերակողմնորոշման հետ՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման գործում կապիտալ ներդրումների բաժնի մեծացման, մեքենաշինության արագացված զարգացման, ինվեստիցիոն շրջափուլի կրճատման հետ:

Վերջին ժամանակներս մենք խոշոր միջոցներ ենք ձեռնարկել էկոնոմիկայի զարգացման արմատական հարցերի վերաբերյալ: Ի նկատի ունենք մետալուրգիայի արմատական վերակառուցմանը, ժողովրդական տնտեսության հետագա քիմիացմանը, մեքենաշինության արդիականացմանը, հաշվողական տեխնիկայի արագացված զարգացմանը, ճկուն արտադրական համակարգերի, ռոտորային գծերի, ավտոմատացված նախագծման համակարգերի արմատավորմանը, կապիտալ շինարարության ինդուստրացմանը, նախագծային-նախահաշվային գործի կատարելագործմանը վերաբերող որոշումները: Սահմանվել են ռեսուրսախնայողության բնագավառի աշխատանքի հիմնական ուղղությունները: Հսկայական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրանքի որակի բարձրացման միջոցառումների կոմպլեքսի իրականացումը: Եվ, վերջապես, լավ հիմքեր են դրված կառավարման և տնտեսավարման նոր մեթոդների անցնելու համար:

Ընդունված որոշումները կողմնորոշված են այն բանին, որ գիտության ու տեխնիկայի նվաճումների արագացված արմատավորման միջոցով մեր էկոնոմիկան փոխադրվի ինտենսիվ զարգացման ռելսերի վրա: Այս ամբողջ աշխատանքը, ընկերներ, պետք է կատարել վճռականորեն բոլոր ուղղություններով: Բնականաբար, հիմա մենք պետք է գործենք հնգամյա պլանի շրջանակներում: Այդ շրջանակներում մենք ունենք ժողովրդական տնտեսության ինտենսիվացման պրոցեսների հետագա խորացման և նրա արդյունավետության բարձրացման հսկայական հնարավորություններ:

Խոսելով ռեզերվների մասին՝ կցանկանայի սկսել հիմնական արտադրական ֆոնդերի ավելի լավ օգտագործման, դրանց վերարտադրության լավացման պրոբլեմից: Չէ՞ որ դա, ընկերներ, սոցիալիստական հասարակության հարստության գլխավոր մասն է, մեր տնտեսական պոտենցիալի նյութական հիմքը: Եվ հիմնական ֆոնդերի օգտագործման ասպարեզում մենք պետք է կարգուկանոն հաստատենք, նրանց նկատմամբ ապահովենք խնայական տնտեսատիրոջ ռացիոնալ վերաբերմունք և արդյունավետ վերարտադրություն:

Մենք կարող ենք հասնել էկոնոմիկայի որակական ցուցանիշների զգալի բարձրացման, նախ և առաջ՝ աշխատանքի արտադրողականության և ֆոնդահատույցի աճի, եթե արագացնենք արտադրական ֆոնդերի նորացումը, ավելի արագորեն ազատվենք դրանց հնացած մասից, իսկ տեխնիկապես ժամանակակից մեքենաներն ու սարքավորումները օգտագործենք ավելի ինտենսիվորեն, այդ թվում նաև՝ հերթափոխայնության գործակցի բարձրացման հաշվին: Ընթանալով արտադրական ֆոնդերի արմատական նորացման, նոր շինարարության մասշտաբների կրճատման ուղիով՝ մենք կարող ենք զգալի կապիտալ ներդրումներ ազատել սոցիալական ոլորտի ու, նախ և առաջ, բնակարանային շինարարության զարգացումն արագացնելու համար:

Խոսքը, ընկերներ, կուսակցության ժամանակակից տնտեսական քաղաքականության գլխավոր ուղղությունների հունում ընկած ժողովրդատնտեսական հսկայական մասշտաբի հնարավորությունների մասին է: Դրանք կյանքից կտրված դատողությունների արգասիք չեն, այլ իրական պրակտիկա, որը մասնավորապես հաստատվում է Լենինգրադի կուսակցական կազմակերպության նախաձեռնությամբ:

Մշակելով արդյունաբերական արտադրության հետագա ինտենսիվացման ուղիները՝ կուսակցության Լենինգրադի մարզկոմը վերլուծել է արդյունաբերական ձեռնարկությունների տասներկուերորդ հնգամյակի տնտեսական պլանների նախագծերը: Պարզվել է, որ միավորումների գերակշիռ մասը մարզում շարունակում է իր ենթագերատեսչական ձեռնարկությունների էքստենսիվ զարգացման գիծը: Կապիտալ ներդրումների մոտ 40 տոկոսը նախատեսվում է նոր շինարարության և գործող կարողությունների ընդլայնման համար: Միևնույն ժամանակ արտադրության տեխնիկական վերազինման մասշտաբները բացահայտորեն չեն բավարարում: Իրադրության համակողմանի ուսումնասիրումից հետո ՍՄԿԿ մարզկոմը հանգել է ճիշտ հետևության. արտադրական ֆոնդերի նոր և առաջադիմական մասն օգտագործել երկու-երեք հերթափոխ և այդ հիմքի վրա կատարել տասներկուերորդ հնգամյակի պլանը: Իսկ հնացած սարքավորումները հանել շահագործումից և ազատված տարածությունները օգտագործել ժամանակակից արտադրության ծավալման համար:

Իսկ չէ՞ որ դա, լենինգրադցի ընկերների հաշվումների համաձայն, մոտ 3 միլիոն քառակուսի մետր տարածություն է: Մեքենաների ու սարքավորումների նորացման հաշվին հնգամյակի վերջին քաղաքի ու մարզի հաստոցային համակազմում առաջադիմական տեխնիկայի տեսակարար կշիռը կկրկնապատկվի, կբարելավվեն արդյունաբերության որակական ցուցանիշները:

Նոր շինարարության վճռական կրճատումը լենինգրադցիներին հնարավորություն կտա նվազեցնելու այդ նպատակներին հատկացվող կապիտալ ներդրումները: Տնտեսված միջոցների մի մասը կհատկացվի ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցմանը, իսկ, որ գլխավորն է, բնակարանային շինարարության ընդլայնմա-

արտադրողականության աճը, նյութերի ու ռեսուրսների հիմնական տեսակների տեսակարար ծախսումների նվազեցումը: Բացառվում է մեքենաների ու սարքավորումների թողարկման պլանավորումը տոննաներով: Լուծումներ են գտնվել մեքենաշինական համալիրի ներսում ճյուղերի փոխգործողությունը որոշող հարցերի մեծ մասի առնչությամբ, ի հայտ են բերվել արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման այլ ռեզերվներ: Մեքենաշինական մինիստրություններին առաջարկված է 1986 թվականին ավարտել յուրաքանչյուր ձեռնարկության և, ամբողջությամբ վերցրած, ճյուղերի տեխնիկական վերազինման պլանների կազմումը՝ գիտության ու տեխնիկայի առաջավոր նվաճումների լայն կիրառման հիման վրա: Բարձրորակ և առաջադիմական նյութերով մեքենաշինարարներին ապահովելու պրոբլեմի լուծումը կպահանջի լրացուցիչ զարգացնել արտադրալից ձեռնարկությունների կարողությունները: Հարկ կլինի դրան էլ դիմել:

Քաղբյուրոն քննարկել է այդ բոլոր առաջարկությունները, պաշտպանել դրանք և ներկայացնում է Կենտրոնական կոմիտեի պլենումի հավանությանը:

Ինչպես հասկանում եք, ընկերներ, այդպիսի արտակարգ պատասխանատու ու բարդ ծրագրի իրականացումը անսովոր ջանքեր, լարված ու ծանրակշիռ աշխատանք կպահանջի: Այն հարկավոր է կատարել, այլ ուղի մենք չունենք: Ցանկացած այլ ուղին նշանակում է զիջել դիրքերը, կողմնորոշվել դեպի թերացում: ՍՄԿԿ Կենտկոմը այդպիսի քայլի չի կարող դիմել:

Մենք հույս ունենք, որ մեքենաշինական մինիստրությունների ղեկավարները, աշխատավորական կոլեկտիվները լիակատար ըմբռնումով և պատշաճ պատասխանատվությամբ կվերաբերվեն կարևորագույն պետական առաջադրանքի կատարմանը: Հիշելով անցյալի դասերը՝ մենք պետք է բոլոր նրանց, ովքեր պարտավոր են կատարել մեքենաշինության արդիականացման ծրագիրը, կանխավ զգուշացնենք. նախատեսվածից որևէ ընկրկում, օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառների որևէ վկայակոչում այստեղ անթույլատրելի են:

Ընկերնե՛ր: Խոսելով ժողովրդական տնտեսության արմատական տեխնիկական վերազինման ու վերակառուցման մեր աշխատանքի մասին՝ չի կարելի անտեսել կապիտալ շինարարության պրոբլեմները: Նրա ծավալները նոր հնգամյակում վիթխարի են: Այդ նպատակի համար հատկացվում է գրեթե մեկ տրիլիոն ռուբլի: Միայն շինմոնտաժային աշխատանքներ կկատարվեն ավելի քան 500 միլիարդ ռուբլի գումարով կամ 20 տոկոսով ավելի, քան տասնմեկերորդ հնգամյակում:

Դրա հետ մեկտեղ, շինարարության մեջ տիրող իրադրությունը մնում է անբավարար, վերակառուցման պրոցեսը ձգձգվում է: Շինարարական տրեստների գրեթե կեսը շարունակաբար չի կատարում պլանները, ձախողում է կարողությունների և օբյեկտների գործարկման ժամկետները: Լուրջ թերություններ ունի շինարարական աշխատանքների կառավարման կազմակերպական կառուցվածքը: Բարի ցանկությունից այն կողմ չի անցնում բազմակի կրկնվող օբյեկտների ավարտուն մասսայական ինդուստրիալ կառուցմամբ զբաղվող նախագծային շինարարական միավորումների ու ֆիրմաների ստեղծումը:

Մի խոսքով, ընկերներ, առաջիկայում պետք է հիմնավորապես զբաղվել ամբողջ շինարարական գործի կատարելագործմամբ, ավելի լայնորեն օգտագործել առաջավոր փորձը: Բոլորին են հայտնի, օրինակ, բելոռուս շինարարների հաջողությունները: Տասնմեկերորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում 21 տոկոսով կրճատվեց միաժամանակ կառուցվող օբյեկտների քանակը, դրանց կառուցման ընդհանուր տևողությունը նվազեց 1,4 անգամ: Ձեռք բերվեց աշխատանքային և նյութական ռեսուրսների էական տնտեսում, և դրա հետ մեկտեղ ապահովվեց հանձնըրվելիք բոլոր կարողությունների և օբյեկտների գործարկումը: Ընդ որում, կապիտալ շինարարության ընդհանուր ծավալը մեծացավ 19, իսկ հիմնական ֆոնդերի գործարկումը՝ 23 տոկոսով: Եվ դա արվեց ամբողջ հանրապետության մասշտաբով: Բայց չափազանց հաջող փորձը դեռևս դուրս չի եկել Բելոռուսիայի սահմաններից:

Լավ օրինակներ կան նաև երկրի այլ շրջաններում: 1979 թվականին Մոսկվայի մարզում կազմակերպվեց մի շինարարական բրիգադ, որը գլխավորում էր Նիկոլայ Իլյիչ Տրավկինը: Տնտհաշվարկային սկզբունքները, ինքնակառավարման տարրերը մեծ հնարավորություններ ի հայտ բերեցին, ապահովեցին լավ արդյունքների ձեռքբերումը: 1983 թվականին այդ կոլեկտիվի բազայի վրա ստեղծվեց նոր գլխավոր կապալային կազմակերպություն՝ ՇՄՇ—96-ը: Իսկ ավելի ուշ «Մոսօբլսելստրոյի» Ն. Ի. Տրավկինի գլխավորած ամբողջ 18-րդ տրեստն էլ անցավ տնտհաշվարկի սկզբունքի: Եվ ահա արդյունքները: Անցած տարի տրեստի կոլեկտիվը 1,5 անգամ շատ ապրանքային շինարարական արտադրանք տվեց, քան նախորդ տարում: Արտադրողականությունը բարձրացավ 25, ինքնարժեքը նվազեց 12 տոկոսով: Երբեմնի վնասով աշխատող տրեստը ստացավ գրեթե 1,5 միլիոն ռուբլի շահույթ: Միջին աշխատավարձը բարձրացավ 11 տոկոսով:

Կարևոր է ընդգծել նաև այն, որ բելոռուս և մոսկվացի շինարարների հաջողությունները ձեռք են բերվել փաստորեն նույն նյութական բազայի վրա: Ուստի, երբ մենք լսում ենք, թե կապիտալ շինարարության մեջ թերությունները կապված են աշխատանքային ռեսուրսների, տրանսպորտի պակասի հետ, ապա այդ խոսքերը հաճախ քիչ արժեք ունեն: Փորձը ցույց է տալիս, որ առկա հնարավորությունների պայմաններում կարելի է հաջողությամբ վարել կապիտալ շինարարությունը: Հարկավոր է միայն հմտորեն տնօրինել այն ամենը, ինչ արդեն այսօր կա շինարարների ձեռքի տակ, աշխատանքում ի հայտ բերել ստեղծագործական մոտեցում, տնտեսասիրոջ նախաձեռնություն:

Հավանաբար, մենք կանգնած ենք կապիտալ շինարարության արմատական վերակառուցման անհրաժեշտության առջև: Ժամանակն է պահանջ ներկայացնել բոլոր նրանց, ովքեր պատասխանատու են այդ ճյուղում առաջավոր փորձի յուրացման համար: Հարկավոր է փոխել պլանավորումը, շինարարության կազմակերպումը և, իհարկե, արդիականացնել նրա նյութական բազան:

## գ) ՏՆՏԵՍԱՎԱՐԵԼ ՋԱՆԱՍԻՐԱԲԱՐ, ԿԱՌԱՎԱՐԵԼ ՀՄՏՈՐԵՆ

Ընկերնե՛ր: Հնգամյա պլանի շրջանակներում կան նաև ուրիշ շատ ռեզերվներ, որոնք ընդունակ են արագացում ավելացնել մեր առաջընթացին: Երբ մենք խոսում ենք էկոնոմիկայի խոր վերակառուցման անհրաժեշտության մասին, ապա դրա կարևորագույն արդյունքներից մեկը համարում ենք արտադրանքի որակի էական բարձրացումը: Կուսակցական համագումարը որակի պրոբլեմն առաջադրեց որպես համազգային խնդիր: ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ նամակով դիմեց բոլոր աշխատավորներին: Այժմ կարևոր է լիակատար որոշակիությամբ ասել, որ սովետական մարդկանց մեծ մասը գիտակցում է այդ կարևորագույն պրոբլեմի անհապաղ լուծման անհրաժեշտությունը:

Աշխատավորական շատ կոլեկտիվներ հիմնավորապես լծվել են աշխատանքի: Առանց հատուկ ծախսումների, զգալի չափով գործի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի, աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման, մի շարք անհետաձգելի կազմակերպական-տեխնիկական միջոցառումների իրականացման հաշվին այնպիսի ձեռնարկություններում, ինչպիսիք են Ալմա Աթայի հաստոցաշինական գործարանը, Տալլինի մեքենաշինական գործարանը, Ֆերգանայի «Ազոտ» միավորումը, Մոսկվայի մարզի «Էլեկտրոիզոլիտ» միավորումը, Բաքվի «Էլեկտրակենցաղսարք» արտադրական միավորումը և այլն, վերջին ժամանակներս շեշտակիորեն կրճատվել է վնասապահանջների քանակը և ապահովվել ստանդարտների պահանջներին խստիվ համապատասխան արտադրանքի թողարկում: Ուզում եմ հատկապես ընդգծել, որ այստեղ արտադրանքի որակի բարձրացման գործում տեղաշարժերը կատարվել են գործող սարքավորումներով:

Այսպիսով, արդեն այսօր, չսպասելով նոր տեխնիկայի մատակարարումներին, կարելի է ու պետք է վճռական քայլեր անել մեքենաների, սարքավորումների, ժողովրդական սպառման առարկաների որակի բարելավման նպատակով: Ինչպես դուք գիտեք, Կենտկոմի քաղբյուրոն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հատուկ որոշում են ընդունել: Արտադրանքի որակի բարձրացմանն են նպատակամղված տեխնիկական և տնտեսական բնույթի միջոցառումներ, արտադրանքի ստանդարտացումն ու ատեստավորումը, գնագոյացումը, բարոյական և նյութական խթանման համակարգը:

ձեռնարկություններում մտցվում է արտադրանքի պետական արտագերատեսչական ընդունում:

Շատ կարևոր է, որպեսզի կուսակցական կոմիտեները ակտիվորեն սատարեն արտադրական կոլեկտիվների, պետական վերահսկողության և ընդունման մարմինների գործունեությունն այն հաշվով, որ ամենամոտ ժամանակներս լրջորեն շտկվի դրությունը: Որ դա իրագործելի է, ցույց է տալիս այն ձեռնարկությունների փորձը, որոնցում անցյալ տարի տնտեսափորձի կարգով մտցվեց արտագերատեսչական ընդունման համակարգը:

Վճռական փոփոխությունների պետք է հասնել նաև նյութական ռեսուրսների օգտագործման ասպարեզում: Վերջերս այդ մասին նույնպես ընդունվեց Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշում, որով հումքի և նյութերի տնտեսման լարված առաջադրանքներ են սահմանված: Ռեսուրսախնայողությունը՝ նյութերի, վառելիքի, էլեկտրաէներգիայի աճող պահանջմունքների բավարարման վճռական աղբյուր է: Մենք հույս ունենք դրա հաշվին ընթացիկ հնգամյակում ստանալ ազգային եկամտի աճի քառորդ մասից ավելին:

Այդ խնդիրը կարևոր է, բայց տնտեսական բոլոր ղեկավարները չէ, որ հասկանում են դա՝ գերի լինելով հին պատկերացումներին: ՍՍՀՄ ավտոմեքենաշինական արդյունաբերության մինիստրությունը, ՍՍՀՄ ծանր ու տրանսպորտային մեքենաշինության մինիստրությունը, ածխարդյունաբերության մինիստրությունը, էներգետիկայի և էլեկտրիֆիկացման մինիստրությունը, թեթև արդյունաբերության մինիստրությունը սիստեմատիկաբար խախտում են մի շարք տեսակի ռեսուրսների տնտեսման առաջադրանքները: Ձեռնարկությունների մի զգալի մասը առաջվա պես թույլ է տալիս շատ արժեքավոր հումքի և մթերքների ուղղակի կորուստներ: Տարեկան 13 միլիարդ խորանարդ մետր հարակից նավթագազ է անօգուտ այրվում ջահերում: Երկաթուղային փոխադրումների ժամանակ միլիոնավոր տոննաներով ածուխ է կորչում: Մեծ է գյուղատնտեսական մթերքների կորուստը, որն ամբողջությամբ վերցրած հասնում է գրեթե 20 տոկոսի: Իսկ ինչքա՜ն էլեկտրաէներգիա, ջերմություն, ջուր է իզուր ծախսվում: Տակավին վատ է դրված երկրորդային ռեսուրսների օգտագործումը:

Պետք է ուղղակի ասել. մենք մոտեցել ենք այնպիսի բնագծի, որից այն կողմ նման անտնտեսվարությունը ոչ միայն անհանդուրժելի է, այլև արդեն չափից ավելի է: Արմատացած արատների վերացմանը պետք է նպատակամղել գիտատեխնիկական քաղաքականությունը, պլանավորումը, տնտեսական և վարչական լծակները: Մենք պարտավոր ենք անխնա պայքար հայտարարել վատնողությանը, խնայողության ամենախիստ ռեժիմ սահմանել: Պետք է դիմել այն բանին, որ ռեսուրսների տնտեսման և դրանց օգտագործման մակարդակի գծով առաջադրանքների կատարումը դառնա յուրաքանչյուր ձեռնարկության և կոլեկտիվի աշխատանքի գնահատման գլխավոր չափանիշներից մեկը:

Հարկ է նաև ավելի ակտիվորեն խրախուսել հումքի և նյութերի տնտեսման համար: Մի՞թե կարելի է նորմալ համարել, որ ռեսուրսների տնտեսման համար արվող վճարումները բառացիորեն կոպեկներ են կազմում: Դա, իհարկե, բանի նման չէ: Հարկավոր է նաև, որ խնայողությունը դառնա յուրաքանչյուր աշխատավորի սովորույթը, օրգանական հատկանիշը: Ընտանիքում, դպրոցում պետք է մշտապես խնայողության զգացում դաստիարակել մատաղ սերնդի մեջ:

Ընկերնե՛ր: Հնգամյա պլանում հատուկ ուշադրություն է հատկացված ագրոարդյունաբերական համալիրի զարգացմանը: Նախատեսված ցուցանիշներով մենք պահպանում ենք Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի գիծը: Հիմնականում պարենային ծրագրի առաջադրանքների մակարդակով են սահմանված կապիտալ ներդրումները, արտադրանքի արտադրության ծավալները, ագրոարդյունաբերական համալիրի նյութատեխնիկական զինումը: Առաջնային զարգացում կապրեն մթերքների վերամշակման, պահպանման, գյուղատնտեսական մեքենաշինության ձեռնարկությունները:

Ընդհանրապես նպաստավոր պայմաններ են ստեղծվում գյուղատնտեսական հատվածի պոտենցիալը մեծացնելու համար: Եվ դա, անշուշտ, արդարացված է: Դրա հետ մեկտեղ մենք պետք է պարզ տեսնենք, որ այդ ոլորտ ուղարկվող հսկայական ռեսուրսները առայժմ պատշաճ հատույց չեն տալիս: Ամբողջությամբ վերցրած, ցածր ցուցանիշներով ավարտվեց տասնմեկերորդ հնգամյակը: Դա արտահայտվեց մարդկանց պարեն մատակարարելու, երկրի տնտեսական զարգացման տեմպերի վրա:



Հանուն օբյեկտիվության պետք է ասել, որ վերջին ժամանակներս գյուղատնտեսական հատվածում դրական տեղաշարժեր են նկատվում: Բայց դրանք ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերում չէ, որ տեղի են ունենում և բնավ էլ ոչ բոլոր մարզերում, երկրամասերում ու հանրապետություններում: Մեր առջև սրությամբ է ծառացած բուսաբուծության արտադրանքի, նախ և առաջ հացաբույսերի և կերաբույսերի արտադրության կայունությունն ապահովելու խնդիրը: Դա է գլխավոր պրոբլեմը, որի հաջող լուծմամբ են մեծապես պայմանավորված անասնապահության կայուն զարգացումը, կոլտնտեսությունների և սովխոզների եկամուտները, վերամշակող ձեռնարկությունների էկոնոմիկան:

Պետք է ուժեղացնել աշխատանքը գյուղատնտեսական հատվածում՝ նկատի ունենալով, որ վճռականորեն բարեփոխվի իրադրությունը: Դրա համար, ընկերներ, մեծ ռեզերվներ կան: Դրանք նախ և առաջ թաքնված են արդեն ստեղծված հսկայական պոտենցիալի մեջ: Մենք գյուղատնտեսությունը արդյունավետ վարելու փորձ ունենք փաստորեն բոլոր գոտիներում: Տնտեսավարման կառավարումն ու համակարգը կատարելագործելու միջոցառումների շնորհիվ տնտեսական և կազմակերպական նախադրյալներ են ստեղծված գյուղական աշխատավորների աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու համար:

Չմտնելով մանրամասնությունների մեջ, ուզում եմ մեկ անգամ ևս ընդգծել գլխավորը. դաշտերի և անասնապահական ֆերմաների բարձր արդյունավետության ու մթերատվության ուղին ինտենսիվ տեխնոլոգիաների լայն կիրառումն է: Եվ դա է թե՛ հողագործության, թե՛ անասնապահության մեջ լավագույն արդյունքների հասնելու ոչ միայն ամենառեալ, այլև ամենաարդյունավետ ուղին:

Մենք այսուհետև էլ պետք է շարունակենք ուժերն ու միջոցները ագրոարդյունաբերական համալիրի վճռական տեղամասերում կենտրոնացնելու գիծը: Դա գյուղին հատկացվող ներդրումներից ծանրակշիռ հատույց ստանալու հուսալի պայման է: Մեր երկրի և ուրիշ երկրների փորձը վկայում է, որ ռեսուրսները նպատակահարմար է կենտրոնացնել այն տնտեսություններում և շրջաններում, որտեղ դա լավագույն արդյունքներ է ապահովում թե՛ մթերքների արտադրության ծավալի տեսակետից, թե՛ տնտեսական արդյունավետության տեսակետից: Այդ առնչությամբ իմաստ ունի մեկ անգամ ևս խորհել ռեսուրսների վերաբաշխման, դրանք արտադրության կոնկրետ ծավալների համար հատկացնելու շուրջ:

Արժե մշակել նաև մարզերի, և, հնարավոր է, ինչ-որ տեղ նաև շրջանների մասշտաբներով գիտաարտադրական միավորումներ ստեղծելու հարցը այն նկատառումով, որ դրանք դառնան իրենց գոտու կոլտնտեսությունների ու սովխոզների արագացած զարգացման կատալիզատորներ, նրանց օգնեն արմատավորելու առաջադիմական տեխնոլոգիաներ, տնտեսությունը վարելու առաջավոր մեթոդներ: Նման մոտեցումը երաշխավորում է տնտեսական պոտենցիալի նպատակահարմար օգտագործում, վերջնական բարձր արդյունքների ստացում:

Այդպիսի փորձ արդեն կա Մոլդավիայում, Ուկրաինայում, այլ հանրապետություններում: Այստեղ միավորումներ են կազմվել զոնալ ինստիտուտների, ուսումնական և փորձնական տնտեսությունների հիման վրա: Համանման փորձ կա նաև մի շարք եղբայրական սոցիալիստական երկրներում: Կարծում եմ, նպատակահարմար կլիներ այն խորապես ուսումնասիրել և ակտիվորեն օգտագործել պրակտիկայում:

Եթե մենք մտադիր ենք լուրջ հաջողությունների հասնել ագրոարդյունաբերական արտադրության ասպարեզում, ապա չի կարելի ընթանալ միայն ավանդական ուղիներով: Ռեսուրսները կենտրոնացնելով, վճռական ուղղություններում գերակայություններ ստեղծելով, տնտեսական նոր մեխանիզմի մեջ և կառավարման կառուցվածքի մեջ ներդրված առավելությունները հմտորեն օգտագործելով միայն մենք կկարողանանք գործել արդյունավետորեն, արագ զարգացնել արտադրությունը, հաջողությամբ լուծել ՍՍՀՄ պարենային ծրագրով առաջադրված խնդիրները:

Վերջապես, ընկերներ, տասներկուերորդ հնգամյակում մեր հաջողությունները պայմանավորված կլինեն նրանով, թե մենք ինչքան առաջ կտանենք կառավարումը,

ամբողջ տնտեսական մեխանիզմը կատարելագործելու աշխատանքը: Այդ աշխատանքի սկզբունքները սահմանված են: Մի կողմից մենք պետք է այսուհետև էլ կատարելագործենք ժողովրդական տնտեսության կառավարման կենտրոնացվածության հիմունքները, բարձրացնենք պետպլանի և մյուս տնտեսական գերատեսչությունների դերը, ճշգրտենք մինիստրությունների ֆունկցիաները: Եվ մյուս կողմից ըստ ամենայնի ընդլայնենք ձեռնարկությունների և միավորումների իրավունքներն ու տնտեսական ինքնուրույնությունը, բարձրացնենք նրանց պատասխանատվությունն իրենց գործունեության արդյունքների համար:

Սրա հետ, կարծում եմ, այժմ բոլորն են համաձայն: Սակայն կառավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմը կենսագործելու պրակտիկ աշխատանքը այնպես չի ընթանում, ինչպես ներկայիս իրադրությունն է թելադրում: Մենք տնտեսափորձեր ենք անցկացրել, հուսադրող արդյունքներ ենք ստացել, բայց հաճախ, երբ բանը հասնում է դրանց լայն տարածմանը, մենք ընկրկում ենք: Տնտեսական մեխանիզմի համակարգում շատ բան է փորձարկված: Եվ հարկավոր է նորն ավելի համարձակորեն ներդնել պրակտիկայում, ինչպես ասվում է, գործել ամբողջ ճակատով: Դրա համար կենտրոնական տնտեսական ու էկոնոմիկայի գերատեսչությունները պետք է XXVII համագումարի սկզբունքային հիմնադրույթների հիման վրա ավելի արագ մշակեն և ընդունեն տնտեսավարման նոր սկզբունքների անցնելու համար անհրաժեշտ փաստաթղթեր:

Այն բազմաթիվ հրահանգները, կանոնադրությունները ու մեթոդիկաները, որոնք մեզ մոտ կուտակվել են տասնամյակների ընթացքում, պետք է վերամշակվեն համագումարի և ետհամագումարյան որոշումների պահանջներին համապատասխան: Իսկ նրանք, որոնք հակասում են վերակառուցմանը, պետք է վճռականորեն չեղյալ հայտարարել: Առանց դրա, ընկերներ, մենք առաջ չենք շարժվի: Կառավարման մեջ իսկական ցենտրալիզմը ոչ մի ընդհանուր բան չունի արտադրական, գիտական և կոնստրուկտորական կոլեկտիվների բազմակողմանի կյանքի բյուրոկրատական կանոնակարգման հետ: Դրանք մտացածին ցուցումներով և մեթոդիկաներով պարուրելու՝ երկար տարիների ընթացքում ստեղծված կարգը ղեկավարներին և մշակողներին զրկում է ծագող տնտեսական ու տեխնիկական հարցերը օպերատիվորեն լուծելու հնարավորությունից:

Ընդ որում, ձեռքից բաց թողնված օգուտը պետության մասշտաբներով հասնում է միլիարդավոր ռուբլիների: Այսպիսի երևույթների ենք բախվում յուրաքանչյուր քայլափոխի: Դրանց մասին գրել են «Կրիոգենմաշ» գիտաարտադրական միավորման գլխավոր դիրեկտոր Վ. Պ. Բելյակովը, «Էլեկտրոսիլա» միավորման գլխավոր դիրեկտոր Բ. Ի. Ֆոմինը, «Վլադիմիր Իլյիչի անվան գործարան» միավորման գլխավոր կոնստրուկտոր Վ. Ի. Ռադինը, ուրիշ շատ փորձառու տնտեսավարներ, գիտնականներ ու մշակողներ:

Այստեղ պետք է կարգ հաստատել և հոգ տանել աշխատավորական կոլեկտիվների իրավունքների իրական ընդլայնման մասին: Այդ նպատակով անհրաժեշտ է ամենակարճ ժամկետում ավարտել սոցիալիստական ձեռնարկության (արտադրական միավորման) մասին օրենքի մշակումը: Այդ փաստաթուղթը պետք է հենվի տնտեսավարման նոր պայմանների կոնցեպցիայի վրա, ընդհանրացնի վերջին ժամանակներս կուտակված փորձը, ամրապնդի այն ամենայն լավը, որը կապված է ձեռնարկությունների և արտադրական միավորումների տնտեսական ինքնուրույնությունը ըստ ամենայնի ընդլայնելու, նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու գծի իրականացման հետ:

Դրանով իսկ մենք կդնենք մինիստրությունների և ձեռնարկությունների միջև իրավունքների ու պարտականությունների նպատակահարմար բաշխման սկիզբը, օրենսդրականորեն աշխատավորական կոլեկտիվներին կպաշտպանենք մանրախնդիր խնամակալությունից և վարչարարությունից, նրանց օպերատիվ տնտեսական գործունեությանը անհարդարացիորեն միջամտելուց: Իսկ դա, ընկերներ, առաջընթաց լուրջ քայլ կնշանակի մեր էկոնոմիկայի կառավարումը դեմոկրատացնելու, աշխատավորների նախաձեռնությունը զարգացնելու գործում:

XXVII համագումարը, ինչպես գիտեք, խնդիր դրեց իսկապես տիրապետել ժողովրդական տնտեսության ղեկավարման տնտեսագիտական մեթոդներին: Այդ կա-



պակցությամբ պետք է նախ և առաջ ապահովել առաջադիմական նորմաների և նորմատիվների մշակումը: Պետպլանը պետք է գլխավորի այդ կարևորագույն աշխատանքը, նրա մեջ լայնորեն ներգրավի մինիստրություններն ու գերատեսչություններ, գիտնականներին, միավորումների և ձեռնարկությունների մասնագետներին: Ընդ որում դա չի կարելի ձգձգել: Չստեղծելով հիմնավորված տնտեսագիտական նորմատիվներ, մենք չենք ազատվի զանազան կարգի հրահանգների բեռից, որոնք կաշկանդում են ձեռնարկությունների գործունեությունը, դժվար կլինի ղեկավարման վարչական եղանակներից անցնել տնտեսագիտական մեթոդների: Դա կարգելակի ինքնահատուցելիության և ինքնաֆինանսավորման սկզբունքների օգտագործումը, որոնք մենք մտադիր ենք է՛լ ավելի լայնորեն տարածել:

Եվ, վերջապես, պետք է ասել կառավարման տնտեսագիտական մեթոդների զարգացման մեջ գնագոյացման էական նշանակության մասին: Այստեղ չլուծված շատ հարցեր են կուտակվել: Արդիականացման պատրվակով բարձրացվում են մեքենաների ու սարքավորումների գները, շինարարության նախահաշվային արժեքը: Տեսականու տեղաշարժերը, «համախառնի» ետևից ընկնելը հաճախ հարուցում են նաև սպառողական ապրանքների գների չհիմնավորված բարձրացում:

Ցավոք, պետական և տնտեսական մարմինները հաճախ դրանց վրա նայում են, ինչպես ասվում է, մատների արանքով, հազվադեպ չէ, որ իրենք էլ շահագրգռված են լինում արտադրության ծավալները մեծացնել «գնախաղի» հաշվին: Ստուգումների արդյունքների հիման վրա միայն անցյալ տարի գների սահմանման կարգը խախտելու համար բյուջեի եկամուտների օգտին էր բռնագանձվել անօրինականորեն ձեռնարկություններից ստացած հասույթից ավելի քան 100 միլիոն ռուբլի:

Ուզում եմ, ընկերներ, նախազգուշացնել. դա չափազանց վտանգավոր միտում է: Գների արհեստական բարձրացումը չի բուժում տնտեսական հիվանդությունները, այլ միայն բարոյազրկում է աշխատողներին, արգելակում տեխնիկական առաջընթացը: Ծախսային մոտեցման վրա հիմնվող բարձրացված գները քողարկում են արտադրության կազմակերպման և տեխնոլոգիայի թերությունները, հարուցում քամահրանք տնտեսությունը վարելու տնտեսագիտական մեթոդների նկատմամբ:

Գների բարձրացումը արդարացված է միայն այն դեպքում, եթե այն թելադրված է ապրանքների սպառողական հատկանիշների էական բարելավմամբ, արտադրանքի է՛լ ավելի բարձր արդյունավետությամբ: Մենք պետք է կարգ հաստատենք գնագոյացման բնագավառում: Այդ առումով է՛լ ավելի հստակ ու սկզբունքային գիծ պետք է բռնի գների պետական կոմիտեն: Հասունացել են նաև վարկային, նախ և առաջ բանկային գործի կատարելագործման հարցերը: Անցնելով տնտեսավարման նոր մեթոդների՝ մենք պետք է բարձրացնենք բանկի դերը որպես տնտեսական կառավարման կարևորագույն մարմնի:

Կկամենայի հատկապես առանձնացնել մի պրոբլեմ, առանց որի լուծման մենք հազիվ թե հաջողությամբ իրականացնենք ռեսուրսախնայողական տեխնոլոգիաներ ներդնելու և էկոնոմիկայի ծախսողական բնույթը հաղթահարելու խնդիրը: Խոսքը տխրահռչակ «համախառնի» մասին է: Տարբեր ձևի համախառն ցուցանիշների գծով առաջադրանքները գլխավորներից մեկն են ճյուղերի, ռեգիոնների, ձեռնարկությունների գործունեությունը գնահատելիս: Իսկ քանի որ դա այդպես է, ապա հանուն «համախառնի» ավելացման հաճախ օգտագործվում են թանկարժեք նյութեր, մեծացվում է մեքենաների քաշը, պտտեցվում են տոննա-կիլոմետրեր, ուռճացվում է ներտնտեսական շրջանառությունը և այլն: Մենք պայքարում ենք արդյունավետության համար, բայց տեսեք, թե, հիրավի, ինչ անմիտ իրավիճակի մեջ են ընկնում տնտեսական ղեկավարները. պատրաստել են էժան արտադրանք՝ խիստ հանդիմանություն են ստացել, որ ռուբլիներով հաշված պակաս արտադրանք են տվել, նորույթ են ներդրել, ռեսուրսներ են տնտեսել՝ դարձյալ ձեռնարկությունը, իսկ երբեմն էլ ամբողջ ճյուղը դրել են աննպաստ վիճակի մեջ:

Բերեմ այսպիսի օրինակ. երկուսուկես տարի առաջ մի շարք մինիստրությունների ավտոտրանսպորտի ձեռնարկություններում տնտեսափորձ սկսվեց: Նրա մասնակիցներն սկսեցին իրենց աշխատանքն այնպես պլանավորել, որ մարդկանց շահագրգռեն ոչ թե տոննա-կիլոմետրերով, այլ ստացված պատվերների համաձայն բեռները նվազագույն ծախսումներով ժամանակին տեղ հասցնելով: Վերացվեցին

այն պատճառները, որոնք տնտեսավարներին դրդում էին զբաղվելու գոյություն չունեցող տոննաների և կիլոմետրերի հավելագրումներով:

Եվ ահա արդյունքները. պատվերների՝ աշխատանքի այդ կարևորագույն ցուցանիշի կատարումը բարձրացավ մինչև 100 տոկոս: Միաժամանակ նվազեց ավտոմեքենաների և վարորդների կարիքը, 18 տոկոսով նվազեց վառելանյութի ծախսումը: Աշխատանքի նման պայմանների տարածումն ամենուրեք թույլ կտա երկրի մասշտաբներով ազատել հազարավոր մեքենաներ ու վարորդների, տնտեսել ավելի քան հինգ միլիոն տոննա շարժիչային վառելանյութ:

Թվում էր, թե պլանավորման մարմինները պետք է կառչեին աշխատանքի նոր մեթոդից: Բայց բնավ էլ այդպես չեղավ: ՍՍՀՄ-ի և ՌՍՖՍՀ-ի պետպլանների որոշ պատասխանատու աշխատողներ, ինչպես սովոր է, սկսեցին կրծքով պաշտպանել պլանավորման իր դարն ապրած համակարգը: Բանն այն է, որ ավելի վաղ պլանավորված «համախառնը», փոխադրումների ծավալները «ուռճացած» դուրս եկան: Իսկ այն, որ այդ հաշվարկները բանի պետք չեն, պլանավորողները չէին ուզում խոստովանել: Ահա ձեզ նորը չընդունելու, տնտեսական մեխանիզմի վերակառուցմամբ զբաղվել, իրենց դրան ապրած աշխատանքի մեթոդներից հրաժարվել չցանկանալու մի նմուշ:

Համախառն ցուցանիշները տակավին իշխում են շատ ճյուղերում: Ավելին, օրինակ, շինարարության մեջ, ոչ առանց ՍՍՀՄ պետպլանի և ՍՍՀՄ ֆինանսների մինիստրության հավանության, դարձյալ փորձում են վերածնել «համախառնը» որպես գնահատման հիմնական ցուցանիշ: Եվ դա չնայած այն բանին, որ շինարարական առաջավոր կազմակերպությունների փորձը միանգամայն այլ բան է վկայում. պետք է նրանց աշխատանքը գնահատել և խրախուսել պատրաստի արտադրանքի համար, օբյեկտները գործարկելու համար, այլ ոչ թե շինմոնտաժի ծավալի համար: Կարծում եմ, ընկերներ, հասել է ժամանակը՝ կտրելու այդ «համախառնի հանգույցը», այլապես մենք չենք կարող առաջ շարժվել ծախսային մեխանիզմը հաղթահարելու ուղիով:

Քննարկելով կառավարման հարցերը՝ չի կարելի չասել կյանքի կողմից առաջ քաշվող ժողովրդատնտեսական պրոբլեմների լուծման համար ՍՍՀՄ պետպլանի պատասխանատվության մասին: Ստեղծվելիս հղացվելով որպես էկոնոմիկայի ղեկավարման ուղեղային կենտրոն՝ պետպլանը մեծապես շարունակում է դիսպետչերական ֆունկցիաներ կատարել: Նրա ներսում հաճախ լուծվում են այնպիսի հարցեր, որոնք լիովին կարող են լուծել ճյուղերի ղեկավարները, թերևս՝ նաև ձեռնարկությունների դիրեկտորները: Միևնույն ժամանակ չի արվում այն, ինչը երկրի ստրատեգիական պլանային մարմնի գլխավոր կոչումն է:

Առօրյա գործերը շեղում են հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրները լուծելու ուղիների որոնումից, ժողովրդական տնտեսության զարգացման համամասնությունների և գերակայությունների ընտրությունից, կառուցվածքային քաղաքականության սահմանումից, արտադրողական ուժերի տեղաբաշխումից, էկոնոմիկայի հաշվեկշռվածությունից: Ահա թե ինչու շատ բան է վրիպել մեր աչքից: Ընդհանրապես, պլանային աշխատանքում լուրջ վերակառուցում է անհրաժեշտ:

Ընկերնե՛ր: Քննարկելով երկրի հեռանկարային զարգացման հարցերը, նախատեսելով ապագայի միջոցառումներ՝ մենք չպետք է աչքաթող անենք ընթացիկ պահի խնդիրները: Դրանց ճիշտ լուծմամբ է պայմանավորված այս տարվա պլանների, հետևաբար և ամբողջ հնգամյակի կատարման հաջողությունը: Այսօր առանձնահատուկ հոգսեր ունեն գյուղի աշխատավորները: Գյուղատնտեսական հատվածում այս տարվա արդյունքները մեզ համար բացառիկ կարևոր նշանակություն ունեն: Հինգ ամսվա ամփոփման համաձայն, ինչպես գիտեք, վատ արդյունքներ չեն ստացվել անասնապահության մեջ: Կարևոր է դրանք ամրապնդել:

Բայց գլխավոր խնդիրը հացահատիկի, պտուղների ու բանջարեղենի, կերի ու տեխնիկական մշակաբույսերի բերք աճեցնելն է ու լրիվ հավաքելը: Դա համաժողովրդական գործ է: Դրան հենց այդպես էլ պետք է մոտենալ ամենօրյա աշխատանքում: Եվ, որ առանձնապես կարևոր է շատ շրջանների համար ներկայիս ոչ դյուրին պայմաններում՝ հավաքել և պահպանել ամբողջ աճեցվածը, թույլ չտալ կորուստներ:

Ներկայումս պատասխանատու շրջան է սկսվում արդյունաբերության, կապիտալ



շինարարության, տրանսպորտի գործունեության բնագավառում: Չի կարելի թույլ տալ նրանց աշխատանքի արդյունքների նվազեցում, այլ հարկավոր է ջանալ արագացնել արտադրության աճի տեմպերը, անպայման կատարել բոլոր պլանները: Կարևոր է ժամանակին նախապատրաստվել նաև ձմեռային աշխատանքին: Մենք պարտավոր ենք դասեր քաղել անցյալից: Հաշվի առնելով դա՝ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը օրերս որոշում ընդունեցին, որով սահմանված են ժողովրդական տնտեսությունը առաջիկա աշնան-ձմռան սեզոնին նախապատրաստելու կոնկրետ միջոցառումներ:

Արդեն այժմ նրա կատարմանը պետք է սևեռվի կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրությունը: Անհրաժեշտ է պատշաճ վիճակի մեջ դնել քաղաքների և գյուղերի կենսապահովման ամբողջ ոլորտը. ապահովել էլեկտրամատակարարման ու ջերմամատակարարման հուսալիությունը, էներգետիկ ագրեգատների նորոգումը և նոր կարողությունների պլանավորված գործարկումը, վառելիքի պաշարների ժամանակին ստեղծումը ձեռնարկություններում և կոմունալ տնտեսության մեջ: Մի խոսքով, պետք է գործն այնպես դրվի, որ բոլոր պարագաներում բնակչությունն անհարմարություններ չզգա կենցաղում, որ աշխատավորական կոլեկտիվներն աշխատեն նորմալ արտադրական ռեժիմով, իսկ էկոնոմիկան զարգանա կայունորեն՝ արագացնելով տեմպերը:

Այսպիսիք են, ընկերներ, նկատառումները տնտեսական քաղաքականության սկզբունքային և ընթացիկ հարցերի մասին, որոնց լուծումից վճռորոշ չափով կախված է տասներկուերորդ հնգամյակի տարիներին ժողովրդական տնտեսության վերափոխման մասշտաբային ծրագրի կատարումը: Հնգամյա պլանի առաջադրանքների կատարումը սոցիալիստական սիստեմի դինամիկության, նրա կենսական ուժի մի նոր վկայությունը կդառնա, խոշոր քայլ՝ ՍՄԿԿ XXVII համագումարի գծի իրականացման ճանապարհին:

## III. ԱԿՏԻՎՈՐԵՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Ընկերնե՛ր: Երբ խոսք էր լինում երկրի բախտի, նրա ներկայի ու ապագայի կենսականորեն կարևոր հարցերի լուծման մասին, Լենինն ընդգծում էր. «Կուսակցությունը պատասխանատու է»:

Մեր կուսակցությունը կառավարող է, նրա ձեռքին կան հասարակական պրոցեսների վրա ներգործելու հզոր լծակներ: Տեսություն և քաղաքականություն, գաղափարներ և կազմակերպման ուժ, միլիոնավոր կոմունիստներ արտադրության մեջ և կառավարման գործում, գիտության, տեխնիկայի և մշակույթի բնագավառում՝ այսպիսին է կուսակցական հզոր պոտենցիալը

Միլիոնավոր աշխատավորների ակտիվությունը, արագացման վճռական ուժի ժողովրդական ստեղծագործության թափն ու խորությունը շատ բանով պայմանավորված են նրանով, թե ինչպես են գործում կուսակցական կազմակերպությունները: Կուսակցական աշխատանքի կենտրոնում մարդուն դնելով միայն մենք կկարողանանք լուծել համագումարի առաջադրած խնդիրները: Կուսակցական աշխատանքի արմատական վերակառուցման գլխավոր իմաստն էլ հենց շրջադարձն է դեպի մարդիկ, դեպի կենդանի գործը:

Ի՞նչ ցույց տվեցին համագումարից հետո անցած ամիսները: Վերակառուցման գաղափարները ըմբռնումով են ընկալվել կուսակցական կադրերի մեծամասնության կողմից և սկսում են բեկվել պրակտիկ գործերի մեջ: Ստեղծվել է տեղական և կենտրոնական կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների փոխհարաբերությունների նոր մթնոլորտ: Ավելի արագորեն, մեծ ըմբռնումով են լուծվում գործնական շատ հարցեր: Մենք մի աստիճան ավելի ենք բարձրացել այն բանում, ինչ վերաբերում է պրոբլեմների առաջադրման անկեղծությանը ու սրությանը, քննադատության և ինքնաքննադատության մակարդակին:

Արտադրության ինտենսիվացմամբ խոր կերպով, մասշտաբայնորեն են զբաղ-

ռում Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Մինսկի, Դոնեցկի, Չելյաբինսկի, Սումի, Թաթարիայի կուսակցական կազմակերպությունները: Էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի զարգացման հարցերը եռանդագին ու նպատակասլաց կերպով են լուծում Բրեստի, Վոլգոգրադի, Ուլյանովսկի, Խարկովի, Իրկուտսկի, Լիպեցկի, Ռոստովի և ուրիշ շատ մարզերի, երկրամասերի, հանրապետությունների կոմունիստները:

Կարևոր քայլեր են անում բոլոր կուսակցական կազմակերպությունները: Ներկա ժամանակներին համապատասխանող աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների բուն որոնումները հեշտորեն չեն ընթանում: Հարկ է լինում հանդիպել այնպիսի պատկերացումների, թե համագումարում հնչած դրույթները իբր վերաբերում են մեծ քաղաքականության ոլորտին, իսկ գործնական աշխատանքը պետք է ընթանա իր կարգով, տրորված ուղիներով: Պետք է ասել, որ նման տրամադրություններ դեռևս կան կուսակցական միջավայրում:

Վերցնենք, օրինակ, Կուրսկի մարզային կուսակցական կազմակերպությունը: Այստեղ գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի, քննադատության և ինքնաքննադատության ոգին բնավ ոչ բոլոր շրջաններն է թափանցել: Պարզվում է, որ վերին ատիճանի կենսունակ է աշխատանքի կարգադրական ոճը: Օրինակ, կուսակցության Օկտյաբրսկի շրջկոմում առաջին քարտուղար ընկ. Վ. Ա. Անպիլոգովը և մի քանի այլ կուսակցական աշխատողներ բացաաբար էին վերաբերվում քննադատությանը, հովանավորում էին «հարմար» մարդկանց, փորձում էին թաքցնել թույլ տված ձախողումները, իսկ իրական վիճակը գունազարդելու համար հաճախ տնտեսական ղեկավարներին դրդում էին հավելագրումների, քիչ էին հոգում կուսկազմակերպության նախաձեռնության, մարդկանց աշխատանքային և հասարակական ակտիվության զարգացման մասին: Այս ամենի մասին կենտրոնական թերթին գրեց «Կրասնոյե զնամյա» կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար ընկ. Մ. Ս. Ծնելյովը:

Աշխատանքի արատավոր մեթոդները գաղտնիք լինել չէին կարող կուսակցության մարզկոմի համար: Բայց, ակներևաբար, մարզկոմի բյուրոն, առաջին քարտուղար ընկ. Ա. Ֆ. Գուդկովը դրության բարձրության վրա չգտնվեցին: Մարզկոմը չզլացավ ամենագովասանական բնութագրերը տալ ընկ. Անպիլոգովին, նրան համարյա օրինակ բերելով մյուսների համար: Իսկ երբ Կենտկոմը ապարատի աշխատողներին հանձնարարեց տեղում խորամուխ լինել իրավիճակի մեջ, ապա պարզվեց, որ ընկ. Ծնելյովի գրածը զուտ ճշմարտություն է, իսկ կուսակցության մարզկոմի ղեկավարների կարծիքը անհիմն է:

Վերջիվերջո. այդ պատմության արդյունքներն ամփոփեցին շրջկոմի անդամները, որոնք անվստահություն հայտնեցին ընկ. Անպիլոգովին և որոշում ընդունեցին նրան ազատելու մասին: Իսկ ինչո՞ւ մարզկոմը չկարողացավ ժամանակին նկատել և պատշաճ կերպով գնահատել շրջկոմի քարտուղարի աշխատանքի անպետք ոճը, շրջանային կուսակցական կազմակերպությունում ստեղծված իրավիճակը: Ըստ երևույթին, կուսակցության մարզկոմի քարտուղարներն իրենք, մարզկոմի բյուրոն վերակառուցվել չեն շտապում, հավատարիմ են մնում իր դարն ապրած ոճին, երբ աշխատավորների նախաձեռնությունը հարկ եղած պաշտպանությունը չի գտնում:

Համագումարից հետո սովետական մարդիկ ավելի ու ավելի մեծ հետաքրքրություն են ցուցաբերում կուսակցության գործերի, հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսների նկատմամբ: Նրանք ուզում են իրենց տեղը գտնել համագումարի գաղափարների իրականացման համար մղվող համաժողովրդական պայքարում, ուզում են իրենց ավանդը ներդնել վերակառուցման գործում: Հենց այդ են վկայում Կենտկոմում և թերթերի խմբագրություններում ստացվող բազմաթիվ նամակները, որոնց մի մասը ձեր ձեռքին է: Թվում է, թե կուսակցական կոմիտեների խնդիրը միանգամայն պարզ է. պետք է ամեն կերպ պաշտպանել մարդկանց հասարակական և աշխատանքային ակտիվությունը: Բայց շատ տեղերում ամեն ինչ մնում է առաջվա պես. նախաձեռնությունը դեմ է առնում անտարբերության պատին, իսկ երբեմն էլ բացահայտ դիմադրության:

Սվերդլովսկի մարզի Իրբիտի քիմիադեղագործական գործարանում կուսբյուրոն դիրեկցիայի հետ միասին և կուսակցության քաղկոմի աջակցությամբ ըստ էության հաշվեհարդար տեսավ արտադրամասի պետի հետ, որը նանդես էր եկել աշխա-



տանքի կազմակերպման և վարձատրության առաջադիմական ձևերի ներդրման օգտին: Կոմունիստի, երոնող մայրդու նախաձեռնությունը դեմ առավ մոլի բյուրոկրատիզմի: Մենք հարկ համարեցինք այս փաստն իր բացառիկ կարևորության պատճառով քննարկել ՍՄԿԿ Կենտկոմում: Դուք գիտեք, թե այդ առթիվ ինչպիսի որոշում ընդունեց Կենտկոմի քարտուղարությունը: Կարծում եմ, այս դեպքից պետք է դասեր քաղեն ոչ միայն սվերդլովսկցիները:

Համագումարը կուսակցական կոմիտեներին նպատակամղեց ղեկավարման քաղաքական մեթոդների յուրացմանը: Սակայն իրենց վրա կառավարչական ֆունկցիաներ վերցնելու կուսակցական մարմինների ձգտումը չի թուլանում: Լսեք, թե ինչ են խոսում որոշ կուսակցական ղեկավարներ: Նրանք հաճույքով, գործիմացությամբ են խոսում ընթացիկ տնտեսական կամպանիայի, կաթնատվության և քաշաճերի, ստնմաների մասին և այլն, բայց հաճախ շփոթվում են, երբ խոսք է լինում հասարակական երևույթների քաղաքական վերլուծության, սոցիալ-տնտեսական խնդիրների, գիտատեխնիկական պրոբլեմների, մարդկային գործոնի ընձեռած հնարավորությունների մասին:

Անկեղծ ասած, մենք պետք է վերակառուցվենք, վարչարարության տարրերից ազատվենք բոլոր մակարդակներում՝ սկզբնական կազմակերպություններից մինչև Կենտկոմի ապարատը: Կուսակցական ղեկավարման բոլոր մակարդակներում քաղաքական, կազմակերպչական և գաղափարախոսական բազմակողմ գործունեությունը միայն կապահովի համագումարի առաջադրած խնդիրների կատարումը:

Այս կապակցությամբ հատուկ նշանակություն է ստանում սկզբնական կուսակցական կազմակերպությունների մարտականության բարձրացումը: Նրանց անսպառ հնարավորություններում մենք բազմիցս համոզվել ենք: Ես կասեի, որ մենք աշխատանքի վերակառուցումն էլ պիտի սկսենք սկզբնական կազմակերպությունների ինքնուրույնության, ինքնագործունեության, հարձակողականության, կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումից: Ահա այն գլխավոր օղակը, որին պետք է ինչպես հարկն է ձեռք զարկել:

Եվ դա պետք է անեն կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, որոնք ավելի մոտիկ են կանգնած աշխատավորական կոլեկտիվներին, գիտեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների ուժերն ու հնարավորությունները: Մենք ունենք շրջանային և քաղաքային օղակի ոչ քիչ կուսակցական կոմիտեներ, որոնք նոր իրադրության մեջ ավելի մեծ ասպարեզ են տալիս կադրերի նախաձեռնությանը, ծանրության կենտրոնը տեղափոխում ներքևից, ինչպես նաև հասարակայնության, մասսայի գծով նրանց աշխատանքի վերահսկողության վրա:

Եվ միևնույն ժամանակ շարունակվում է ղեկավարման, ավելի շուտ՝ նույնիսկ կառավարման սովոր մեթոդների ձգտումը: Այս ամենը, ընկերներ, իր ժամանակին արվում էր կարիքից դրդված, ասես տնտեսական մեխանիզմի թերությունների փոխհատուցման կարգով: Այժմ նման պրակտիկան ոչ միայն պետքական չէ, այլև վնասակար է: Հարկավոր է ավելի համարձակորեն հրաժարվել դիսպետչերական ֆունկցիաներից: Կուսակցության շրջկոմի քարտուղարի, աշխատողի գործունեության գլխավոր ոլորտը աշխատավորական կոլեկտիվն է, մարդիկ:

Վերջին ժամանակներս ես քիչ հանդիպումներ և զրույցներ չեմ ունեցել ձեռնարկությունների ղեկավարների, բանվորների, ինժեներների, կուսակցական կոմիտեների քարտուղարների հետ, և նրանք բոլորը այն միահամուռ կարծիքին են, որ նախաձեռնողական աշխատանքի հնարավորությունները դանդաղ են ընդլայնվում: Իրեն զգալ է տալիս բյուրոկրատիզմը՝ վարչարարության հարազատ եղբայրը, կառավարման գործերին ժողովրդական մասսաների լայն մասնակցության մոլի հակառակորդը:

Վերցնենք, օրինակ, կառավարման մարմինները: Երբ անմիջականորեն ես ծանոթանում նրանց գործունեությանը, ապա տեսնում ես, որ որոշ մինիստրներ, գլխավոր վարչությունների, ձեռնարկությունների ղեկավարներ ընդհանրապես ետ են սովորել միմյանց հետ խոսելուց, ուղղակի գործարար կապեր հաստատելուց, ամեն ինչ հանգեցնում են գրագրությանը: Արդյոք ընկերները չե՞ն կարողանում բանակցել հեռախոսով, հանդիպել հարցերը լուծելու համար, թե՞ դա պատասխանատվությունից թղթով ապահովագրվելու փորձ է:

Մա որոշակիորեն վերաբերում է կուսակցական մարմիններին: Ասենք, կուսակցության Տաշքենդի քաղկոմը և քաղաքի շրջկոմները չորս ամսում մեկուկես-երկու անգամ ավելի շատ սեփական որոշումներ են ուղարկել սկզբնական կուսակցական կազմակերպություններին, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում: Նման թղթաբարության կարելի է հանդիպել Օդեսայում, Գորկիում, այլ տեղերում:

Թղթաբարությունը բնավ ոչ տեխնիկական, այլ քաղաքական հարց է: Նայեցեք, թե մեզ մոտ ինչի է հանգում ցանկացած ստուգումը. տեղեկանքների, աղյուսակների, արձանագրությունների, միջոցառումների պլանների ուսումնասիրությանը, այն բանի պարզմանը, թե քննարկվե՞լ է արդյոք հարցը և ընդունվե՞լ է արդյոք այդ առթիվ համապատասխան որոշում: Մի խոսքով, սովորել են աշխատել թղթերի և ոչ թե մարդկանց հետ, նույնիսկ մարդկանց վրա նայել թղթերի միջով: Իսկ թե մարդիկ ինչպես են աշխատում, ապրում, ինչ են մտածում, ինչպիսի պրոբլեմներ, տրամադրություններ ունեն, այս ամենը ուշադրությունից դուրս է մնում: Իսկ չէ՞ որ դրանում է կուսակցական աշխատանքի էությունը:

Ոչ մի վերակառուցում չի լինի, եթե կուսակցության մեջ, նրա բոլոր կազմակերպություններում չհաստատվի գործերում տեղ գտած թերությունների, լճացման, հանդիսամոլության և դատարկաբանության նկատմամբ անհանդուրժողության մթնոլորտ: Ուստի համագումարի ոգով քննադատական խոսակցությունը մենք պետք է ուժեղացնենք: Մեզ պետք է սկզբունքային քննադատություն, ստույգ հասցե ունեցող, թերությունների ու վրիպումների պատճառները, դրանց վերացման եղանակները բացահայտող քննադատություն, անհանգստության, ձեռք բերվածով առողջ անբավարարվածության ոգին պաշտպանող քննադատություն:

Ընկերնե՛ր, արագացման կոնցեպցիան անբաժանելի է ակտիվ կադրային քաղաքականությունից: Հնգամյակի պլաններում արմատական բնույթի միջոցառումներ են նախատեսված կադրային քաղաքականության, անընդհատ կրթության համակարգի ստեղծման ասպարեզում: Դրանք բոլորը նպատակամղված են գործունեության նյութական և հոգևոր ոլորտների յուրաքանչյուր տեղամաս պրոֆեսիոնալ տեսակետից բանիմաց աշխատողներով ապահովելուն:

Եվ այդ խնդիրը լուծվում է ոչ միայն ուսումնական հաստատություններում, որտեղ մենք սկսել ենք լուրջ վերափոխումներ կատարել: Մեր ժամանակը բոլորից պահանջում է գիտելիքների մշտական նորացում, որակավորման բարձրացում, գաղափարաքաղաքական, գիտատեխնիկական և տնտեսագիտական մտահորիզոնի ընդլայնում: Առանց դրա անհնար է արդյունավետորեն օգտագործել նորագույն տեխնիկան, գրագետ տնտեսավարել և հմտորեն կառավարել:

Առանձնահատուկ է խոսակցությունն այսօր ղեկավար կադրերի հետ տարվող աշխատանքի մասին, որոնք կոչված են կազմակերպել վերակառուցումն իրենց վստահված տեղամասերում: Ապրիլյան պլենումից առաջ, ինչպես գիտեք, մեզ մոտ չլուծված կադրային քիչ հարցեր չէին կուտակվել: Դա քննադատական դիտողություններ էր առաջ բերում կոմունիստների ու անկուսակցականների կողմից: Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ հետևություններ արեց: Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում առաջ քաշվեցին պատրաստված, հասուն շատ կոմունիստներ, որոնք իրենց դրսևորել էին ստորին օղակների պրակտիկ աշխատանքում, լավ էին ըմբռնում ներկա իրադրությունը: Կադրերի տեղաբաշխումը պետք է այսուհետև ևս բարելավել:

Հանդես գալով Տոլյատի քաղաքում, ես նշեցի, որ այժմ, երբ ծավալվում է գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու աշխատանքը, առանձնապես անհրաժեշտ է գնահատել նորարարական ոգի ունեցող մարդկանց: Առավել ևս, որ մենք բոլորին կոչ ենք անում չսպասել, այլ գործել: Չի կարելի չտեսնել, որ նախաձեռնող մարդը հաճախ հակասության մեջ է մտնում հին հրահանգների հետ, որոնք չեն համապատասխանում նոր խնդիրներին: Հարկավոր է ամեն բան անել, որպեսզի պրպտուն, ստեղծագործող մարդիկ դժվարին կացության մեջ չընկնեն, անհաջողության չմատնվեն: Եվ դա վերացական դատողություն չէ:

Կցանկանայի ասվածը հաստատել մի զայրացուցիչ փաստով: Չերկասիում կան էլեկտրատեխնիկական արդյունաբերության և էներգետիկ մեքենաշինության մինիստրությանը պատկանող գործարան և այդ նույն պրոֆիլի գիտահետազոտական



ինստիտուտ: Ինստիտուտը, որը գլխավորում է ընկեր Ա. Ի. Չաբանովը, մշակել է նոր տիպի հաստոցներ և դրանց կառավարման համակարգեր: Դրանք ճանաչում են գտել միջազգային ցուցահանդեսներում, սկսել են պատվերներ ստացվել մեր ձեռնարկություններից և արտասահմանից:

Դրա հետ մեկտեղ գործարանը, որն առաջին հերթին պետք է օգտագործեր այդ նվաճումները, համառորեն անտեսել է նոր տեխնիկան: Իսկ երբ անցյալ տարվա հուլիսին ընկ. Չաբանովին ժամանակավորապես նշանակեցին նաև գործարանի դիրեկտորի պաշտոնակատար, ապա նա առանց սպասելու նոր արտադրանքի տեխնիկական պայմանների հաստատմանը, վճռեց կազմակերպել դրա թողարկումը: Կյանքի ուղեգիր տրվեց առաջավոր տեխնիկային, շտկվեց ձեռնարկության ֆինանսական դրությունը: Սակայն գտնվեցին աշխատողներ, որոնք սկսեցին գրել, թե նոր ղեկավարը շեղվել է հրահանգներից, թույլ տվել հավելագրումներ: Իսկ ինչպե՞ս վարվեցին մինիստրությունն ու կուսակցության մարզկոմը: Չի կարելի ասել, թե նորարարաբար: Դիրեկտորին հեռացրին աշխատանքից, նրա վերաբերյալ նյութը հանձնվեց դատական մարմիններին: Գործը պարզելու համար հարկ եղավ ՍՄԿԿ Կենտկոմի, գլխավոր դատախազի միջամտությունը: Ոչ մի չարաշահում, առավել ևս հանցագործություն ի հայտ չբերվեց: Թվում է, ամեն ինչ պարզ է: Բայց այն բանից հետո էլ, երբ վերականգնվեց ճշմարտությունը, կուսբյուրոն ընկ. Ա. Ի. Չաբանովին հեռացրեց կուսակցությունից: Ավելին, երբ կոմունիստները պաշտպան կանգնեցին նրան և նամակ ուղարկեցին համագումարի հասցեով, ապա այն այդպես էլ Մոսկվա չհասավ, նամակը փոստից հանեցին տեղական մարմինները:

Ահա, ընկերներ, թե ինչպիսի փաստերի է առիթ լինում հանդիպել: Մենք հանձնարարեցինք, որ այդ գործով զբաղվի կուսակցական վերահսկողության կոմիտեն: Արդարությունը կարծես վերականգնված է: Բայց հարց է ծագում՝ հապա որտե՞ղ էր կուսակցության մարզային կոմիտեն: Մի՞թե նա չէր կարող ժամանակին խորամուխ լինել գործի էության մեջ, թույլ չտալ սովետական օրենքների խախտումներ, հաշվեհարդար կոմունիստի նկատմամբ:

Մեր պլենումում հարկավոր է ամենայն սկզբունքայնությամբ ասել. կուսակցական կոմիտեները կոչված են պաշտպանել կուսակցության պատիվը և ոչ թե համազգեստի պատիվը: Կուսակցական աշխատանքում կարևոր է ամեն ինչ: Եվ ոչ վերջին հերթին այն, թե կուսկոմիտեում ինչպես են ընդունում մարդուն, ինչպես են խոսում նրա հետ, ինչպես են լսում նրան հուզող հարցերը, վերջապես, ինչպիսի մասնակցություն են ունենում նրա ճակատագրում:

Չէ՞ որ այսպես էլ է լինում: Կոմունիստը քաղկոմում կամ շրջկոմում սեփական կարծիքն է հայտնում կամ տարակույսները կիսում, իսկ նրանք, փոխանակ պատասխանելու ըստ էության, ասում են. «Մի մոռացիր, թե որտեղ ես գտնվում»: Իսկ որտե՞ղ է նա, մի հարցնող լինի, գտնվում: Իր հարազատ տանը: Հապա նա էլ ո՞ւր գնա իր հոգսերով ու պրոբլեմներով, եթե ոչ իր կուսակցական կոմիտե: Եվ այստեղ նա իրավունք ունի ակնկալելու զգայուն և ուշադիր վերաբերմունք և ոչ թե չինովնիկական ընդունելություն, քանի որ կուսակցական ընկերակցությունը բոլշևիկյան նորմ է կոմունիստների հարաբերություններում՝ անկախ նրանց աստիճաններից ու կոչումներից:

Ընկերակցության ոգով պետք է տոգորված լինի մեր ամբողջ կուսակցական կյանքը: Ուժեղացնելով պահանջկոտությունը հանձնարարված գործի համար, անհրաժեշտ է միշտ հստակ սահման անցկացնել կուսակցական սկզբունքայնության և մարդկային արժանապատվությունը նվաստացնող շշպռման միջև: Այդ կանոնից շեղումները, իսկ դրանց մասին մենք գիտենք, փշրում են մարդու հոգին, կոլեկտիվում ծնվում է անվստահություն, ընկնում են մարդկանց հասարակական շահագրգռությունն ու ակտիվությունը: Դրա հետ չի կարելի հաշտվել:

Մենք այսուհետև ևս պետք է հաստատակամորեն և անդուլ կերպով աշխատենք այն բանի վրա, որ մեր հասարակության մեջ առողջ մթնոլորտն ամրապնդվի, խոր արմատներ գցի: Այս կապակցությամբ ես կասեի, որ ամենաանհետաձգելի խնդիրների շրջանակներում դարձյալ մնում է հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարը: Այդ պայքարում մենք պետք է կողմնորոշվենք դեպի մեր ժողովրդի կարծիքը և ոչ թե դեպի ոգելից խմիչքի սիրահարների կարծիքը: Մենք ամբողջ ժողո-

մրրդի առջև պարտավորություն ենք ստանձնել վճռական պայքար մղել հարբեցողության դեմ և մեր կուսակցական պարտքն է կատարել սովետական մարդկանց պատվիրանը:

Մենք պետք է կատարենք նաև անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու պատվիրանը: Այդ հարցի առթիվ վերջերս ընդունված խոշոր որոշումները գոհունակությամբ ընկալվեցին հասարակության կողմից: Դրանց պրակտիկ իրագործումը հարկավոր է այնպես կատարել, որ, արմատախիլ անելով սոցիալիզմին խորթ այդ երևույթը, դրանք ծառայեն աշխատավորների կենսապայմանների բարելավմանը:

Մի խոսքով, ընկերներ, մենք պետք է անշեղորեն կիրառենք մեր գլխավոր սոցիալիստական սկզբունքը՝ ըստ ամենայնի պաշտպանենք և խրախուսենք ազնիվ և բարեխիղճ աշխատանքը, անզիջում պայքար մղենք պորտաբուծություն անող բոլոր տարրերի դեմ, նրանց դեմ, ովքեր փորձում են ապրել ուրիշների հաշվին, հասարակության հաշվին:

Պետք է ելնել այն բանից, որ սոցիալ-տնտեսական և հոգևոր ոլորտների խնդիրների բարդության հետ մեկտեղ կմեծանան նաև գաղափարախոսական աշխատանքին ներկայացվող պահանջները: Կուզենայի այսօր նշել այն մեծ ավանդը, որ մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն, մասսայական ինֆորմացիայի միջոցները ներդնում են վերակառուցման պրոցեսում: Նրանք շատ բան են անում հրապարակայնության ընդլայնման, մեր հասարակության դեմոկրատիզմի իրականացման, լուրջ, հասարակականորեն նշանակալի պրոբլեմների առաջադրման համար: Այժմ հատկապես կարևոր է, որ մեր մամուլը զգայուն կերպով որսա նորի ծիլերը, կյանքի բոլոր ոլորտներում վերակառուցմամբ ծնվող առաջավորը, օգնի, որ դրանք դառնան համընդհանուր սեփականություն: Մասսայական ինֆորմացիայի միջոցների անաչառությունը, բարձր պահանջկոտությունը և պատասխանատվությունը կուսակցական մամուլի այն պարտադիր սկզբունքներն են, որոնք ապահովում են նրանց հեղինակությունը:

Թերթը կուսակցական կոմիտեի դեմքն է, այն արտացոլում է նրա աշխատանքի ոճն ու մեթոդները, ղեկավարման մակարդակը, վերաբերմունքը բոլոր հրատապ հարցերի նկատմամբ: Վերակառուցվում է կուսակցական կոմիտեն, վերակառուցվում է նաև մամուլը: Կուզենայի ուշադրություն հրավիրել այն բանի վրա, որ բազմաթիվ տեղական թերթերում հրապարակայնության, ներգործունության աստիճանը դեռևս զգալիորեն զիջում է կենտրոնական մամուլին: Ինչպես ցույց է տալիս հարցի ուսումնասիրումը, այստեղ անմիջական կապ է հայտնաբերվում կուսակցական կոմիտեների դիրքորոշման հետ: Հետևաբար, անհրաժեշտ են ինքնաքննադատական ճիշտ հետևություններ թե՛ կուսակցական կոմիտեներում և թե խմբագրություններում: Վստահ եմ, որ դրանք կարվեն:

Մի խոսքով, մենք հույս ենք դնում գաղափարախոսական ճակատի հետագա ակտիվացման վրա, հանուն ընդհանուր գործի միլիոնների համախմբող ճշմարտացի գաղափարների կազմակերպիչ ուժի վրա:

## IV. ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՆՍՈՒԼՏԱՏԻՎ ԿՈՄԻՏԵԻ ԲՈՒԴԱՊԵՇՏԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ընկերնե՛ր: Թույլ տվեք այժմ անցնել պլենումի օրակարգի երկրորդ կետին:

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի օրերս կայացած հերթական խորհրդակցության փաստաթղթերը հրապարակված են: Ի՞նչ կուզենայի ասել այդ հանդիպման նշանակության մասին: Նախ և առաջ հարկավոր է նշել, որ այն անցկացվեց եղբայրական կուսակցությունների մի շարք համագումարներից անմիջապես հետո, և բարձրագույն կուսակցական համաժողովների արտաքին քաղաքական դրույթները, բնականաբար, հայտնվեցին կոլեկտիվ քննարկման կիզակետում: Դա նրան տվեց ավելի մասշտաբային բնույթ, կանխորոշեց շեշտադրումը ստրատեգիական, գլոբալ կարգի հարցերի վրա:



Հատկապես ընդգծվում էր, որ մեր և մյուս եղբայրական կուսակցությունների սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուրսը միջազգային լայն արձագանք է առաջացրել և դրա իրականացման համեմատ հարաճուն ազդեցություն կգործի համաշխարհային հասարակական զարգացման ամբողջ ընթացքի վրա: Նշվում էր, որ հենց դա է հարուցում մեր դասակարգային հակառակորդի ամենամեծ անհանգստությունը:

Կարծիքների փոխանակում տեղի ունեցավ Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի Սոֆիայի խորհրդակցությունից և Ժնևի սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումից հետո անցած ժամանակամիջոցում Եվրոպայում և միջազգային ասպարեզում իրադարձությունների ընթացքի մասին: Բոլոր ընկերները համակարծիք էին այն բանում, որ իրադրությունը մնում է բարդ, առայժմ լարվածության մեղմանալու մասին խոսելու հիմքեր չկան:

Դուք գիտեք այդ նպատակով մեր ձեռնարկած քայլերի մասին, որ Ժնևից եկող դրական գիծը չանհետանա, չլուծվի միջազգային կյանքի հորձանուտում: Դրանք են թե՛ մինչև դարավերջ միջուկային զենքի վերացման կոնկրետ պլանը, թե՛ միջուկային պայթեցումների մորատորիումը և թե քիմիական զենքի վերացման առաջարկությունները: Մեր նախաձեռնությունները գործել են և կգործեն միջազգային կլիմայի առողջացման օգտին:

Բայց հենց լարվածության թուլացման հեռանկարն է Արևմուտքում և, առաջին հերթին, ԱՄՆ-ի կառավարող հետադիմական վերնախավի կողմից ընկալվում որպես իր շահերին սպառնացող վտանգ: Ամենավերջին ամիսներին և շաբաթներին տեղի են ունեցել ժամանակակից զարգացման արմատական հարցերի առթիվ սովետական առաջարկությունների մի ամբողջ շարք մերժումներ. միջուկային փորձարկումների դադարեցման մերժումը, ստրատեգիական սպառազինությունների շուրջը գոյություն ունեցող համաձայնություններից հրաժարումը, տիեզերքը զենքից ազատ թողնելու գաղափարի մերժումը: Սրան պետք է ավելացնել Ժնևում և Վիեննայում բարեխիղճ բանակցություններ վարելու ցանկության բացակայությունը:

Եվրոպայի, ասենք ոչ միայն Եվրոպայի, բոլոր պետությունների շահերի նկատմամբ ինքնապաստան քամահրանք ցուցադրեցին Բեռնում Վաշինգտոնի գործողությունները, որոնց հետևանքով ձախողվեց մարդու իրավունքների շուրջը կարևոր համաձայնությունների ձեռքբերումը: Միայն ժամանակակից իրողությունների բացարձակ չընդունմամբ կարելի է բացատրել գաղափարախոսական անհանդուրժողության և ատելության թանձրախառն ուժի վրա, միջուկային բռունցքի վրա, ահաբեկչական ավազակության վրա ԱՄՆ-ի ղեկավարների հույս դնելը: Արդի համաշխարհային իրավիճակը նրանք շարունակում են գնահատել «աստղային պատերազմների» և միջուկային մարտագլխիկների կատեգորիաներով, սպառազինությունների մրցավազքով և ռազմամոլական շանտաժով, դրանով իսկ ավելի ու ավելի խարխլելով ինչպես ամբողջ աշխարհի, այնպես էլ սեփական երկրի անվտանգությունը:

Ավելի ու ավելի ակնբախ է դառնում, որ ԱՄՆ-ի անվտանգության համար իսկական սպառնալիքը բխում է ոչ արտաքին ուժերի կողմից: Այդպիսի, ըստ որում ոչ փոքր, սպառնալիք են ներկայացնում այդ երկրի ռազմաքաղաքական ընտրանին, համաշխարհային ասպարեզում նրա արկածախնդրական վարքագիծը:

ՍՄԿԿ XXVII համագումարը առաջարկեց մարդկության առջև ծառացած պրոբլեմների լուծման խելամիտ ուղիներ: Մեր նպատակները անչափ հստակ են: Դա երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն է, դա միջազգային լայն, բոլորի համար շահավետ համագործակցությունն է, դա զինաթափումն է և միջուկային զենքի վերացումը, դա մարդկության խաղաղությունն է: Այստեղից էլ մեր քաղաքական կուրսը ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում: Եվ երկրագնդի վրա որքան շատ մարդ իմանա ճշմարտությունը Սովետական Միության քաղաքականության մասին, այնքան շատ կլինեն նրա կողմնակիցները:

Այս ամենն էլ հենց անհանգստացնում է իմպերիալիզմի կառավարող շրջաններին: Սովետական նախաձեռնություններում նրանք հուժկու խոչընդոտ տեսան իրենց կայսերապետական դիտավորությունների իրականացման ճանապարհին, որոնց նպատակն է աշխարհակալությունը և սոցիալական ռևանշը: Ի վիճակի չլինելով ժողո-

վուրդներին առաջարկել բոլորի շահերին համապատասխանող խաղաղ պատմական այլընտրանք՝ նրանք սրում են ռազմամոլական հոգեգարությունը, որը, ըստ իրենց մտահղացման, կարող է կանգնեցնել պատմական պրոցեսը, նրանց օգնել պահպանելու տնտեսական և քաղաքական իշխանությունը: Ավելին, նրանք հույս են դնում մեր պլանների իրականացմանը խանգարելու, սոցիալիստական երկրների զարգացումն արգելակելու, մեզ ՍՄԿԿ XXVII համագումարի կուրսից շեղելու, սպառազինությունների մրցավազքի կապանքներում պահելու թեկուզև պատրանքային հնարավորության վրա:

Հասկանալի է, ընկերներ, որ մեր արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը պետք է լինի այդ վտանգավոր դիտավորությունների խափանումը: Սովետական Միությունը այսուհետև էլ հաստատակամորեն կկենսագործի իր նախաձեռնությունները, որոնք համապատասխանում են մեր ժողովրդի, մոլորակի բոլոր ժողովուրդների նվիրական հույսերին: Բայց մենք երբեք թույլ չենք տա ԱՄՆ-ի հըրթիռամիջուկային գերազանցություն: Եվ այստեղ մեր լենինյան արտաքին քաղաքական կուրսը, մեր պաշտպանական զորությունը հենվում են սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիայի հուսալի հիմքի վրա, որ մշակել է կուսակցությունը և որն իր ծավալուն արտացոլումն է ստացել մեր կողմից քննարկվող տասներկուերորդ հնգամյա պլանի նախագծում:

Չի կարելի իմպերիալիզմի ձեռքը հանձնել աշխարհի բախտը, թույլ տալ, որ իմպերիալիստական հետադիմությանը հաջողվի մարդկությանը պարտադրել ռազմաքաղաքական առճակատման խորացում: Դա կնշանակեր միայն մեկ բան՝ սողք դեպի միջուկային պատերազմ: Այդպիսի հետևություն հնչեց Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցության բոլոր մասնակիցների ելույթներում:

Մենք բարեկամների հետ քննարկեցինք Ժնևում ԱՄՆ-ի հետ վարվող բանակցություններում ստեղծվող իրավիճակը: Ներկայումս ծագել է այսպիսի հարց. պե՞տք է արդյոք այսուհետև էլ տեղում կանգնել Ժնևի բանակցություններում, ամերիկացիների հետ խոսքակռիվ տալով, ինչը նրանց միանգամայն գոհացնում է, թե՞ որոնել նոր մոտեցումներ, որոնք թույլ կտային ուղի հարթել միջուկային սպառազինությունների կրճատման համար: Որոշելով հաստատ հետևել Ժնևում փոխընդունելի համաձայնության գործնական որոնումների գծին՝ մենք ամերիկացիներին առաջարկեցինք հետևյալ միջանկյա տարբերակը.

ա) համաձայնություն է ձեռք բերվում հակահրթիռային պաշտպանության պայմանագրից առնվազն 15 տարվա ընթացքում դուրս չգալու մասին, իսկ ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության բնագավառի աշխատանքները սահմանափակվում են լաբորատոր հետազոտությունների մակարդակով, այսինքն այն շեմով, որին ԱՄՆ-ը արդեն փաստորեն մոտեցել է.

բ) ստրատեգիական հարձակողական սպառազինությունները (միջմայրցամաքային բալիստիկ հրթիռներ, սուզանավերի բալիստիկ հրթիռներ և ծանր ռմբակոծիչներ) սահմանափակվում են հավասար մակարդակներով: Մյուս կողմի տերիտորիային հասնող միջին հեռահարության սպառազինությունների, այդ թվում վերգետնյա բազավորման մեծ հեռահարության թևավոր հրթիռների հարցը այս դեպքում լուծվում է առանձին:

Այսպիսի տարբերակը մեկ անգամ ևս ցուցադրում է փոխընդունելի համաձայնության հասնելու Սովետական Միության ձգտումը: Թեև, իհարկե, մենք կնախընտրեինք անմիջապես համաձայնության գալ միմյանց տերիտորիային հասնող ստրատեգիական հարձակողական սպառազինությունների արմատական՝ 50 տոկոս կրճատման մասին:

Մենք համաձայնության նախագիծ ենք առաջադրել նաև Եվրոպայում միջին հեռահարության հրթիռների մասին: Համաձայնվել ենք այն բանին, որ այդ զինատեսակի գծով եվրոպական գոտում Սովետական Միության և Միացյալ Նահանգների զրոյական հարաբերակցության դեպքում մնան անգլիական և ֆրանսիական միջուկային հրթիռները ներկայումս գոյություն ունեցող քանակությամբ: Հայտարարել ենք նաև, որ Ասիայում չենք ավելացնի միջին հեռահարության հրթիռների թիվը:



Այլ կերպ ասած, Սովետական Միությունը կատարել է Ժնևի բանակցություններում փոխընդունելի համաձայնությունների որոնումները դյուրացնող նոր քայլեր: Թե դրան ինչպես կվերաբերվի ԱՄՆ-ը, ցույց կտա ժամանակը: Ամեն դեպքում պետք է պարզ լինի. եթե ամերիկյան կողմը այս անգամ ևս անտեսի մեր նախաձեռնությունները, ապա ակնհայտ կդառնա, որ ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմը անվայել խաղ է խաղում անչափ լուրջ հարցում, որից կախված է մարդկության ապագան:

Այսօր առանձնակի սրություն է ստացել միջուկային փորձարկումների դադարեցման պրոբլեմը: Որոշ չափով դա նաև Չեռնոբիլի ատոմային կայանի վթարի հետևանքն է: Այդ վթարը ցույց տվեց, որ ռադիոակտիվ նյութերի նույնիսկ ոչ մեծ արտանետումը փորձանք և տագնապ է պատճառում հազարավոր մարդկանց:

Բոլոր ազնիվ մարդիկ, մեզ անկեղծ կարեկցանք արտահայտելով և անշահախնդիր օգնություն առաջարկելով, այդ դժբախտ դեպքի մեջ տեսան անհամեմատ ավելի լուրջ վտանգ: Նրանք իրենց և մյուսներին հարց են տալիս. իսկ ի՞նչ կլինի, եթե ռազմական ատոմը պատահաբար կամ չար դիտավորությամբ դուրս գա վերահսկողությունից: Նույնիսկ մեկ միջուկային ռումբի պայթյունը շատ ավելի ահավոր ողբերգություն կդառնա բազմաթիվ երկրների ժողովուրդների համար: Հենց այդ մասին ավելի ու ավելի խորն են խորհրդածում մեր հողագնդի մարդիկ:

Ամերիկայի Միացյալ Նահանգները մարդկության առջև անչափ ծանր պատասխանատվություն են ստանձնում՝ մերժելով դադարեցնել միջուկային փորձարկումները, միանալ սովետական մորատորիումին: Մոլորակը տագնապած է ԱՄՆ-ի վարքով, բայց իրավիճակի լրջությունը կոչ է անում նաև, որ բոլոր միջուկային փորձարկումների դադարեցման, միջուկային զենքի վերացման օգտին ձեռնարկվող ջանքերը կրկնապատկվեն ու եռապատկվեն:

Չեռնոբիլի փորձանքը մեր փորձանքն է: Մեր ուժերը կբավականացնեն դրա հաղթահարմանը: Մենք բոլորին շնորհակալություն ենք հայտնում այդ դեպքի առթիվ ցուցաբերած կարեկցության և օգնության համար. երախտագիտություն ենք հայտնում անկեղծորեն, ի սրտե: Բայց թող Չեռնոբիլը, ինչպես և մյուս դեպքերը, երբ ատոմը դադարում է մարդուն ենթարկվել, ահարկու նախազգուշացում ծառայեն նրանց համար, ովքեր դեռևս մինչև վերջ չեն գիտակցում աշխարհի վրա կախված միջուկային վտանգը, ովքեր շարունակում են միջուկային զենքը համարել քաղաքականության միջոց:

Հատկապես կուզենայի խոսել սովետա-ամերիկյան բարձր մակարդակի նոր հանդիպման մասին: Մենք Վաշինգտոնի հետ երկխոսություն վարելու կողմնակից ենք: Մենք չենք փակում դուռը. ԱՄՆ-ի պրեզիդենտի հետ նոր հանդիպումը հնարավոր է: Բայց հասկանալի է, որ դրա համար անհրաժեշտ է այնպիսի մթնոլորտ, որը ռեալ համաձայնությունների հասնելու հեռանկար բացեր: Այս մասին մենք ասել ենք թե՛ պրեզիդենտ Ռեյգանին և թե ամբողջ աշխարհին: Այս դիրքորոշումը ըմբռնում է գտնում բարեկամների կողմից:

Դե իսկ ինչպե՞ս է գործում ԱՄՆ-ի վարչակազմը: Նա սաբոտաժի է ենթարկում զինաթափման բանակցությունները, հայտարարել է, որ ինքը մտադիր է չկիրառել ՍՍՍ—2 պայմանագիրը, որ այդ պայմանագիրը «մեռած է»: Աշխարհով մեկ ձեռնարկվում են այնպիսի գործողություններ, որոնք է՛լ ավելի են սրում միջազգային իրադրությունը:

Օրինական հարց է ծագում. իսկ Վաշինգտոնում ուզո՞ւմ են արդյոք նոր հանդիպում, թե՞ դրա մասին խոսակցությունները սոսկ համաշխարհային հասարակայնությանը մոլորեցնելու փորձ են:

Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի խորհրդակցությունների նշանակությունը, ինչպես հայտնի է, մեծապես որոշվում է դրանց կողմից առաջ քաշվող նոր նախաձեռնություններով: Բուդապեշտի հանդիպման յուրօրինակ մեխը դարձավ ամբողջ Եվրոպայում՝ Ատլանտյան օվկիանոսից մինչև Ուրալ, սովորական սպառազինությունների և զինված ուժերի կրճատման մասին համատեղ մշակված ծավալուն առաջարկությունը: Դրա բովանդակությունը ձեզ հայտնի է. խոսքը առաջիկա տարիներին երկու կողմերի զինված ուժերի 25 տոկոս կրճատման մասին է: Դրանով իսկ նախահարված է տրվում նաև այն չարաշահական փաստարկին, թե Եվրոպայում

միջուկային զինաթափումը սովորական սպառազինությունների ներկա մակարդակի պահպանման դեպքում իբր անպաշտպան վիճակի մեջ կդներ արևմտաեվրոպական պետություններին: Հատկանշական է, որ Արևմուտքը հնարավոր չգտավ անմիջապես մերժելու այդ առաջարկությունը:

Բուդապեշտում համաձայնեցվեցին նաև մի քանի ուրիշ կարևոր նախաձեռնություններ: Հավանության արժանացավ խորհրդակցության նախօրեին, Չեպելում իմ ելույթի մեջ արտահայտված գաղափարը՝ բոլոր երկրների ջանքերը միավորելու տիեզերքի խաղաղ օգտագործման համար, այդ նպատակով ստեղծելու միջազգային հատուկ կազմակերպություն: Այդ գաղափարը արդեն իր արտահայտությունն է գտել ՄԱԿ-ի գլխավոր քարտուղարին ուղարկված առաջարկության մեջ: Քննարկվեցին միջազգային անվտանգության համապարփակ համակարգի ստեղծման կոնցեպցիայի հետագա առաջընթացի հարցերը:

Հատուկ հիշատակման է արժանի Բուդապեշտի խորհրդակցության աշխույժ, կոնստրուկտիվ մթնոլորտը: Բոլոր ընկերները, և դրանում դրսևորվում են ժամանակի նշանները, կոնկրետ հարցերը քննարկում էին դաշնակից սոցիալիստական պետությունների ընդհանուր արտաքին քաղաքական ստրատեգիայի պրիզմայի միջով: Մի խոսքով, Բուդապեշտում դրսևորվեցին միասնություն, ստեղծագործական համագործակցություն, որը հարստացնում է սոցիալիզմի միջազգային քաղաքականությունը, է՛լ ավելի մեծ կշիռ հաղորդում նրա գործողություններին համաշխարհային ասպարեզում:

Խորհրդակցության բոլոր մասնակիցները գոհունակությամբ էին նշում, որ Վարշավայի պայմանագրի բարձրագույն մարմնի աշխատանքում վերջին ժամանակներս ավելացել են դինամիզմը, օպերատիվությունը: Բուդապեշտում ընդունված որոշումները սոցիալիստական երկրների խոշոր ներդրումն են միջազգային իրադրությունն առողջացնելու պայքարում:

Ընդհանրապես, ընկերներ, մենք հնարավոր բոլոր միջոցները ձեռնարկել ենք և կձեռնարկենք խաղաղության պահպանման և ամրապնդման համար: Եվ այդ ազնիվ գործում մենք զգում ենք մեր դիրքորոշման ակտիվ աջակցությունը բարեկամների, մոլորակի բոլոր խաղաղասեր ուժերի կողմից:

Ընկերնե՛ր: Այսպիսիք են մեր ետհամագումարյան զարգացման հիմնական դասերն ու հետևությունները, որոնք մենք պետք է յուրացնենք լիովին, որպեսզի հաջողությամբ առաջ ընթանանք: Այսպիսիք են այն ներքին և միջազգային պայմանները, որոնցում մենք սկսել ենք իրականացնել XXVII համագումարի որոշումները:

Հնգամյակի քաղաքական խնդիրն է վերակառուցել մեր էկոնոմիկան, ստեղծել ժամանակակից նյութատեխնիկական բազա, որն ապահովեր սովետական հասարակության զարգացման արագացումը, սոցիալական խոշոր խնդիրների լուծումը, երկրի հուսալի պաշտպանությունը: Ժամանակը մեզ չի սպասի, նախատեսված ամեն ինչ մենք պարտավոր ենք կատարել ժամանակին, քանի որ խոսքը վերաբերում է մեր տերության հզորությանն ու բարգավաճմանը, միջազգային ասպարեզում սոցիալիզմի դիրքերին, ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդմանը:

Մենք ընդառաջ ենք գնում նշանակալից տարելիցի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակին: Մեր հայրենասիրական և ինտերնացիոնալ ընդհանուր պարտքն է այդ նշանակալի տոնը դիմավորել տնտեսական ու հասարակական-քաղաքական կտրուկ վերելքով, Հոկտեմբերի հայրենիքին արժանի նվաճումներով և հաջողություններով:

Կարծում եմ, պետք է պլենումի անունից դիմել բոլոր աշխատավորներին՝ կոչ անելով լայնորեն ծավալելու համաժողովրդական սոցիալիստական մրցությունը տասներկուերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար, համարձակ պլանները վերածելու պրակտիկ գործողությունների էներգիայի: Կենտրոնական կոմիտեն յուրաքանչյուր սովետական աշխատավորի կոչ է անում կանգնել մրցության մասնակիցների շարքերում, լինել հնգամյակի աշխատանքային ճակատի ակտիվ մարտիկ, իր աշխատատեղում ծանրակշիռ անձնական ավանդ ներդնել ընդհանուր գործում:



Կուսակցական կոմիտեների, կուսակցական բոլոր կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացնել այն բանի վրա, թե ինչպես լուծել համագումարի առաջադրած խնդիրները, ինչպես տանել քաղաքական, տնտեսական և կազմակերպական-դաստիարակչական աշխատանքը, որպեսզի նվաճվեն հնգամյակի առաջադրած բնագծերն ու գերազանցվեն դրանք: Սա է պահի էությունը: Ուստի և ավելի շատ վերլուծություն, ավելի շատ գործողություններ, գործնականություն, ավելի քիչ ընդհանուր դիտողություններ և օբյեկտիվ հանգամանքների վկայակոչումներ:

Կուսակցությունը յուրաքանչյուր ղեկավարից, յուրաքանչյուր կոմունիստից սպասում է ոչ թե երդումներ ու հավաստիացումներ, այլ ռեալ գործեր, որոնք մեզ առաջ տանեին նշված ուղիով: Կենտրոնական կոմիտեն կպաշտպանի կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների, միությունների ու գերատեսչությունների նախաձեռնությունն ու նորարարական որոնումները, որոնց նպատակն է հասնել լավագույն արդյունքների: Գործել նախաձեռնողաբար, հաստատակամորեն, եռանդագին, պատասխանատվության բարձր զգացումով՝ ահա թե կյանքն այսօր ինչ է պահանջում յուրաքանչյուրից, միասին վերցրած բոլորից: Վստահ եմ, որ պլենումի դիմումը ըմբռնում ու արձագանք կգտնի բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության շրջանում, կմարմնավորվի միլիոնավորների ամենօրյա, առօրյա աշխատանքի հերոսության մեջ: Իսկ դա որոշում է ամեն ինչ, ընկերներ:

**(Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և ընդունվեց երկարատև ծափահարություններով):**

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Գ. ԱՍԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հսկայական ուշադրություն նվիրեց գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, սահմանեց նրա հիմնական խնդիրները արդի փուլում: «Սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայքարում,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— բացառիկ բարենպաստ հասարակական պայմաններ են ստեղծվում գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար»:

Ահա թե ինչու այսօր առավել հրատապ է դառնում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների հետ գաղափարախոսական աշխատանքը սերտորեն շաղկապելու անհրաժեշտությունը, որը բխում է արդի փուլում կուսակցության վարած քաղաքական կուրսից: Դրանով իսկ է՛լ ավելի է կարևորվում գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դերը կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում: Համագումարն անհրաժեշտ համարեց, որպեսզի մարդիկ մշտապես տեսնեն, զգան մեր գաղափարախոսության մեծ ճշմարտությունը, քաղաքականության սկզբունքայնությունը, աշխատանքը և բարիքների բաշխումը այնպես կազմակերպել, օրենքները և սոցիալիստական համակեցության սկզբունքներն այնպես հետևողականորեն կիրառել, որ յուրաքանչյուր սովետական մարդ անսասան հավատ ունենա մեր իդեալների և արժեքների նկատմամբ: Համագումարը պաշտպանեց ՍՄԿԿ Կենտկոմի այն կուրսը, ըստ որի մարքս-լենինյան գաղափարախոսության հսկայական վերափոխիչ ուժը պետք է ամբողջովին ի սպաս դրվի պրակտիկային, հաղթահարվի հնացած ձևերի ու մեթոդների իներցիան: Կուսակցության առաջադրած բարդ ու մասշտաբային խնդիրների լուծման համար պահանջվում են մոբիլիզացնել ժողովրդի ստեղծագործական ողջ պոտենցիալը, հասարակական գիտակցությունը հասցնել սկզբունքորեն նոր մակարդակի: Ինչպես նշվեց XXVII համագումարում, ամենաէականը, ինչի վրա անհրաժեշտ է կենտրոնացնել գաղափարախոսական ներգործության ուժը, այն է, որ յուրաքանչյուր մարդ խորապես ըմբռնի ներկա փուլի սրությունը, դրա բեկումնային բնույթը: Հասարակությունը շրջել դեպի նոր խնդիրներ, դրանց լուծմանն ուղղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, ամեն մի աշխատավորի ստեղծագործական պոտենցիալը՝ սա է երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման առաջնային պայմանը:



Այս խնդիրների լույսի ներքո էապես մեծանում է կոմունիստների և անկուսակցականների քաղաքական կոփվածքի ամրապնդման, նրանց կոմունիստական համակողմանի դաստիարակության անհրաժեշտությունը: Այս համակարգում կուսակցությունը հսկայական կարևորություն է տալիս քաղաքական ուսուցմանն ու տնտեսագիտական կրթությանը, մասսայական ինֆորմացիայի միջոցներին, կուլտուր-լուսավորական և սպորտային հիմնարկությունների գործունեությանը, պրոպագանդիստների և դասախոսների, զեկուցողների, քաղինֆորմատորների և ագիտատորների ստվար բանակին: Խնդիր է դըրվում գաղափարախոսական աշխատանքի մեջ ավելի ակտիվորեն ներգրավել ղեկավար կադրերին, ապահովել կոմպլեքսային մոտեցում դաստիարակության գործի նկատմամբ, ամբողջ աշխատանքի կենտրոնում դնել կոնկրետ մարդուն:

Կուսակցական կազմակերպություններից և գաղափարախոսական ոլորտի աշխատողներից պահանջվում է մարդկանց դաստիարակել թե՛ ճշմարտացի խոսքով և թե ռեալ գործով, քաղաքական լուսավորությունը, գաղափարական ազդեցությունը միավորել տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման, պետության, արտադրական և հասարակական գործերի կառավարմանը աշխատավորների ավելի ու ավելի ընդլայնվող մասնակցության հետ: Լավ կըշռադատված տնտեսական ստրատեգիայի, սոցիալական արդարամիտ և հետևողական քաղաքականության ու նպատակամետ գաղափարադաստիարակչական աշխատանքի միջոցով, դրանց անխզելի միասնությամբ միայն կարելի է ակտիվացնել մարդկային գործոնը, առանց որի չի կարող լուծվել առաջադրված ոչ մի խնդիր: Այդ առնչությամբ համագումարում ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ խելացի և ճշմարիտ խոսքը ազդեցության հսկայական ուժ ունի, բայց դրա նշանակությունը հարյուրապատիկ բազմապատկվում է, երբ այն օրգանապես միահյուսվում է քաղաքական, տնտեսական ու սոցիալական հարցերի լուծման հետ: Եվ միայն այդ կերպ կարելի է արմատախիլ անել ձանձրալի խրատականությունը, կենդանի շունչ հաղորդել կոչերին ու լոզունգներին:

Ամեն մի գործի հաջողություն վճռական չափով որոշվում է նրանով, թե որքանով ակտիվորեն ու գիտակցաբար են դրան մասնակցում մասսաները: Վերակառուցել կադրերի հոգեբանությունը, աշխատավորներին համոզել առավել բարձր արդյունքների ձեռքբերման անհրաժեշտության մեջ, բարոյապես և նյութապես շահագրգռել նրանց— սրանք են մեր աճի արագացման կարևորագույն պայմանները: Ընդ որում առաջընթացն այնքան արագ կլինի, որքան ամուր ու բարձր լինեն կարգապահությունն ու կազմակերպվածությունը, յուրաքանչյուրը պատասխանատվություն դրսևորի հանձնարարված գործի, դրա վերջնական արդյունքների համար:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. ապրիլյան պլենումը, քննարկելով ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքները և սահմանելով հանրապետության կուսակցական կազմակերպության անելիքները համագումարի որոշումների կատարման գործում, լուրջ ու պատասխանատու խնդիրներ առաջադրեց նաև գաղափարախոսական կադրերին: Մեր պարտքը ամենից առաջ այն է, որ ապահովենք համագումարի նյութերի լայն և նպատակասլաց պրոպագանդումն ու պարզաբանումը կոմունիստների, բոլոր աշխատավորների շրջանում, նրանց խորապես ու համակողմանիորեն իրազեկ պահենք համագումարի մշակած կուսակցության արտաքին քաղաքական և երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսին, կուսակցության տնտեսական ստրատեգիային, հնգամյակի հիմնական ուղղություններին ու առանձնահատկություններին: Աշխատավորները պետք է մշտապես տեղյակ լինեն հանրապետության ժողովրդական տնտեսության, նրա յուրաքանչյուր ճյուղի, քաղաքի ու շրջանի, արտադրական կոլեկտիվի խնդիրներին, արտադրության ին-

Աշտարակ, Գորիս, Մասիս, Շամշադին) խախտվեցին ուսուցման անցկացման ժամկետները, ցուցաբերվեցին հապճեպություն, ձևական մոտեցում պրոպագանդիստական կադրերի համակողմանի բնութագրման նկատմամբ։ Մի շարք տեղերում, ինչպես հարկն է, հաշվի չեն առել պրոպագանդիստների նախասիրությունները, ցանկությունները՝ ուսուցման այս կամ այն օղակում պարապելու համար։ Աչքաթող են արվել ոչ քիչ արժեքավոր առաջարկություններ, որոնք վերաբերում են ուսուցման կատարելագործմանը, պրոպագանդիստական ուսանելի փորձի ընդհանրացմանը, ուսուցման առավել ակտիվ ձևերի ու մեթոդների ներդրմանը։

Անհրաժեշտ է պատշաճ դասեր քաղել այդ սխալներից ու բացթողումներից, ըստ ամենայնի բարելավել պրոպագանդիստական կադրերի ընտրության ու վերապատրաստման գործը։ Հարկավոր է պրոպագանդիստների մշտապես գործող քաղաքային ու շրջանային սեմինարներում համակողմանիորեն պարզաբանել ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերն ու նյութերը, պարբերաբար անցկացվող գիտագործնական կոնֆերանսներում խորապես ուսումնասիրել ՍՄԿԿ-ի և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ հարցերը։

Համագումարը խնդիր դրեց ավելի լայնորեն օգտագործել դաստիարակության այնպիսի կարևոր ձև, ինչպիսին է անհատական աշխատանքը, առավելագույն կոնկրետություն ապահովել դաստիարակության գործում։ Կուսակցության քաղկոմների ու շրջկոմների քաղլուսկաբինետներում, գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկություններում և ուսումնական հաստատություններում խմբային կոնսուլտացիաներին ու զրույցներին զուգընթաց պետք է ավելի ու ավելի հաճախակի անցկացնել անհատական կոնսուլտացիաներ և զրույցներ։ Թվերի և «ընդգրկումների» տաղտկալի շարանի մեջ ոչ մի պարագայում չպետք է անտեսվի կենդանի մարդը՝ իր կոնկրետ պահանջմունքներով ու առանձնահատկություններով։ Այս գործում մեծ ռեզերվ է պրոպագանդիստների և գաղափարախոսական մյուս կադրերի անհատական ստեղծագործական պլանով կատարվող աշխատանքը։ Այդ գործունեությունը պետք է նպատակամղել յուրաքանչյուրի և բոլորի գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմանը, գիտելիքների խորացմանը, նրանց հասարակական ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը։

Կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ պարտքն է քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգում արդյունավետորեն կազմակերպել ՍՄԿԿ XXVII համագումարի փաստաթղթերի ու նյութերի խոր ու համակողմանի ուսումնասիրությունը, այն սերտորեն շաղկապել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կոնկրետ խնդիրների, մարդկային գործոնի ակտիվացման, իրենց դարն ապրած մոտեցումների հաղթահարման հետ։

Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մի շարք քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքում շարունակում են տեղ գտնել այնպիսի լուրջ թերություններ, ինչպիսիք են կամպանիականությունը, պրոպագանդայի խզումը կյանքից, հասունացած սուր պրոբլեմների թերագնահատումը, սխոլաստիկայի և հայեցողականության տարրերը, շաբլոնն ու ձևականությունը, պարապմունքների անցկացման ավանդական, հնացած մեթոդների կիրառումը։ Այդ թերությունների հաղթահարումը պետք է լինի կուսակցական կոմիտեների, սկզբնական կազմակերպությունների կարևոր խնդիրը։

Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների առջև լուրջ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած նաև դասախոսական պրոպագանդայի կազմակերպման ասպարեզում։ Այդ բնագավառի կադրերը պետք է կուսակցության ճշմարտացի խոսքը հասցնեն մասսաներին, խորությամբ ու հա-



մակողմանիորեն պարզաբանեն նրա ներքին ու արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմները, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարները։ Հետևաբար, գործի շահերը պահանջում են արմատական տեղաշարժեր կատարել դասախոսական պրոպագանդայի կազմակերպման ոլորտում։ Եվ հանրապետությունում կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում դրա վերակառուցման, որակի ու արդյունավետության բարձրացման նպատակով։ Արդեն ավարտվել են լսարանների անձնագրավորման, դասախոսությունների կազմակերպիչների ընտրության, պլան-գրաֆիկների կազմման աշխատանքները։ Քաղաքներում ու շրջաններում ձևավորվել է 9.750 դասախոսական լսարան, որից 2.681-ը երիտասարդական, 619-ը՝ ըստ բնակության վայրի, ընտրվել են ավելի քան 6.600 դասախոսությունների կազմակերպիչներ։ «Գիտելիք» ընկերության կազմակերպությունները ևս զբաղվում են դասախոսների տեսական պատրաստականության, գիտամեթոդական մակարդակի բարձրացման հարցերով։ Սակայն, այս ամենով հանդերձ, դասախոսական պրոպագանդայի վերակառուցման և կազմակերպման գործում դեռևս կան զգալի թերություններ ու թերացումներ, որոնց հաղթահարման վրա իրենց ուշադրությունը պետք է սևեռեն կուսակցության քաղկոմ-շրջկոմները, նրանց պրոպագանդայի և ագիտացիայի բաժինները։ Բանն այն է, որ շատ շրջաններում դեռևս չի հաղթահարվել հին ձևով աշխատելու միտումը, շրջանային կազմակերպությունները չեն գլխավորում դասախոսությունների պլանավորման և կազմակերպման գործը, ժամանակին չեն կազմում պլան-գրաֆիկները, դրանք լրջությամբ չեն ուսումնասիրում և ամփոփում։ Այդ երևույթները հատկապես նկատելի են Մեղրիի, Բաղրամյանի, Ազիզբեկովի և այլ շրջանային կուսկազմակերպություններում։

Առանձին քաղաքային և շրջանային կոմիտեներ լրջորեն չեն վերակառուցել արտահաստիքային դասախոսական խմբերի աշխատանքը, անհրաժեշտ օգնություն ու վերահսկողություն չեն իրականացնում «Գիտելիք» ընկերության շրջանային ու քաղաքային կազմակերպությունների գիտամեթոդական սեկցիաների նկատմամբ, չեն հետևում, որպեսզի նրանք գործը կազմակերպեն նոր խնդիրների պահանջներին համապատասխան։ Երբեմն ձևական մոտեցում է ցուցաբերվում դասախոսությունների կազմակերպիչների ընտրության, նրանց անհրաժեշտ մեթոդական օգնություն ցույց տալու գործին։ Չի արմատավորվել դասախոսությունների որակի ու արդյունավետության վերահսկման հստակ համակարգ։ Ինչպես հարկն է չի կոորդինացվում տարբեր կազմակերպությունների գործունեությունն այս բնագավառում։ Դասախոսություններ կազմակերպելու համար անբավարար են օգտագործվում կուլտուր-լուսավորական հիմնարկությունների հնարավորությունները։

ՍՄԿԿ XXVII համագումարը առանձնահատուկ կերպով շեշտեց աշխատավորական կոլեկտիվների հետ կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողների հանդիպումների կարևորությունը։ Դա առավել արդյունավետ և կազմակերպված են իրականացվում միասնական քաղօրերին, որոնք դարձել են գաղափարախոսական աշխատանքի հետաքրքրական, պրակտիկայում իրենց արդարացրած ձև։ Այս բնագավառում հանրապետությունում կուտակվել է զգալի դրական փորձ։ Քաղկոմ-շրջկոմների մեծ մասը ուշադրության կենտրոնում է պահում ղեկավար աշխատողների հանդիպումների կազմակերպումը, քաղօրերի ընթացքում բարձրացված հարցերի, առաջարկությունների ու քննադատական դիտողությունների ամփոփումը, դրանց իրականացման համար համապատասխան միջոցառումների մշակումը։ Այդ հարցերի լուծմանը պարբերաբար անդրադառնում է ՀԿԿ Կենտկոմի քարտուղարությունը։ Այս ասպարեզում ուսանելի է հատկապես ՀԿԿ Արարատի շրջկոմի փորձը։ Այստեղ մշակվել է միասնական քաղօրերի անցկացման գործուն համակարգ։ Շրջկոմի բյուրոյում պարբերաբար քննարկվում են դրանց առնչվող հրատապ հարցեր, զեկուցումները կապվում են շրջանի, տվյալ կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ, հաշվի է առնվում լսարանի կազմը։ Շրջանում

քաղօրերը ընդգրկում են աշխատավորական կոլեկտիվների ճնշող մասը, ապահովվում է ընդգրկման և՛ լայնությունը, և՛ խորությունը։ Կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները ձգտում են է՛լ ավելի ընդլայնել քաղաքական հանդիպումների լսարանը, ընդգրկել նաև փոքրաթիվ կոլեկտիվները, բացառել շաբլոնը, օգտակար դարձնել զեկուցող—ունկնդիր կապը։ Այդ ամենի շնորհիվ շրջանում միասնական քաղօրերն անցնում են գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, աշխատավորների ակտիվ մասնակցության պայմաններում, գործարար մթնոլորտում։ Քաղօրերի ընթացքում աշխատավորների արած դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու հարցերը քննարկվում են շրջկոմի բյուրոյում կամ լուծվում օպերատիվորեն։

Պետք է նշել, սակայն, որ շրջանների մի զգալի մասում քաղօրերի կազմակերպման գործում մեծ է ձևականության տարրը։ Տեղի ղեկավար աշխատողները քաղօրերին կա՛մ կոլեկտիվների հետ չեն հանդիպում, կա՛մ էլ քաղաքական ելույթներն ու զեկուցումները վերածում են սովորական տեսչական այցելությունների։ Որքան էլ զարմանալի է, առանձին շրջկոմներ նույնիսկ չունեն բյուրոյի հաստատած զեկուցողների կազմ կամ տարիներ շարունակ այն չեն վերանայում։ Որոշ տեղերում էլ անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում քաղօրերի ընթացքում արված առաջարկությունների ու քննադատական դիտողությունների ամփոփման, դրանց ընթացք տալու, հետադարձ ինֆորմացիայի ապահովման հարցերին։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մի շարք շրջաններում աշխատավորական ոչ բոլոր կոլեկտիվներում են քաղօրեր անցկացվում։ Այսպես, օրինակ, ընթացիկ տարվա հունվարին Արթիկի շրջանի 105 կոլեկտիվներից քաղօր է կազմակերպվել 56-ում, Թումանյանում՝ 96-ից 50-ում, Գորիսում՝ 143-ից 58-ում, Ստեփանավանում՝ 87-ից 26-ում, Շամշադինում՝ 100-ից 65-ում և այլն։ Վիճակը գրեթե նույնն է եղել փետրվար, մարտ և ապրիլ ամիսներին։

Կուսակցությունը պահանջում է ուշադրությունից դուրս չթողնել գաղափարադաստիարակչական աշխատանքի, մարդկանց դաստիարակության ոչ մի բնագավառ։ Խոսքը կոնկրետ դեպքում վերաբերում է մի այնպիսի կարևոր տեղամասի, ինչպիսին ժողովրդական համալսարաններն են։ Անժխտելի է դրանց դերը մարդկանց կոմունիստական դաստիարակության, կրթության ու ինքնակրթության գործում։ Սակայն այդ բնագավառում տիրող վիճակը լուրջ մտորումների տեղիք է տալիս։ Ճիշտ է, դրանք պատկառելի թիվ են կազմում՝ շուրջ 550 ժողհամալսարան՝ 2.430 ֆակուլտետներով, սակայն զգալի մասը գոյություն ունի լոկ թղթի վրա։ Գործողներում էլ ցածր է աշխատանքի կազմակերպման, պարապմունքների վարման մակարդակը։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների մեծ մասը լրջորեն չի զբաղվում ժողովրդական համալսարաններով։ Մի շարք շրջաններում, շեշտը դնելով ժողովրդական համալսարանների, դրանց ֆակուլտետների, ունկնդիրների քանակական ցուցանիշների ձևական ապահովման վրա, աչքաթող է արվում դրանց հետ տարվող կոնկրետ աշխատանքը։ Ժողովրդական համալսարանների հանրապետական խորհրդի տվյալներով, թեև ներկայումս Ազիզբեկովի, Արարատի, Թալինի, Վարդենիսի, Մեղրիի շրջաններում կա 8—9 համալսարան՝ 4.000—6.500 ունկնդիրներով, սակայն իրականում դրանցից գրեթե ոչ մեկը չի գործում նորմալ կերպով, այսօրվա պահանջներին համապատասխան։

Ներկայումս ժողհամալսարանների հանրապետական խորհուրդը և «Գիտելիք» ընկերության հանրապետական վարչությունը միջոցներ են ձեռնարկում այդ բնագավառում գործերի վիճակը արմատապես շտկելու համար։ Անհրաժեշտ է, որպեսզի քաղկոմ-շրջկոմները ևս լրջորեն փոխեն վերաբերմունքը ժողովրդական համալսարանների նկատմամբ, որակական տեղաշարժեր ապահովեն նրանց գործունեության մեջ։

Աշխատավորների քաղաքական դաստիարակության խնդիրների իրակա-



նացման, ազատ ժամանակի խելացի օգտագործման, սթափ ապրելակերպի հաստատման գործում կարևոր դեր է պատկանում մշակույթի հիմնարկություններին ու մարզական կառույցներին։ Խնդիրն այն է, որ արտադրության մարդու համար ստեղծվեն հանգստի, ազատ ժամանակի արդյունավետ տնօրինման լավ պայմաններ։

Կուսկազմակերպությունների համար գործողության ուղեցույց են ակումբային հիմնարկների և մարզական կառույցների օգտագործման բարելավման ու հարբեցողության ու ալկոհոլիզմի հաղթահարման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները։ Այդ որոշումների պահանջներին համապատասխան հանրապետությունում նկատելի աշխատանք է կատարվել մշակույթի օջախների գործունեության աշխուժացման, գեղարվեստական ինքնագործունեության, մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման, մարզիկների վարպետության բարձրացման ասպարեզում։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, հանրապետության Մինիստրների խորհուրդը մի քանի անգամ քննարկել են կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի բարելավման, մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման հարցերը։ Մշակվել և կենսագործվում են ակումբային հիմնարկների գործունեության բարելավման, կուլտուր-մարզական համալիրների, գյուղական սպորտի, տուրիզմի զարգացման հեռանկարային պլաններ, կատարելագործվում են կուլտուր-լուսավորական հիմնարկների և մարզական կազմակերպությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները, ամրապնդվում է նրանց նյութական բազան, իրականացվող միջոցառումները դառնում են ավելի մասսայական։

Չնայած դրան՝ այդ բնագավառում մեր ծավալած աշխատանքում առկա են նաև լուրջ թերություններ ու թերացումներ։ Ընթացիկ տարվա հունվար-փետրվար ամիսներին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի ստուգումներից պարզվեց, որ հանրապետության ակումբային շատ հիմնարկներում չկան հանգստի նորմալ պայմաններ, որոշ շենքեր ձմռանը չեն ջեռուցվում, հիմնական նորոգման կարիք ունեն։ Օրինակ, Արթիկի շրջանի Անուշավան գյուղի մշակույթի տունը 17 տարի չի նորոգվել, և շենքը վթարային վիճակում է։ Փլման վտանգի տակ է Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի մշակույթի տունը։ Ստուգումները վկայում են, որ 249 ակումբային շենքերում դեռևս գտնվում են կուլտլուսավորական աշխատանքի հետ առնչություն չունեցող հիմնարկություններ։ Ներկայումս Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը համապատասխան քաղկոմ-շրջկոմների հետ մշակում է այդ շենքերը կողմնակի կազմակերպություններից ազատելու գրաֆիկ։

Կուսակցական կազմակերպությունների գաղափարախոսական գործունեության կարևոր ուղղություններից մեկը աշխատավորների աթեիստական դաստիարակությունն է։ Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման պահանջների լույսի ներքո աթեիստական պայքարի ուժեղացման հարցերն անցյալ տարի քննարկվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյում։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները սահմանեցին իրենց անելիքները, կազմեցին ու իրականացնում են միջոցառումների հեռանկարային պլաններ։

Կուսակցական կազմակերպությունները, գաղափարական հիմնարկությունները մի շարք միջոցներ են ձեռնարկել գիտաաթեիստական պրոպագանդան բարելավելու, նոր սոցիալիստական ծեսեր արմատավորելու նպատակով։ Հանրապետությունում արդեն գործում է նոր սոցիալիստական տոների ու ծեսերի մշակման և արմատավորման հանրապետական հանձնաժողով։ Տեղական սովետներին առընթեր համանման հանձնաժողովների ստեղծմամբ հնարավոր է լինում օգտագործել մասսայական-քաղաքական աշխատանքի, սովետական ապրելակերպի նոր ձևեր։ Վերջերս Կենտկոմի բյուրոն հաստատեց աթեիստական դաստիարակության կոմպլեքսային ծրագիր, որտեղ սահման-

ված են կուսակցության քաղկոմ-շրջկոմների, շահագրգռված մյուս կազմակերպությունների կոնկրետ անելիքները։ Անհրաժեշտ է տեղերում ակտիվացնել այդ նպատակով տարվող աշխատանքը, վճռականորեն հաղթահարել գոյություն ունեցող թերությունները։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի՝ «Հանրապետությունում սոցիալիստական նոր տոների ու ծիսակատարությունների վիճակի ու լայն տարածման միջոցառումների մասին» որոշմամբ կուսակցական կոմիտեների, տեղական սովետների գործկոմների առջև խնդիր է դրվում կատարելագործել նոր տոների, ծիսակատարությունների ու արարողությունների մշակման և արմատավորման նպատակով տարվող աշխատանքը, ակտիվացնել պայքարը իրենց դարն ապրած, քաղքենիական շռայլությամբ աչքի ընկնող հարսանիքների, ճոխ հուղարկավորությունների, թանկարժեք գերեզմանաքարերի տեղադրման և մեր բարոյականությանը խորթ այլ երևույթների դեմ։

Գաղափարախոսական աշխատանքի բնագավառում մեր անելիքները շատ են, առաջադրված խնդիրները՝ բարդ ու բազմազան։ Դրանց լուծման համար հարկավոր է հանդես բերել բարձր պատասխանատվություն, ձեռք բերածի նկատմամբ՝ խիստ քննադատական վերաբերմունք։ Դաստիարակությանը՝ կոմպլեքսային մոտեցում— ահա մեր աշխատանքի նշանաբանը։ Հետևաբար անհրաժեշտ է գաղափարախոսական գործունեությունն ավելի ու ավելի լիակատար համապատասխանեցնել երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման առնչությամբ մեր առջև ծառացած խնդիրներին, կազմակերպել աշխատավորների համակողմանի դաստիարակությունը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, մեր պլանները իրագործելու համար պետք է անտարբեր չթողնել մարդկանց, կարողանալ արթնացնել մասսաների աշխատանքային և հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը։ «Հասարակությունը,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— շրջել դեպի նոր խնդիրներ, դրանց լուծմանը նպատակամղել ժողովրդի, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի ստեղծագործական պոտենցիալը՝ այսպիսին է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ամենաառաջին պայմանը»։ Այս կարևորագույն պահանջները գործողության ծրագիր են հանրապետության կուսակցական կազմակերպությունների, գաղափարախոսական բնագավառի բոլոր աշխատողների համար։

---

# ՄԱՐԴԸ ՈՐՊԵՍ ԱՐԱԳԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԳՈՐԾՈՆ

**Ա. ՄԻՍԼԻՎՉԵՆԿՈ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման արդի պատմական փուլը բեկումնային բնույթ է կրում, քանի որ առաջիկայում սպասվում է դուրս գալ հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխությունների նոր բնագծեր։ ՍՄԿԿ XXVII համագումարը հաստատեց կուսակցության ստրատեգիական կուրսը՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուրսը։ Արագացման գործոններից կարելի է առանձնացնել երեք հիմնական գործոն. գիտատեխնիկական առաջընթացը, տնտեսական մեխանիզմի, կառավարման ողջ համակարգի կատարելագործումը, մարդկային գործոնի դերի բարձրացումը։

Ընդգրկելով հասարակության կյանքի բոլոր ոլորտները՝ արագացումը կոմպլեքսային բնույթ է կրում։ Արագացված առաջընթացի, էկոնոմիկան ինտենսիվացման ուղի տեղափոխելու վճռական պայմանը ժողովրդի ստեղծագործական ուժերի մոբիլիզացումն է։ Գործի հաջողությունը, հասարակության զարգացման արագացման պլանների իրականալիությունը մեծապես պայմանավորված են մարդկային գործոնի ակտիվացման աստիճանով, այլ կերպ ասած, այն բանով, թե որքանով կհաջողվի արթնացնել լայն մասսաների ստեղծագործական պոտենցիալը, զարգացնել յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր մարդու եռանդն ու նախաձեռնությունը։ Սոցիալիստական հասարակության զարգացման տրամաբանությունը, հատկապես գիտատեխնիկական առաջընթացի պայմաններում նրա արագացման արդի փուլում, օրինաչափորեն հանգեցնում է անհատի դերի մշտական աճին բոլոր մարզերում՝ արտադրությունում, կառավարման, սպասարկման, գիտության, մշակույթի մեջ, մասսայական ինֆորմացիայի և հաղորդակցման միջոցներում։

Ընդսմին կարևոր է ի նկատի ունենալ, որ հասարակության բոլոր ոլորտների զարգացումն արագացնելու խնդիրները դիալեկտիկորեն կապված են բուն մարդու համակողմանի զարգացման խնդիրների հետ։ Չէ որ սոցիալիզմի պայմաններում արտադրության զարգացումը, նրա համակողմանի ինտենսիվացումն ինքնանպատակ չէ, այլ հասարակական հարաբերությունների հումանիզացման, յուրաքանչյուր մարդու ինքնաարտահայտման, սեփական ունակությունները ծավալելու համար օբյեկտիվ պայմաններ ստեղծելու անհրաժեշտ նախադրյալ և իրական նյութական հիմք։ «Արտադրությունը,— նշել է Մ. Ս. Գորբաչովը,— ինքն իր համար չէ, որ գոյություն ունի։ Արտադրությունը գոյություն ունի ժողովրդի համար։ Այլ կերպ չի կարող լինել սոցիալիստական պայմաններում, որտեղ չկա մասնավոր սեփականություն, որտեղ բոլոր ձեռնարկությունները ժողովրդական են և սպասարկում են ժողովրդի կարիքները» (Մ. Ս. Գորբաչովի պատասխանները «Ռևոլյուսիոն աֆրիկեն» հանդեսին։ («Սովետական Հայաստան», 4 ապրիլի, 1986 թ.)։

Սոցիալիստական շինարարության ընթացքում տնտեսական աճի տեմպերի բարձրացումն ու անհատի զարգացումը փոխպայմանավորված են։ Սոցիա-

լիզմի պայմաններում արագացումն իրականացվում է մարդու համար, հանուն մարդու։ Մարդու մասնագիտական և հոգևոր-բարոյական զարգացումը սոցիալիստական հասարակության համակողմանի կատարելագործման նպատակն է և միաժամանակ միջոցը։ Ուստի և, հռչակելով «ամեն ինչ մարդու համար» սկզբունքը, չպետք է մոռանանք, որ գործնականում դրա իրականացումը միաժամանակ ենթադրում է այն դրույթի իրականացումը, թե «ամեն ինչ մարդուց է», որ բոլոր նյութական ու հոգևոր արժեքների ստեղծողը մարդն է։ Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և մարդու շահերի սկզբունքային միասնությունում թաքնված է ինչպես ամբողջությամբ հասարակության, այնպես էլ առանձին վերցրած յուրաքանչյուր մարդու հաջող կատարելագործման ու զարգացման երաշխիքը։ Ոչ միայն հասարակության, այլև յուրաքանչյուր անհատի համար կարևոր է ու անհրաժեշտ, որպեսզի անձի իրավունքների, ազատությունների և զարգացման հնարավորությունների ընդլայնումը միաժամանակ ուղեկցվի հասարակության, կոլեկտիվի նկատմամբ սեփական պատասխանատվության, իր պարտականություններն ստեղծագործաբար կատարելու անհրաժեշտության՝ անհատի աճող ըմբռնումով։

Հասարակական զարգացման արդի փուլը, որին բնորոշ է զարգացման տեմպերի արագացումը բոլոր մարզերում, մարդուն ներկայացնում է նոր, առավել բարդ պահանջներ։ Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու անհրաժեշտության պայմաններում շեշտակիորեն աճել է պահանջարկն անհատի այնպիսի հատկանիշների նկատմամբ, ինչպիսիք են գիտակցականության և պատասխանատվության բարձր մակարդակը, բարձր որակավորումը, աշխատանքի հանձնարարված տեղամասը, նոր տեխնիկան արագ յուրացնելու ունակությունը, ինքնուրույն և օպերատիվ որոշումներ ընդունելու կարողությունը, կարգապահությունը։ Թե՛ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, թե՛ կառավարման համակարգի կատարելագործումն անհնարին են առանց յուրաքանչյուր մարդու աշխատանքային ու հասարակական գործունեության ակտիվացման։ Ոչ թե նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի կիրառման հրաշագործ հետևանքների վրա պասսիվորեն հույս դնելն ինքնին կհանգեցնի սոցիալ-տնտեսական զարգացման արագացմանը, այլ մարդկային գործոնի դերի բարձրացումը։ Կարելի է միանգամայն որոշակի հետևություն անել. մարդը արագացման գլխավոր շարժիչն է, գլխավոր գործոնը սոցիալիստական հասարակության համակողմանի կատարելագործման՝ նրա զարգացման նոր, բեկումնային փուլում։

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և մարդկային գործոնի ակտիվացման բարդ խնդիրների լուծումը պայմանավորված է ոչ միայն համապատասխան նյութական պայմանների առկայությամբ և ոչ միայն սուբյեկտիվ գործոններով, բարի մտադրություններով ու ցանկություններով, այլև գիտությունների ողջ կոմպլեքսի զարգացման մակարդակով, այդ թվում նաև մարդու մասին հասարակական, բնական գիտությունների մակարդակով։ Բնական է, որ այդ կենսական իրավիճակը ազդում է նաև բուն գիտությունների զարգացման բնույթի վրա՝ առաջացնելով նրանց որոշակի վերակողմնորոշումը դեպի մարդկային գործոնի ուսումնասիրումը։ Աճել է մարդու պրոբլեմատիկայի խոր տեսական մշակման անհրաժեշտությունը, նրա ճանաչման տարբեր բնագիտական և հասարակական ասպեկտներով՝ հոգեբանական-բնախոսականից մինչև փիլիսոփայական-սոցիոլոգիականը։ Ներկայումս մեր գիտության մեջ արմատավորվել է մարդու ուսումնասիրմանը կոմպլեքս մոտեցում ցուցաբերելու անհրաժեշտության տեսակետը, այսինքն այնպիսի մոտեցման, որի դեպքում մարդը ուսումնասիրությունների օբյեկտ է ինչպես բնական, այնպես էլ հումանիտար գիտությունների համար։ Եվ պատահական չէ, որ ՍՍՀՄ Գ.Ա. նախագահությունը վերջերս որոշում կայացրեց կոորդինացնող խորհրդի ստեղծման վերաբերյալ, որը կոչված է միավորելու գիտելիքի զանազան մարզերի ներկայացուցիչներին՝ մարդագիտության հարցերի ողջ կոմպլեքսի, անհատի ձևավորման տեսական հիմքի խոր մշակման համար։

Տեսական հարցերի մեջ ամենից առաջ հառնում է այն հարցը, թե ինչպես



պետք է հասկանալ «մարդկային գործոն» արտահայտությունը, ինչպես սահմանել նրա էությունը։

ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում բազմիցս նշվում է, որ տնտեսական մեխանիզմի ամեն մի վերակառուցում սկսվում է գիտակցության վերակառուցումից, մտածողության և պրակտիկայի արմատացած նմանակներից հրաժարվելուց։ Այլ կերպ ասած, արագացման խնդիրների լուծումը սերտորեն կապված է մարդու մտածողության և ողջ հոգեբանության փոփոխման համար մղվող պայքարի հետ։ Աճում է մտածողության նոր՝ իր էությամբ խորապես դիալեկտիկական, ոճի մշակման և կիրառման պահանջմունքը։ Մտածողության նոր ոճում կարելի է առանձնացնել երեք տեսանկյուն։ Նախ, դա ճշմարտության լեզուն է, որը հնարավորություն է ընձեռում ճշգրիտ կերպով բացահայտելու ցավոտ խնդիրները և կոլեկտիվներին մոբիլիզացնելու դրանց լուծման համար։ Երկրորդ, պրակտիկ գործողության սկզբունքների բացահայտ ձևակերպումը։ Երրորդ, խնդիրների կոնստրուկտիվ լուծումը՝ հռչակած սկզբունքներին համապատասխան (օրինակ, հակասության սկզբունքը որպես զարգացման շարժիչ ուժ ընդունելը)։ Կարևոր է նաև, որ մարդու (և ամենից առաջ ղեկավար կադրերի) հոգում և գիտակցության մեջ անսխալականության կոմպլեքս չստեղծվի։

Բայց կարելի՞ է արդյոք այդ կապակցությամբ պնդել (ինչպես դա տեղի ունի որոշ հրապարակումներում), որ մարդկային գործոնը սոցիալական խմբերին ու յուրաքանչյուր անհատի հատուկ սոցիալ-հոգեբանական որակների միագումար է։ Այլ խոսքով, որ մարդկային գործոնն առավելապես հոգեբանական բնույթ է կրում։ Հոգեբանական վերակառուցումը, անշուշտ, մարդկային գործոնի ակտիվացման կարևոր տեսանկյուն է, հատկապես վերակառուցման սկզբնական շրջանում։ Սակայն, թվում է, որ այդ հասկացության առավել ճշգրիտ սահմանումը կլիներ գործունեության կատեգորիայի միջոցով։ Մարդկային գործոնը մարդու՝ որպես արտադրական, քաղաքական, կառավարչական, մշակութային, բարոյական, սոցիալ-հոգեբանական, միջանձնային և այլ հարաբերությունների համակարգում գործունեության սուբյեկտի դերն է։ Մարդկային գործոնը ձևավորվում, դաստիարակվում և դրսևորվում է սոցիալիստական հասարակության և իրեն իսկ՝ մարդու հետագա կատարելագործմանն ուղղված մարդկային գործունեության տարբեր տեսակներում։ Սրանից հետևում է, որ «մարդկային գործոն» հասկացությունն ամենևին էլ չի հանգում «արտադրության գործոն», «աշխատանքային գործոն», «աշխատանքային ռեսուրս» և այլ հասկացություններին, թեպետև ներառում է դրանք։

Բացահայտելով սոցիալիստական հասարակությունում գիտակցության և գործունեության հարաբերակցության հարցը, Մ. Ս. Գորբաչովը կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ նշեց. «Միամտություն կլիներ պատկերացնել, թե իբր տնտեսատիրոջ զգացում կարելի է դաստիարակել խոսքերով։ Սեփականության նկատմամբ վերաբերմունքը ձևավորվում է նախ և առաջ այն ռեալ պայմաններով, որոնցում գտնվում է մարդը՝ արտադրության կազմակերպման, աշխատանքի արդյունքների բաշխման և օգտագործման վրա նրա ազդեցության հնարավորություններով» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը..., «Հայաստան» հրատ., 1986, էջ 65)։ Ուստի և կուսակցությունն առաջադրում է ոչ միայն հասնել այն բանին, «որ յուրաքանչյուր մարդ ըմբռնի ներկա պահի սրությունը, նրա բեկումնային բնույթը», այլև «արթնացնել մասսաների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, նրանց եռանդն ու նախաձեռնությունը» (Նույն տեղը, էջ 144)։

Այստեղ շեշտվում է ստեղծագործական գործունեության ինտենսիվացման խնդիրների հետ հոգեբանության վերակառուցման խնդիրների սերտ փոխկապվածությունը, խոսքի և գործի՝ որպես մարդկային գործոնի ակտիվացման գլխավոր լծակների, միասնության ապահովման, գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության արդյունավետության մեծացման անհրաժեշտությունը։

Արդյունավետ դաստիարակչական աշխատանք տանելու համար անհրաժեշտ է հենվել անհատի սոցիալական հատկանիշների, ինչպես նաև նրա սոցիալական գործունեության կոնկրետ ոլորտների, այդ հատկանիշները ձևավորող մակրո և միկրոմիջավայրի կառուցվածքի հավաստի, գիտական իմացության վրա։ Արդի գիտական հայացքներին համաձայն, անհատի էությունը՝ դիտարկված նրա ամենագլխավոր դրսևորումներում, իրենից ներկայացնում է գիտակցության, գործունեության և գնահատման վերաբերմունքի մի դիալեկտիկական միասնություն։ Չկա «զուտ» գիտակցություն, քանզի անհատի գիտակցությունն արտահայտվում է նրա գործունեությունում և երևույթների նկատմամբ իր վերաբերմունքի որոշման մեջ (այսինքն՝ դրանց գնահատման մեջ)։ Իր հերթին, անհատի գործունեությունը միշտ գիտակցված է և ներառնում է ոչ միայն բուն արարքը, այլև գնահատման վերաբերմունքը։ Վերաբերմունքը նույնպես և՛ գործունեության, և՛ գիտակցության բաղադրատարրն է։ Ուստի և օրինաչափ չէ անհատի գիտակցության ուսումնասիրումն անջատել նրա գործունեությունից (ինչպես դա երբեմն տեղի է ունեցել մեր որոշ աշխատություններում) և դրանք հակադրել միմյանց որպես անհատի ճանաչման գործում ինչ-որ երկու մեկուսացած մեթոդաբանական մոտեցումներ։

Անհատին որպես գիտակցության, գործունեության և գնահատման վերաբերմունքի ամբողջական միասնություն դիտարկելու նշված սկզբունքը կարևոր մեթոդաբանական նշանակություն ունի. այն անհատի դաստիարակման գործում կողմնորոշում է կոմպլեքս մոտեցման, ցույց է տալիս, որ անհատը բնութագրվում է ոչ միայն գիտելիքներով և ոչ միայն նրանով, ինչ անում է, այլ նաև նրանով, թե ինչպես է դա անում։ Սրանից հետևում է գործնական հետևություն՝ անհատի մոտ ձևավորել գիտելիքների, ակտիվ գործողությունների և շրջապատի կյանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի մի համաձուլվածք։ Այդ խնդիրը հրատապ նշանակություն է ձեռք բերում նաև այն պատճառով, որ դեռևս հանդիպում են մարդիկ, որոնք թեպետև գիտեն սոցիալիստական հասարակության սկզբունքներն ու կոմունիստական բարոյականության նորմերը, սակայն միշտ չէ, որ դրանց հետևում են գործնականում։

Յուրաքանչյուր անհատի էությունն անմիջականորեն արտահայտվում է նրա սոցիալական արժանիքներում, այսինքն՝ նրա հայացքներում, համոզմունքներում, ընդունակություններում, պահանջմունքներում, շահագրգռություններում, բարոյական հատկանիշներում և այլն։ Դրանք ձևավորվում են անհատի վրա արտաքին ազդեցության և նրա ներաշխարհի բարդ փոխգործողության հետևանքով։ Ընդսմին, կարևոր է շեշտել, որ անհատի ներքին բովանդակությունը ոչ թե նրա գիտակցության մեջ բազմապիսի արտաքին ներգործությունները մեքենայաբար ներդնելու արդյունք է, այլ իր իսկ անհատի ներքին աշխատանքի հանրագումար, որի ընթացքում արտաքինը, անցնելով անհատի սուբյեկտիվության միջով, վերամշակվում և յուրացվում է նրա կողմից, այսինքն՝ ասես «ներքնացվում է»։ Այս հանգամանքը ոչ միշտ է հաշվի առնվում մեր ամենօրյա դաստիարակչական աշխատանքում։ Ուստի անհրաժեշտ է այսուհետ ևս հաղթահարել որոշ «դաստիարակների» մոտ նկատվող այն թերագնահատումը, որ նրանք ցուցաբերում են սուբյեկտիվ գործոնի դերի, դաստիարակվողի անհատականության նկատմամբ, գռեհկացված պատկերացումներն այն մասին, որ սոցիալական միջավայրի ներգործությունն ինքնին ձևավորում է դրական հատկանիշներ, ծնում նոր տիպի անհատ։ Այս կապակցությամբ հարկ է նկատել, որ դաստիարակության կարիք ունեն ոչ միայն դաստիարակվողները, այլև շատ դաստիարակներ։

Անհատի սոցիալական հատկանիշները դրսևորվում են նրա գործողություններում, վարքագծում, այլ մարդկանց նկատմամբ նրա վարմունքում։ Այդ արտաքո դրսևորվող վարմունքով էլ հայտնի չափով կարելի է դատել մարդու ներաշխարհի, նրա հոգևոր ու բարոյական հատկանիշների (ինչպես դրական, այնպես էլ բացասական) մասին։ Դրանով իսկ ստեղծվում է ոչ միայն անհատի սոցիալական հատկանիշները օբյեկտիվորեն ճանաչելու, այլև



դրանց վրա ձևավորվող ազդեցություն գործելու հնարավորություն, մի ազդեցություն, որի նպատակն է ամրապնդել դրական արժեքները և պայքարել բացասական երևույթների դեմ։

Կենսագործունեության ո՞ր ոլորտներում են ձևավորվում սոցիալիստական տիպի անհատի սոցիալական հատկանիշները։ Վերջիններիս ձևավորման վճռական գործոնը հասարակական աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքն է։ Դրա հետ մեկտեղ անհատի զարգացման համակողմանիությունն ու ամբողջականությունը չեն կարող ձեռք բերվել միայն արտադրական-մասնագիտական աշխատանքի ոլորտում, որտեղ նույնիսկ ստեղծագործական աշխատողը, համենայն դեպս, որոշակիորեն սահմանափակված է իր մասնագիտացմամբ։ Այդ մասին գրել է դեռևս Կ. Մարքսը։ Մասնագիտացման նեղ շրջանակները հաղթահարել մարդ կարող է ամենից առաջ հասարակական գործունեության ոլորտում, ինչպես նաև կենցաղում, այսինքն՝ մասնակցելով զանազան հասարակական կազմակերպություններում, հանձնաժողովներում ու միջոցառումներում, սոցիալական կառավարման գործում, գիտական, տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործությունում, սպորտով, տուրիզմով զբաղվելիս և այլն։ Այդպիսով, անհատի սոցիալական հատկանիշների կառուցվածքը ձևավորվում է ինչպես արտադրական, այնպես էլ արտաարտադրական մարզերում, այլ կերպ ասած՝ ինչպես արտադրական-մասնագիտական աշխատանքի ոլորտում, այնպես էլ հասարակական գործունեության, ընտանիքի ու կենցաղի ոլորտներում։ Գործունեության տարբեր բնագավառներում անհատի կատարած ֆունկցիաները փոխկապակցված ու փոխպայմանավորված են։ Դրանց իրականացման ընթացքում տեղի է ունենում սոցիալիստական անհատի ինքնահաստատումը։

Սակայն ո՛չ աշխատանքն ինքնին (աշխատանքային ժամերին), ո՛չ զբաղմունքները հանգստի ժամերին ինքնաբերաբար չեն հանգեցնում նոր մարդու ձևավորմանը, եթե նրա գործունեության հիմքում ընկած չեն առաջադեմ բարոյականության սկզբունքները, եթե նա չի ոգևորված հասարակականորեն նշանակալի գաղափարներով։

Կարևոր նշանակություն ունի մարդու ակտիվության ակունքների, դրա հետ սոցիալական միջավայրի հարաբերակցության, սոցիալական կողմնորոշման բնույթի վերաբերյալ հարցը։ Հասարակական կեցությունը մարդկանց պրակտիկ կենսագործունեությունն է, բուն հասարակական կեցությունում սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների փոխգործողությունը։ Այլ կերպ ասած, սոցիալական իրականությունը կրում է սուբյեկտ-օբյեկտային բնույթ։ Մարդու սոցիալական վարքագծի օբյեկտիվ կողմնորոշումը ներառում է նաև հատուկ տեսակի կողմնորոշում, որը պայմանավորում է մարդու՝ հենց որպես սուբյեկտի, բուն գործունեության ծավալումը։ Մարդը որպես սուբյեկտ ոչ թե հասարակական կեցության երկրորդային վերարտադրումն է, այլ դրա այնպիսի անհրաժեշտությունը, առանց որի անհնարին է սուբյեկտի բուն հասարակական կեցությունը։ Հարցի նման ըմբռնումը օգնում է հաղթահարելու գրականությունում երբեմն դրսևորվող՝ մարդկանց վարքագծի սոցիալական կողմնորոշումը «պարագաների» պասսիվ արտացոլման և պահանջների կատարման ոգով մեկնաբանելու միտումը։ Նման կարգի մեխանիկական միտումները կարող են բացասական դրոշմ դնել դաստիարակության և կրթության պրոցեսի, սոցիալական ու արտադրական պրոցեսների կառավարման մեթոդների, մարդկային գործոնի ակտիվացման ուղիների ըմբռնման վրա։

Դիտարկելով մարդու ստեղծագործական կարողությունների ակտիվացման պայմանների ու մեթոդների վերաբերյալ հարցը, հարկ է նշել, որ ոչ մի արտաքին պայման, ինչքան էլ այն նպաստավոր լինի մարդու համար, չի կարող ինքնին հանգեցնել նրա ընդունակությունների իրականացմանը։ Դրա համար պետք են նաև անձնական ձգտում, կամք, ներքին անկաշկանդվածություն, տվյալ անհատի հոգևոր ազատությունը։ Մարդկանց որոշ մասի հոգևոր ազատության վրա երբեմն բացասական ազդեցություն են գործում նրանց գիտակցությունը ճնշող կրոնական կամ ուղղակի քաղքենիական պատկերացում-

են։ Սոցիալիզմի պայմաններում հասարակության կոլեկտիվիզմի, համագործակցության, համախմբվածության զարգացումն ամենևին չի նշանակում առանձին անհատների համահարթում։ Ընդհակառակը, սոցիալիզմը խիստ շահագրգռված է անհատականությունների բազմազանության, նրանց ընդունակությունների ու տաղանդի զարգացման հարցում։

Կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ շեշտվում է. «Սոցիալիզմը զարգացնում է մարդկանց շահերի, պահանջմունքների, ընդունակությունների ամբողջ բազմազանությունը, ակտիվորեն պաշտպանում այդ բազմազանությունն արտահայտող հասարակական կազմակերպությունների ինքնագործունեությունը։ Ավելին, սոցիալիզմն այդպիսի բազմազանության կարիք ունի, նրանում տեսնելով մարդկանց ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության հետագա բարձրացման, մտքերի ու տաղանդների մրցության անհրաժեշտ պայման, առանց որի առհասարակ աներևակայելի է սոցիալիստական ապրելակերպը, աներևակայելի է առաջընթացը» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը..., էջ 83—84)։ Այս նույն միտքն արտահայտվեց նաև ԳՍՄԿ XI համագումարում՝ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ և մյուս եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համագումարներում։

Բոլոր կոլեկտիվների, յուրաքանչյուր մարդու ստեղծագործական ակտիվության զարգացման համար անհրաժեշտ է սերտորեն կապակցել գաղափարադաստիարակչական աշխատանքը սոցիալ-տնտեսական կարգի միջոցների ձեռնարկման, անհատի դրական հատկանիշների ձևավորման նյութական ու հոգևոր հիմքերի ամրապնդման, սոցիալիստական հասարակության կատարելագործման խնդիրների ողջ կոմպլեքսի լուծման հետ։ Դրա համար էլ ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում շեշտվում է, որ մարդկային գործոնը կարելի է ակտիվացնել միայն լավ կշռադատված տնտեսական ստրատեգիայի, ուժեղ սոցիալական քաղաքականության և նպատակամետ գաղափարադաստիարակչական աշխատանքի միջոցով։

---

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ

**Գ. ՂԱՐԻԲՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր

ՍՄԿԿ XXVII համագումարը, վերլուծելով անցած քառորդ դարում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքները, նշեց, որ Սովետական Միությունը հասել է տպավորիչ հաջողությունների։ Յոթ անգամ աճել են ժողովրդական տնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը, կառուցվել են հազարավոր ձեռնարկություններ, ստեղծվել են արտադրության բազմաթիվ նոր ճյուղեր, ազգային եկամուտն աճել է գրեթե չորս անգամ, արդյունաբերական արտադրությունը՝ հինգ անգամ, գյուղատնտեսականը՝ 1,7 անգամ։ Բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացել են 2,6, իսկ սպառման հանրային ֆոնդերը՝ հինգ անգամ։ Կառուցվել է 54 մլն բնակարան, իրականացվել է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության, էապես բարելավվել է բնակչության բժշկական սպասարկումը և այլն։

Էկոնոմիկայի զարգացման տեմպերի հարցը մեր երկրի համար միշտ էլ եղել է կարևոր և առաջնային։ Հետամնացությունից դեպի առաջադիմություն տանող դժվարին ճանապարհը մեր երկիրն անցավ միայն բարձր տեմպերի շնորհիվ։ Այսպես, եթե 1951—1984 թվականներին ազգային եկամտի աճի միջին տարեկան տեմպը ՍՍՀՄ-ում կազմել է 7 տոկոս, ապա ԱՄՆ-ում՝ ընդամենը 3,4։ Հենց դրա շնորհիվ էր, որ այդ ժամանակահատվածում տնտեսական զարգացման հիմնական ցուցանիշներով ՍՍՀՄ-ը ընդհուպ մոտեցավ կապիտալիստական ամենահարուստ ու ամենազարգացած երկրի մակարդակին։

ՍՍՀՄ-ը տնտեսական զարգացման տեսակետից դարձավ աշխարհի երկրորդ երկիրը, իսկ արտադրության մի շարք ուղղություններով գրավեց առաջատար դիրքեր։

Սակայն 70-ական թվականներից սկսած մեր երկրի էկոնոմիկայում ի հայտ եկան անբարենպաստ միտումներ։ Դա ամենից առաջ վերաբերում է ժողովրդական տնտեսության զարգացման տեմպերին։ 1982 թ. արդյունաբերական արտադրանքի հավելաճը մեկուկես անգամ ավելի պակաս էր, քան միջին հաշվով տասներորդ հնգամյակի տարիներին։ Այդ բոլորի հետևանքով չկատարվեցին 9—11-րդ հնգամյակների առանց այն էլ ցածր առաջադրանքները։ Միայն 11-րդ հնգամյակի պլանները չկատարելու պատճառով երկիրը չստացավ միլիոնավոր տոննա պատրաստի գլանվածք, ածուխ, նավթ, մեծ քանակի սպառման ապրանքներ և այլն։ Գյուղատնտեսության մեջ կատարված հսկայական կապիտալ ներդրումներից չստացվեց անհրաժեշտ փոխհատուցում։

Չկատարվեցին նաև բնակչության կենսամակարդակի բարձրացման առաջադրանքները, ուշադրությունից դուրս էր մնացել սոցիալական մի շարք պրոբլեմների լուծումը, որի հետևանքով թուլացավ արտադրողների տնտեսական շահագրգռվածությունը իրենց աշխատանքի վերջնական արդյունքի համար։

Համագումարը բացահայտեց նաև անցած տասնհինգ տարիներին մեր երկրի տնտեսական կյանքի առաջընթացը խոչընդոտող հիմնական պատճառները։ Չնայած նախորդ տարիներին ընդունվել էին բազմաթիվ որոշումներ, սակայն իրականում ճիշտ չգնահատվեցին և չարժեքավորվեցին երկրի ժողո-

վորդական տնտեսության, նրա ռեալ տնտեսական իրավիճակի մեջ կատարված այն էական փոփոխությունները, որոնք կապված էին էկոնոմիկայի հետագա աճի էքստենսիվ հնարավորությունների սպառման և այն զարգացման ինտենսիվ մեթոդներով փոխարինելու, գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու և նրա նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ մասսայականորեն ներդնելու անհրաժեշտության հետ։ Այդ պատճառով էկոնոմիկան ըստ էության չփոխադրվեց զարգացման ինտենսիվ ռելսերի վրա։ Գիտատեխնիկական առաջադիմության նվաճումներն ակտիվորեն չէին ներդրվում ժողովրդական տնտեսության, մասնավորապես գյուղատնտեսական արտադրության մեջ, որի հետևանքով շարունակվեց մեծ ծավալ կազմել ձեռքի ցածր արտադրողական աշխատանքը։ Տնտեսական մեխանիզմը կատարելագործելու վերաբերյալ նախորդ տարիներին ընդունվել էին մի շարք որոշումներ, սակայն տնտեսավարման գործող մեթոդներն իրենց սպառել էին և ամբողջական համակարգ չէին կազմում, դրանք թույլ էին խթանում արտադրության զարգացումը։ Վերջապես, ընկել էր աշխատանքային և պլանային կարգապահությունը, որը դրսևորվում էր պլանները շարունակ «ճշտելու», «վերանայելու», ռեալ հնարավորություններից ցածր պլանային առաջադրանքներ վերցնելու, դրանք գերակատարելու և մեծ գումարների հասնող լրացուցիչ պարգևներ ստանալու միտումների մեջ։

ՍՄԿԿ XXVII համագումարն ընդունեց այդ բացասական միտումները վճռականորեն հաղթահարելու և երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական կուրս, որը կոչված է միաժամանակ լուծելու հետևյալ անհետաձգելի խնդիրները.

ա) արագացնել էկոնոմիկայի զարգացման տեմպերը, ավելի ամրապնդել երկրի տնտեսական հզորությունը, անընդհատ մեծացնել նրա սոցիալ-տնտեսական ու գիտական պոտենցիալը,

բ) այդ հիմքի վրա որակական նոր մակարդակի բարձրացնել սովետական ժողովրդի կենսամակարդակը՝ լուծելով նաև սոցիալական պրոբլեմները,

գ) մշտապես հուսալի մակարդակի վրա պահել երկրի պաշտպանունակությունը,

դ) ապահովել մեր երկրի կատարյալ տնտեսական անկախությունը և նպաստավոր դարձնել սոցիալիզմի դիրքերը կապիտալիստական աշխարհի հետ առկա տնտեսական մրցակցության մեջ։

Խնդիր է դրվում մինչև 2000 թվականն ընկած ժամանակահատվածում երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման միջոցով սովետական հասարակությունը հասցնել որակական նոր վիճակի՝ խորապես վերափոխելով նրա արտադրական ուժերը և կատարելագործելով արտադրական հարաբերությունները։ Ընդ որում, ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման հիմնական ուղղությունները և նրա ստրատեգիական ամբողջական կուրսը մշակելիս առաջնությունը տրվում է սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման սոցիալական պրոբլեմների լուծմանը։ Ի տարբերություն նախորդ ժամանակաշրջանների՝ բնակչության կենսամակարդակի բարձրացման խնդիրների լուծումը մնացորդային մոտեցումից վեր է ածվում ելակետայինի, կողմնորոշողի։ ՍՄԿԿ XXVII համագումարը պահանջեց, որպեսզի երկրի պլանավորող և կառավարող մարմինները վճռական շրջադարձ կատարեն դեպի բնակչության կենսամակարդակի պրոբլեմների լուծումը, սոցիալական պահանջների բավարարումը՝ դա դիտելով ոչ միայն որպես սոցիալիստական արտադրության զարգացման բարձրագույն նպատակի օբյեկտիվ պահանջ, այլ նաև հասարակական վերարտադրության գործում մարդկային գործոնի դերի անընդհատ բարձրացման կարևոր պայման։ ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց առաջիկա տասնհինգ տարիներին սովետական ժողովրդի կենսամակարդակը բարձրացնել որակական նոր աստիճանի։

Հայտնի է, որ կենսամակարդակն արտահայտող հիմնական ցուցանիշներից են բնակչության կողմից նյութական և հոգևոր բարիքների ու բազմապիսի ծառայությունների սպառման մակարդակն ու կառուցվածքը։ Վերջին



հաշվով, անձնական սպառման մեջ են արտացոլվում բնակչության ստացած ինչպես բոլոր եկամուտները (աշխատավարձ, աշխատանքի դիմաց տրվող բազմաթիվ այլ վճարումներ, սպառման հասարակական ֆոնդերից կատարվող հատկացումներ, եկամուտներ անձնական օժանդակ տնտեսություններից և այլն), այնպես էլ սպառման ապրանքների գներն ու ծառայությունների արժեքը։ ՍՄԿԿ XXVII համագումարը պատմական խնդիր առաջադրեց՝ մինչև 2000 թ. հասնելու սովետական մարդկանց սպառման գիտականորեն հիմնավորված ռացիոնալ մակարդակին և կառուցվածքին։ Դա իրոք որակական նոր մակարդակ է, որպիսի խնդիր ոչ մի երկիր, ոչ մի այլ հասարակարգ իր առջև չի դրել։ Դրանում մի կողմից բացահայտորեն և ակնառու կերպով դրսևորվում է արտադրության կոմունիստական եղանակի հումանիզմը, մյուս կողմից՝ այդ հասարակարգի սոցիալ-տնտեսական աճած մեծ հնարավորությունները։ Եվ իրոք։ Մսի սպառումը բնակչության մեկ շնչի հաշվով 1950 թ.-ի 26 կգ-ից 1984 թ. հասավ 60 կգ-ի, համապատասխանաբար, կաթնամթերքինը՝ 172-ից 317 կգ-ի, ձվինը՝ 60 հատից՝ 256-ի, իսկ հացամթերքինը՝ ընդհակառակը, 172 կգ-ից՝ 135 կգ-ի և այլն։ Ըստ գիտականորեն հիմնավորված մակարդակի, անհրաժեշտ է մսի սպառումը հասցնել 78 կգ-ի, կաթնամթերքինը՝ 405 կգ-ի, ձվինը՝ 292 հատի, մրգերինը և հատապտղինը՝ 130 կգ-ի, իսկ հացինը՝ իջեցնել 115 կգ։ Սպառման այդպիսի մակարդակը հնարավոր է էկոնոմիկայի զարգացումն արագացնելու, ազգային եկամտի աճի տեմպերը բարձրացնելու միջոցով։ Նախատեսվում է առաջիկա 15 տարիներին բնակչության ռեալ եկամուտներն ավելացնել 1,6—1,8 անգամ, այսինքն՝ դրանց բացարձակ հավելումը կլինի այնքան, որքան վերջին քառասուն տարիներին։ Սակայն բնակչության եկամուտների աճը ինքնին վերցրած չի կարող լուծել առաջադրվող որակական այդ խնդիրը։ Ճիշտ է, անցած ժամանակահատվածում էապես ավելացել է սպառման ապրանքների արտադրությունը, դրանց քանակը։ Սակայն այդ նույնը չենք կարող ասել որակի և տեսականու մասին, որոնց անբավարար վիճակի պատճառով բնակչության գնողունակ պահանջարկը լրիվ չի բավարարվում, և դա առաջ է բերում ճեղքվածք գնողունակ պահանջարկի և շուկայական ապրանքային ծածկույթի միջև։ Դա հանգեցնում է նրան, որ բնակչության մոտ ավելանում է չիրացված դրամի չափը, որի մի մասը ավանդների ձևով կուտակվում է խնայդրամարկղներում։ Ելնելով դրանից՝ ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր դրեց ժողովրդական սպառման ապրանքների ու օգտակար ծառայությունների որակը և կառուցվածքը հասցնել այնպիսի մակարդակի, որ հաղթահարվի բնակչության գնողունակ պոտենցիալ հնարավորությունների և շուկայական ապրանքային ծածկույթի միջև առաջացած ճեղքվածքն ու դրանց միջև հաստատվի մշտական հաշվեկշռվածություն։

Սովետական ժողովրդի կենսամակարդակը որակական նոր աստիճանի բարձրացնելու կարևոր պրոբլեմներից է նաև բնակչության բնակարանային պայմանների բարելավումը։ Համագումարը խնդիր դրեց հասնելու նրան, որ սովետական յուրաքանչյուր ընտանիք ապահովվի առանձին բնակարանով կամ էլ անհատական տնով։ Հասկանալի է, որ սոցիալական այդ վիթխարածավալ պրոբլեմի լուծումը կպահանջի հսկայական կապիտալ ներդրումներ՝ ինչպես պետական կենտրոնացված, այնպես էլ կոոպերատիվ ու անհատական կարգով։

Ժողովրդի կենսամակարդակը որակական նոր աստիճանի բարձրացնելու սոցիալական խնդիրներից մեկն էլ ամբողջ բնակչության համատարած դիսպանսերացման ապահովումն է, դրանով իսկ երաշխավորելով մարդկանց առողջությունը և աշխատանքային ակտիվ կենսագործունեությունը։ Ինչ վերաբերում է ժողովրդական կրթության ոլորտին՝ ապա նախատեսվում է երկրում ստեղծել կրթության անընդհատ միասնական համակարգ։ Դա բարձր որակավորմամբ աշխատուժի, համակողմանի ու ներդաշնակ զարգացած անհատի վերարտադրության կարևոր պայմաններից մեկն է, որը նախատեսվում է լուծել կոմպլեքսային և արմատական ձևով։

Վերջապես, որակական նոր մակարդակով ու մասշտաբներով են լուծվելու մարդու կենսագործունեության ամենավճռական ոլորտի՝ աշխատանքի, սոցիալական պրոբլեմները։ Խնդիր է դրվում մինչև 2000 թ. երկու անգամ կրճատել ծանր, միօրինակ ձեռքի աշխատանքը և արտադրական ոլորտում նրա բաժինը հասցնել նվազագույնի՝ 15—20 տոկոսի։ Դրա շնորհիվ նախկինում ձեռքի աշխատանքով զբաղված շուրջ 20 մլն մարդ կընդգրկվի բովանդակալից, որակյալ և բարձրարտադրողական աշխատանքային գործունեության մեջ։

Բնակչության կենսամակարդակը որակապես նոր աստիճանի բարձրացնելու և նշված սոցիալական պրոբլեմները լուծելու համար ՍՄԿԿ XXVII համագումարը նախատեսել է առաջիկա տասնհինգամյա հեռանկարում կրկնապատկել երկրի ազգային եկամուտը և արդյունաբերական արտադրանքը։ Այսինքն, երկրում կստեղծվի տնտեսական այնպիսի պոտենցիալ, որը հավասարազոր կլինի սովետական իշխանության անցած բոլոր տարիներին ստեղծվածին։

Տնտեսական այդ հզոր պոտենցիալին հասնելու հիմնական ուղին ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումն է, արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացումը։ Նախատեսվում է մինչև 2000 թ. ժողովրդական տնտեսության մեջ, ամբողջությամբ վերցրած, հասարակական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2,3—2,5 անգամ։ Ազգային եկամտի ամբողջ աճն ապահովել բացառապես աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։ Դրա շնորհիվ 22 մլն լրացուցիչ աշխատողների փոխարեն աշխատանքային ռեսուրսների աճը կկազմի ընդամենը 3,2 մլն մարդ, որն էլ համարյա ամբողջովին կուղղվի ծառայությունների ոլորտի զարգացմանը, որը բնակչության կենսամակարդակը բարձրացնելու վճռական պայմաններից է։

Հասարակական արտադրության ինտենսիվ զարգացման կարևորագույն լծակներն են գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, բոլոր տեսակի ռեսուրսների ըստ ամենայնի խնայողությունը։ Գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում որոշակի դեր ունի ինվեստիցիոն դինամիկ քաղաքականությունը։ Տասներկուերորդ հնգամյակում զգալիորեն կաճեն կապիտալ ներդրումները և դրանց ընդհանուր ծավալը կկազմի շուրջ մեկ տրիլիոն ռուբլի։ Այդ հսկայական միջոցների հիմնական մասը կուղղվի մեքենաշինության, վառելիքաէներգետիկ և ագրոարդյունաբերական կոմպլեքսների զարգացմանը։ Ինվեստիցիոն նոր քաղաքականության բնորոշ գիծն այն է, որ շեշտը դրվելու է գործող ձեռնարկությունների տեխնիկական վերակառուցման ֆինանսավորման վրա։

Ինչ վերաբերում է ռեսուրսների բոլոր տեսակների ըստ ամենայնի խնայողությանը, ապա խնդիր է դրվում առաջիկա հեռանկարում վառելիքի, էներգիայի, հումքի, մետաղի և մյուս նյութերի լրացուցիչ նոր պահանջմունքների 75—80 տոկոսը բավարարել դրանց խնայողության հաշվին։ Մեր երկիրն իր զարգացման պատմության մեջ ռեսուրսների խնայողության այդպիսի օրինակ չգիտի։ Դրան պետք է ավելացնել այն, որ առաջիկա հեռանկարում նախատեսվում է մեծ չափերով օգտագործել նաև, այսպես ասած, երկրորդային ռեսուրսները։

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման, հասարակական արտադրության ինտենսիվացման առանցքային օղակ է հասարակական աշխատանքի և արտադրված արդյունքի որակական ցուցանիշների ըստ ամենայնի բարձրացումը։ Կուսակցությունը խնդիր է դնում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արմատական շրջադարձ կատարել դեպի արտադրանքի որակական, սպառողական հատկանիշների այնպիսի բարձրացումը, որն իր մեջ արտացոլի գիտատեխնիկական առաջադիմության վերջին նվաճումները, համապատասխանի ամենաբարձր տեխնիկատնտեսական ու սպառողական պահանջներին և միջազգային շուկայում ունենա բարձր մրցունակություն։ ՍՄԿԿ XXVII համագումարն այդ կապակցությամբ ընդգծեց, որ աշխատանքի և ար-



տադրանքի որակի պրոբլեմի լուծումը և՛ տնտեսական, և՛ քաղաքական, և՛ միջազգային մասշտաբի խնդիր է։ Ավելին, դրան ավելացնենք և այն, որ որակի պրոբլեմի լուծումը որոշակի իմաստով նաև քանակի խնդրի լուծում է։

Սոցիալիստական արտադրության ինտենսիվացման և աշխատանքի ու արտադրանքի որակի ըստ ամենայնի բարձրացման կարևորագույն պայմաններից է որոշակի կառուցվածքային քաղաքականության միջոցով ժողովրդատնտեսական կոմպլեքսների հետագա ստեղծումն ու զարգացումը։ Դա կհանդեցնի հասարակական վերարտադրության համակարգում միջանկյալ արդյունքի նկատմամբ վերջնական արդյունքի առաջանցիկ աճին, որն արդյունաբերության մեջ արտացոլվում է վերամշակող ճյուղերի զարգացման տեմպերի կրկնակի գերազանցումով վառելիքահումքային ճյուղերի նկատմամբ։ Բացի դրանից, կարագացվի գիտատեխնիկական առաջադիմությանն ամենից շատ նպաստող ճյուղերի զարգացումը։ Հասարակական արտադրության բոլոր բնագավառները ավելի շատ կնպատակամղվեն ժողովրդական սպառման ապրանքների և ծառայությունների ոլորտների ըստ ամենայնի արագ զարգացմանը։ Նախատեսվում է արտադրական օբյեկտների շինարարությանը զուգահեռ ստեղծել դրանց համապատասխանող արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածք։

Գիտատեխնիկական առաջադիմության, ռեսուրսների ըստ ամենայնի խնայողության և բնակչության կենսամակարդակի նոր՝ մասշտաբային սոցիալական պրոբլեմների լուծմամբ պայմանավորված կառուցվածքային համապատասխան տեղաշարժեր են կատարվելու նաև ժողովրդական տնտեսության ճյուղերի այսպես ասած յուրաքանչյուր միկրոկոմպլեքսում (էներգետիկա, մեքենաշինություն, ագրոարդյունաբերություն և այլն)։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը պայմանավորող գործոնների մեջ վճռողը, սակայն, մնում է մարդը, մարդկային գործոնը։ Դեռևս Կ. Մարքսը աշխատանքի արտադրողական ուժի վրա ազդող չորս հիմնական գործոններից առաջինը թվարկել է մարդկային գործոնը։ ՍՄԿԿ XXVII համագումարը ոչ միայն առանձնահատուկ ուժով ընդգծեց մարդկային գործոնի ակտիվ, վճռող դերը, այլև մշակեց տնտեսավարման մեխանիզմը, էկոնոմիկայի կառավարման ողջ համակարգը, հետևաբար և՝ արտադրողական հարաբերությունները էապես կատարելագործելու այն հիմնական ուղղությունները, որոնք կոչված են ապահովելու մարդկային գործոնի ակտիվ ու արդյունավետ կենսագործունեությունը։ Ընդ որում ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ այդ շատ բարդ խնդիրը լուծելիս «անհրաժեշտ է արմատական ռեֆորմ»։ Այստեղ խոսքը վերաբերում է ոչ թե առանձին օղակների, մասնակի փոփոխությունների, այլ ժողովրդական տնտեսության միասնական կոմպլեքսում տնտեսավարման ու խթանման բոլոր մակարդակներում կատարվելիք տեղաշարժերին, սոցիալիստական արտադրական հարաբերությունների ողջ համակարգի հետագա կատարելագործմանը։ Նախատեսվում է էկոնոմիկայի կենտրոնացված ղեկավարման ուժեղացումը զուգակցել միավորումների ու ձեռնարկությունների ինքնուրույնության սահմանների ընդարձակման հետ՝ վերջնական արդյունքների մեջ նրանց պատասխանատվության և շահագրգռվածության բարձրացմամբ։ Ռեալ տնտհաշվարկ հաստատելու համար խնդիր է դրվում վճռականորեն ընդլայնել ձեռնարկությունների ինքնուրույնությունը, ամեն ինչ փոխադրել ինքնափոխհատուցելիության և ինքնաֆինանսավորման սկզբունքների վրա՝ կոլեկտիվների և նրանց անդամների եկամուտների չափերը ուղղակի և անմիջական կախվածության մեջ դնելով տնտեսական գործունեության վերջնական արդյունքներից։ Այդ նպատակով խնդիր է դրվում ձեռնարկությունների արտադրության զարգացման ֆոնդը վերածել նրանց տեխնիկական զինման և վերակառուցման գլխավոր աղբյուրի։ Աշխատանքային կոլեկտիվների բնակարանային և սոցիալ-կենցաղային մյուս պայմանների բարելավումը կկատարվի հիմնականում իրենց իսկ աշխատած միջոցներով։ Ձեռնարկությունների աշխատավարձի ֆոնդի չափերը կորոշվեն թողարկված արտադրանքի իրացումից ստացվող եկամուտներով, իսկ յուրաքանչյուր աշ-

խատողի վարձատրությունը կախված կլինի նրա աշխատանքային ներդրումից։

Անհատի, կոլեկտիվի և հասարակության միջև ձևավորվում են այնպիսի հարաբերություններ, որոնք ստեղծում են անմիջական կախվածություն մարդու արտադրական գործունեության և նրա կենսամակարդակի միջև։ Դա արտադրողների մոտ ձևավորում է ձեռնարկության նկատմամբ իսկապես տիրոջ հոգեբանություն, որը շատ կարևոր է մարդկային գործոնի ստեղծագործական ակտիվությունը խթանելու համար։

Այսպիսով, մենք գործ ունենք սոցիալիստական արտադրահարաբերությունների հետագա կատարելագործման երևույթի հետ։ Արտադրահարաբերությունների համակարգում ելակետայինը սեփականատիրական հարաբերությունն է։ Այստեղ գլխավոր պրոբլեմը սոցիալիստական սեփականատիրական հարաբերությունների տնտեսական իրացման դինամիկ մեխանիզմի բացահայտելն ու այն տնտեսավարման որոշակի քաղաքականության միջոցով պլանաչափորեն իրականացնելն է։ Հայտնի է, որ երկար ժամանակ կար այն կարծիքը, թե սոցիալիստական սեփականությունը միշտ էլ պլանաչափորեն տընտեսապես իրացվում է, որ մեզ մոտ սեփականատիրական հարաբերությունները զարգանում են առանց ներքին հակասությունների և հասարակության անդամները, որպես արտադրության միջոցների հավասար սեփականատերեր, բոլոր պայմաններում շահագրգռված են հասարակական արտադրության ինտենսիվ զարգացմամբ ու նրա արդյունավետության բարձրացմամբ։ ՍՄԿԿ XXVII համագումարը նոր մոտեցում մշակեց սոցիալիստական սեփականատիրական հարաբերությունների և դրանց հետագա կատարելագործման հարցերի վերաբերյալ։ Նախ, առաջին անգամ որոշակի ձևով բացահայտվեց, որ սոցիալիզմի օրոք սեփականատիրական հարաբերությունները նույնպես զարգանում են իրենց ներքին հակասությունների գոյացման ու դրանց լուծման պայմաններում։ Այնուհետև, որը և ամենակարևորն է, ընդգծվեց, որ համաժողովրդական սեփականությունը հասարակության մասշտաբով անմիջականորեն դրսևորվել և տնտեսապես իրացվել չի կարող, և որպես հիմնական խնդիր առաջ քաշվեց սոցիալիստական սեփականության տնտեսական իրացման պրոբլեմը։ Հիմք ընդունվեց ելակետային այն մոտեցումը, որ պետականհամաժողովրդական սեփականությունը կարող է տնտեսապես իրացվել միայն ձեռնարկությունների շրջանակներում՝ ռեալ տնտհաշվարկային հարաբերությունների համակարգում և դրանք արտահայտող ու պայմանավորող տընտեսական որոշակի մեխանիզմի պլանաչափ կիրառման միջոցով։ Առանց դրա հասարակության անդամները իրենց սեփականատերեր չեն ճանաչում, նրանց մոտ չի ստեղծվում երկրի, արտադրության միջոցների, ձեռնարկությունների իսկական տիրոջ հոգեբանություն։ Դա բացատրվում է նրանով, որ համապետական մասշտաբով տնտեսապես հնարավոր չէ ստեղծել և անմիջական կապ պահպանել արտադրողի կատարած աշխատանքի, նրա աշխատանքային պայմանների, եկամուտների ու հասարակական ողջ արտադրության զարգացման միջև։

ՍՄԿԿ XXVII համագումարը ցույց տվեց, որ միայն ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և արտադրական միավորումների տնտհաշվարկային հարաբերությունների համակողմանի կատարելագործման միջոցով կարող են զարգանալ նաև ռեալ սեփականատիրոջ հարաբերություն և հոգեբանություն։ Ուստի սոցիալիստական սեփականության տնտեսական իրացումը կախված է տնտհաշվարկային հարաբերությունների լիարժեքության աստիճանից։ Հենց այդ առումով էլ մշակվեց և հաստատվեց տնտհաշվարկային հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման հիմնավորված ծրագիր։ Տնտհաշվարկային հարաբերությունների զարգացումը և հետագա կատարելագործումն ընդգրկում են բազմաբնույթ կապակցություններ ու հարաբերություններ արտահայտող մի ամբողջ համակարգ։ Տնտհաշվարկը ռեալ դարձնելու նպատակով կարևոր է փակել անտնտեսվարության բոլոր ուղիները և ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք բացառեն լավ աշխատողի հաշվին ոչ արդյունավետ աշխատողի «ապրելու» հնարավորությունը։



Անհրաժեշտ է կատարելագործել գնագոյացման գործող կարգն այն հաշվով, որ սահմանված գները մոտենան աշխատանքային ծախսումներին և համարժեքային փոխանակությամբ բացառեն ստեղծված արժեքների անհիմն վերաբաշխումը հօգուտ վատ աշխատող ձեռնարկությունների։

Տնտեսավարման նման սկզբունքներին անցնելու համար կարևոր նշանակություն ունի պլանավորման պրակտիկայում տնտեսական կայուն նորմատիվների համակարգին անցնելը։ Հնգամյակի համար անփոփոխ նորմատիվները ձեռնարկության կոլեկտիվի մոտ ստեղծում են տնտեսական խթանման արդյունավետ լծակ։

Գյուղատնտեսության մեջ տնտհաշվարկային հարաբերությունների հետագա խորացման և սոցիալիստական սեփականության իրացման հիմքը արդի պայմաններում պարենային հարկի վերաբերյալ լենինյան գաղափարի ստեղծագործական կիրառումն է։ Ընթացիկ հնգամյակում կոլտնտեսությունները և սովխոզները ունենալու են արտադրանքի գնումների կայուն պլաններ։ Առաջադրանքները կատարելուց հետո թույլատրվում է ավելացած արտադրանքը կոլտնտեսությունների և սովխոզների հայեցողությամբ վաճառել կոլտնտեսային շուկայում կամ էլ իրացնել որպես արտապլանային վաճառք։ Ընդ որում արտապլանային վաճառքը պետության կողմից խթանվում է և՛ գնման բարձր գներով, և՛ գյուղական բնակչության մոտ մեծ պահանջարկ ներկայացնող արդյունաբերական ապրանքների լրացուցիչ վաճառքով, և՛ խրախուսման այլ միջոցներով։ Հետագայում նույն սկզբունքը նախատեսվում է կիրառել նաև միութենական հանրապետությունների, երկրամասերի և մարզերի մակարդակով։ Գյուղատնտեսական արտադրության մեջ ռեալ տնտհաշվարկի անցնելու կարևոր միջոց է կապալը՝ բրիգադի, օղակի, ընտանիքի մակարդակով, պայմանագրային ժամկետով՝ նրանց հատկացնելով արտադրամիջոցներ, ներառյալ հող։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների հետագա կատարելագործման, մարդկային գործոնի ստեղծագործական ակտիվացման հաջորդ ոլորտը բաշխման հարաբերությունների զարգացումն ու սոցիալական արդարության հաստատումն է։ Նշելով սպառման հասարակական ֆոնդերը առաջիկայում ևս արագ զարգացնելու սոցիալ-տնտեսական անհրաժեշտությունը՝ ՍՄԿԿ XXVII համագումարն ընդգծեց, որ անհրաժեշտ է ավելի մեծ ասպարեզ տալ ըստ աշխատանքի բաշխման սկզբունքին։ Այդ նպատակով կարևոր է, որ աշխատանքի վարձատրությունը ուղղակի կախվածության մեջ դրվի նրա արտադրողականությունից և բացառվի ինչպես անաշխատ եկամուտներ ստանալու հնարավորությունը, այնպես էլ վարձատրության մեջ հավասարեցումը։ Սոցիալական անարդարություն է և՛ հասարակության հաշվին անաշխատ եկամուտներով հարստանալը, և՛ եկամուտների հավասարեցումը, ինչպես նաև աշխատանքային եկամուտների արհեստական սահմանափակումը։ Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց. «չի կարելի թույլ տալ, որ ստվեր ընկնի նրանց վրա, ովքեր ազնիվ աշխատանքով են լրացուցիչ վաստակ ստանում։ Ավելին, պետությունը կնպաստի բնակչության պահանջարկի բավարարմանն ու սպասարկման տարբեր ձևերի զարգացմանը»։

Երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացումը նախատեսվում է կենսագործել կոմպլեքսային ծրագրի միջոցով, որն ընդգրկում է ինչպես արտադրողական ուժերի, այնպես էլ արտադրական հարաբերությունների զարգացումը և կատարելագործումը։

---

# ԻՆՎԵՍՏԻՑԻՈՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Թ. ԹՈՐՈՍՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Այլևս չի կարելի հաշտվել շինարարության դանդաղ տեմպերի հետ, ինչի պատճառով սառեցվում են հսկայական միջոցներ, արգելակվում է գիտատեխնիկական առաջադիմությունը ժողովրդական տնտեսության մեջ»:

Սա նշանակում է, որ կապիտալ շինարարության բարելավման պրոբլեմը պահանջում է սևեռուն ուշադրություն: Կապիտալ ներդրումների օգտագործման արդյունավետության մասին ընդհանուր գծերով պատկերացում է տալիս կապիտալատարության ցուցանիշը, որը ազգային եկամտի կամ արտադրված արտադրանքի ծավալի նկատմամբ դրանց մեծության հարաբերությունն է:

Անցած հնգամյակի տարիներին հանրապետության շինարարության բնագավառում կատարվել են որոշակի դրական տեղաշարժեր: Գործարկվել են նոր կարողություններ, աշխատանքներ են կատարվել արտադրության վերակառուցման և տեխնիկական վերազինման ուղղությամբ: Հաջողություններ կան բնակարանային և դպրոցական շինարարության բնագավառում:

Հանրապետության ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար հատկացված են եղել 25 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ, քան տասներորդ հնգամյակում, որի շնորհիվ հիմնական արտադրական ֆոնդերն աճեցին 39,7 տոկոսով:

Դրա հետ մեկտեղ, կապիտալատարության գործակիցը հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ փոխվում է չափազանց անհամաչափ, առանձին ժամանակաշրջաններում այն բարձրանում է, մյուսներում՝ իջնում: Այսպես, կապիտալատարությունը բարձրացել է միայն ութերորդ հնգամյակում (1,3 տոկոսով), մյուս ժամանակաշրջաններում այն իջել է, ընդ որում՝ առանձին դեպքերում բավական շոշափելի: Օրինակ, իններորդ հնգամյակում կապիտալատարությունը նվազել է 19,2 տոկոսով, տասներորդում՝ 17,4, իսկ անցած հնգամյակում՝ 7,3 տոկոսով:

Վերջին հնգամյակների ընթացքում կապիտալատարությունը պակասել է նաև հանրապետության արդյունաբերության մեջ: Այսպես, ութերորդ հնգամյակում այն իջել էր 14,5, իններորդում՝ 17,3, իսկ տասներորդում՝ 24 տոկոսով: Տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում կապիտալատարությունը արդյունաբերության մեջ նվազել է 3,2 տոկոսով: Այս միտումը վկայում է, որ առանձին ժամանակաշրջաններում նկատվել է կապիտալ ներդրումների օգտագործման որոշ բարելավում: Սակայն այդ պրոբլեմը ներկայումս ոչ միայն չի կորցնում իր նշանակությունը, այլև ավելի է կարևորվում:

Ժամանակակից պայմաններում կապիտալատարության էական նվազեցմանը հանգում են ամենից առաջ օբյեկտիվ գործոնները, որոնք միաժամանակ բացասաբար են անդրադառնում արտադրության ֆոնդատարության և նյութատարության վրա: Դրանց թվին են պատկանում բնական ռեսուրսների սպառումը, օգտակար հանածոների մեջ անհրաժեշտ բաղադրամասերի պարունակության պակասումը, դրանց



ավելի խոր տեղադրվածությունը, նոր շրջանների յուրացման անհրաժեշտությունը, հեռավոր շրջաններից հումքը փոխադրելու դժվարությունները, շրջակա միջավայրի պահպանության համար կատարվող ծախսումների աճը և այլն: Այս ամենը պահանջում է լրացուցիչ ներդրումներ արտադրության կուտակման ֆոնդից ու հանգեցնում արտադրության կապիտալատարության, ֆոնդատարության և նյութատարության աճին:

Արագացած գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում բացասական դեր են խաղում նաև այնպիսի գործոններ, ինչպիսիք են ինժեներական հագեցման մակարդակի աճը և օբյեկտների բարեկարգման աստիճանի բարձրացումը, շինարարական նյութերի ու տեխնիկայի թանկացումը, դրանց ցածր որակը, աշխատանքի արտադրողականության դանդաղ բարձրացումը, շինարարության չհիմնավորված երկար ժամկետները: Սակայն կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործման պրոբլեմը պահանջում է խելամիտ մոտեցում: Այդ ոլորտում դեռ կան մի շարք էական թերություններ, որոնց վրա ուշադրություն հրավիրեց Հայաստանի կոմկուսակցության XXVIII համագումարը: Նյութական հսկայական միջոցների «սառեցման» է հանգեցնում անավարտ շինարարության աճող ծավալը: Եթե 1970 թվականին պետական և կոոպերատիվ ձեռնարկություններում ու կազմակերպություններում այն կազմել է 844 **մլն** ռուբլի, ապա 1984 թվականին՝ 1.570 **մլն** կամ տարեկան կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի նկատմամբ 115,1 տոկոս: Անավարտ շինարարության ծավալը հատկապես մեծ է քիմիական, սև մետալուրգիայի, էներգետիկայի, նավթաքիմիական արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի և այլ ճյուղերում: Դա բացատրվում է մի շարք պատճառներով: Մասնավորապես նրանով, որ կառույցները ժամանակին չեն մտցվում պլանի մեջ, նախագծային-հետախուզական աշխատանքները և կապիտալ ներդրումների պլանները հաշվեկշռված չեն շինարարական-մոնտաժային կազմակերպությունների կարողությունների հետ, չեն պահպանվում նորմատիվային պահանջները և այլն: Այս թերությունների վերացումը թույլ կտա էապես արագացնել արտադրական նոր կարողությունների գործարկումը, կրճատել անավարտ շինարարության գերնորմատիվային ծավալը, բարձրացնել պետական միջոցների օգտագործման արդյունավետությունը:

Անավարտ կառույցների մեծ ծավալը ընդհանրապես շինարարության ժամկետների երկարացման հետևանք է: Ուստի կապիտալ ներդրումների արդյունավետության աճի կարևոր ռեզերվ է ժամանակի գործոնի հիմնավորված հաշվառումը արտադրական կարողությունների նախագծման, շինարարական-մոնտաժային աշխատանքների, նրանց գործարկման ու յուրացման ստադիաներում: Բավական է ասել, որ տասնմեկերորդ հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում մի շարք արտադրական օբյեկտների շինարարությունում նորմատիվային ժամկետները գերազանցվել են 1,5 անգամ: Ուստի նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում ինվեստիցիոն ցիկլը կրճատել առնվազն 2 անգամ, որը բնականաբար թույլ կտա էապես պակասեցնել անավարտ շինարարության ծավալները:

Հանրապետությունում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շինարարության ժամկետների ձգձգում առաջացնող հիմնական պատճառներն այն են, որ նորմաներից պակաս չափով են միջոցներ հատկացվում ըստ շինարարության տարիների, կառույցները լրիվ ապահովված չեն նյութերով ու կոնստրուկցիաներով, խախտվում են սարքավորումների առաքման ժամկետները, ժամանակին ու կոմպլեկտավորված չեն ստացվում նախագծային-նախահաշվային փաստաթղթերը, դրանց մեջ փոփոխություններ և ուղղումներ են մտցվում շինարարության պրոցեսում:

Ժամկետների ձգձգումը, իսկ այստեղից էլ՝ անավարտ շինարարության աճը, բացատրվում է նաև նրանով, որ գործարկման առաջադրանքները հավասարաչափ չեն բաշխվում ըստ տարվա եռամսյակների (հանրապետությունում հիմնական ֆոնդերի գործարկման մեծ մասը, ինչպես պլանով, այնպես էլ փաստացի, բաժին է ընկնում չորրորդ եռամսյակին, այն էլ՝ դեկտեմբեր ամսին): Օբյեկտների կառուցման ժամկետների վրա ազդում են նաև փոխադրումների ոչ ռացիոնալ կազմակերպումը, կառուցվող օբյեկտների տեխնիկատնտեսական հիմնավորումների անբավարար մակարդակը, շինարարական-մոնտաժային կազմակերպությունների ռեալ հնարավորությունների ոչ ճիշտ հաշվառումը և օգտագործումը:

Կապիտալ ներդրումների օգտագործման արդյունավետության, շինարարության ժամկետների վրա բացասաբար են ազդում և՛ անավարտ շինարարության ծավալը, և՛ կապիտալ ներդրումների, նյութական ու աշխատանքային ռեսուրսների փոշեցումը միաժամանակ կառուցվող բազմաթիվ օբյեկտների վրա։

Ներկայումս պլանի մեջ մտցվող նորակառույցների թիվը մնում է բավական մեծ։ Դրանք կազմում են այժմ հանրապետությունում կառուցվող բոլոր օբյեկտների կեսից ավելին։ Պարզ է, որ գործնականում դժվար է այդպիսի մեծ թվով կառույցները լիովին ապահովել բոլոր անհրաժեշտ միջոցներով, ուստի առաջանում է պլանային առաջադրանքների կապակցման անհաշվեկշռվածություն շինարարական կազմակերպությունների կարողությունների հետ, իսկ դրա հետևանքով էլ զգալիորեն ձգձգվում են շինարարության ժամկետները, աճում է անավարտ շինարարության ծավալը, ընկնում կապիտալ ներդրումների օգտագործման արդյունավետությունը։ Սակայն, նոր օբյեկտների շինարարության սահմանափակ քանակությամբ անգամ, հանրապետությունում փոխանցվող կառույցները ավարտելու համար կպահանջվի մի քանի տարի։

Հետևաբար, օբյեկտների կառուցման ժամկետները, իսկ համապատասխանաբար նաև անավարտ շինարարության չափերը կրճատելու համար անհրաժեշտ է պակասեցնել միաժամանակ կառուցվող օբյեկտների թիվը, առանց ծայրահեղ անհրաժեշտության չսկսել նոր շինարարություն, նյութական և աշխատանքային ռեսուրսները կենտրոնացնել գործարկվող օբյեկտների, ինչպես նաև պատրաստության առավել մեծ աստիճան ունեցող կառույցների վրա՝ դրանք արագորեն ավարտելու համար։

Մեզ թվում է, որ անհրաժեշտ է աշխատանքների պլանավորված ծավալները սերտորեն կապակցել շինարարության հետ անմիջականորեն կապված կազմակերպությունների հնարավորությունների հետ, բարձրացնել նրանց շարժունակությունը տեխնիկայի ու կադրերի ժամանակին վերատեղաբաշխման համար, խոշորացնել շինարարական-մոնտաժային կազմակերպությունները, որոնք ներկայումս հանրապետությունում անչափ շատ են, ընդ որում դրանց զգալի մասը մանր են, սակավազոր, տեխնիկապես անբավարար հագեցված ու վնասաբեր։ Եվ, վերջապես, գործարկվող օբյեկտների ապահովումը կապիտալ ներդրումներով, պլանով հատկացված միջոցների վերաբաշխման հաշվին, զգալի չափով կարող է արագացնել հիմնական ֆոնդերի ստեղծման տեմպերը։

Վերջին հնգամյակների ընթացքում հիմնական ֆոնդերի գործարկման մեծությունը, որը բաժին է ընկնում բոլոր կապիտալ ներդրումների մեկ ռուբլուն, Հայկական ՍՍՀ-ում եղել է կայուն։ Այսպես, ընթացիկ հնգամյակում այն կազմել է 0,96, տասներորդ հնգամյակում՝ 0,98, իսկ նախորդ հնգամյակներում այդ գործակիցը տատանվել է 0,85—0,87-ի սահմաններում։ Հետևաբար, հիմնական ֆոնդերի գործարկման գործակիցը ընդհանուր առմամբ եղել է գրեթե անփոփոխ, բացի տասներորդ և տասնմեկերորդ հնգամյակներից, երբ նկատվել է այդ ցուցանիշի որոշ մեծացում՝ կապիտալ ներդրումների նկատմամբ։ Դա նշանակում է, որ այդ հնգամյակներում որոշ չափով կրճատվել են շինարարության ժամկետները, իսկ անավարտ շինարարության աճի տեմպերը կապիտալ ներդրումների համեմատությամբ դանդաղել են։ Դրա հետևանքով անավարտ շինարարության տեսակարար կշիռը հանրապետության կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ նվազել է։ Սակայն հիմնական ֆոնդերի գործարկման տեմպերի հետագա արագացումը արդի պայմաններում մնում է հրատապ, քանի որ անավարտ շինարարության մեծ ծավալը դեռևս գերազանցում է կապիտալ ներդրումների տարեկան ծավալներին, որի մասին են վկայում հիմնական ֆոնդերի գործարկման, ընդհանուր առմամբ, ցածր գործակիցները։ Ավելին, կապիտալ ներդրումների ամենամյա պլանները անցած հնգամյակում հանրապետությունում կատարվել են 94—98, հիմնական ֆոնդերի գործարկման պլանները՝ 77—86 տոկոսի մակարդակով։ Մի քանի տարի շարունակ կարողությունների գործարկման պլանը չի կատարվում, օրինակ, «Նաիրիտ» գիտաարտադրական, «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորումներում, Կիրովականի քիմիական, Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատներում և այլ ձեռնարկություններում։ Կապիտալ ներդրումների ծավալի գերազանցումը հիմնական ֆոնդերի գործարկման



մեծության նկատմամբ, ընդհանուր առմամբ վկայում է դրանց անարդյունավետ օգտագործման մասին։

Մեզանում դեռևս շատ ժամանակ է ծախսվում գործարկված արտադրական կարողությունների յուրացման վրա, որը երկարացնում է ինվեստիցիոն ցիկլը, հանգեցնում արտադրանքի զգալի կորուստների և արտադրական կուտակման ֆոնդի արդյունավետության նվազեցման։ Նոր գործարկված օբյեկտների յուրացման փաստացի ժամկետները ներկայումս մեծ են, մինչդեռ չպետք է մոռանալ, որ այդ կարողությունները արտադրության արդյունավետության աճին նպաստում են դրանց յուրացման նորմատիվ ժամկետում միայն։ Փաստորեն արտադրական կարողությունների յուրացման ժամանակաշրջանը հանրապետությունում հասնում է 3—5 տարվա։ Այդպիսի երկարատև ժամկետները բացասաբար են անդրադառնում ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացման վրա։ Դրանք հանգեցնում են այն բանին, որ հաճախ շահագործման հանձնելու պահին տեխնիկան փաստորեն բարոյապես հնացած է լինում, և նրանում եղած առաջադիմականը կորցնում է իր նշանակությունը։ Մի շարք դեպքերում պահանջվում է արդիականացնել հենց նոր շարք մտած օբյեկտները։

Այսպիսով, շինարարության և արտադրական կարողությունների յուրացման ժամկետների ձգձգումը կասեցնում է նոր տեխնիկայի արմատավորումը, նպաստում մեքենաների, սարքավորումների բարոյական ծերացմանը և հանգեցնում գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի դանդաղեցմանը։ Ընդ որում բարոյապես հնանում են ոչ միայն աշխատանքի միջոցներն ու տեխնոլոգիական պրոցեսները, այլև նախագծերն ու այն արտադրանքը, որ նախատեսված է եղել թողարկել արտադրական նոր կարողություններում։

Հանրապետության կապիտալ շինարարության մեջ կարողությունների յուրացման բնագավառում տիրող անբավարար դրության հիմնական պատճառները եղել են ինվեստիցիոն ցիկլի նախորդ ստադիաներում եղած շինարարական-մոնտաժային բազմաթիվ թերությունները (թերավարտ շինարարության մեջ ամեն տարի տասնյակ ավարտված օբյեկտներ թերությունների պատճառով շահագործման չեն ընդունվում), կառույցների ցածր որակը, հնացած նախագծերը, ոչ կոմպլեկտ սարքավորումները։ Յուրացման նորմալ ընթացքի վրա բացասաբար են ազդում հումքի և նյութերի, ինչպես նաև որակյալ բանվորական կադրերի պակասը, պատվիրված սարքավորումների ոչ ժամանակին ապահովումը և այլն։ Այդ ամենի հետևանքով մենք կորցնում ենք մեծ քանակությամբ արտադրանք, աճում են հասարակական ծախսումները։

Կապիտալ շինարարության արդյունավետությունը բարձրացնելու համար կարևոր նշանակություն ունեն նախագծային-հետախուզական կազմակերպությունների գործունեության բարելավումը, նախագծման, նախագծային-նախահաշվային փաստաթղթերի որակի բարձրացումը և դրանք կազմելու ժամկետների կրճատումը։

ՍՄԿԿ XXVII համագումարում «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին» ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի զեկուցման մեջ նշված է. «Պակաս կարևոր չէ հասնել նախագծման արմատական բարելավման շինարարության մեջ։ Այդ գործում առանձնակի դեր է պատկանում իրենց՝ նախագծողներին։ Հենց նրանցից է մեծապես կախված արտադրության տեխնիկական մակարդակը, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը։ Նրանք պետք է գիտատեխնիկական առաջադիմության արագացուցիչի դեր խաղան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում»։

Բանն այն է, որ գործնականում շատ հաճախ նախագծային ինստիտուտները մշակում և շինարարական կազմակերպություններին են հանձնում այնպիսի նախագծեր, որոնք չեն համապատասխանում գիտատեխնիկական արդի նվաճումներին ու լուծումներին, առաջավոր փորձին, դրանցում չեն նախատեսվում կապիտալ, նյութական, մարդկային և վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողական օգտագործման միջոցներ։ Մինչդեռ կարևոր է արդյունավետ տիպային նախագծերի լայն կիրառումը, որոնք մեծ նշանակություն ունեն կառույցները ժամանակին բարձրորակ նախագծային-նախահաշվային փաստաթղթերով ապահովելու, նախագծման ու շի-

նարարության ինդուստրացման ժամկետները ու ծախսումները կրճատելու համար: Տիպային նախագծերի դեպքում օբյեկտների արժեքը, որպես կանոն, լինում է ավելի ցածր, քան անհատական նախագծերով կառուցվածներինը: Կարևոր դեր են խաղում նաև օբյեկտների կոմպլեքսային նախագծումը, դեռևս նախագծման փուլում ճյուղային արտադրությունների զարգացման կոնկրետ պայմանների ճիշտ որոշումը:

Հանրապետության շինարարության ապահովվածությունը նախագծային-նախահաշվային փաստաթղթերով պատշաճ մակարդակի վրա չի գտնվում: Միայն տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում գործարկված արդյունաբերական ձեռնարկությունների մեկ երրորդում շինարարության պրոցեսում վերանայվել են նախագծերը, մեկ քառորդը այդ փաստաթղթերը ժամանակին չեն ստացել, իսկ շինարարության ընթացքում դրանց մեջ կատարվել են ուղղումներ:

Նախահաշիվը պետք է դառնա շինարարության պլանավորման ու ֆինանսավորման կայուն փաստաթուղթ, որի որակի բարձրացումը և օբյեկտների շինարարության նորմատիվ ժամկետների պահպանումը հնարավորություն կտան զգալիորեն կրճատել նախագծային լուծումները վերանայելու դեպքերը և դրանով իսկ փոքրացնել նախագծման աշխատանքների ծավալը:

Կապիտալ շինարարության արդյունավետությունը կանխորոշվում է նաև կապիտալ ներդրումների վերարտադրության կառուցվածքի կատարելագործմամբ՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման համար հատկացվող ներդրումների բաժնի հետագա աճի միջոցով, միաժամանակ կրճատելով ընդլայնման ու նոր շինարարության համար կատարվող ծախսերի տեսակարար կշիռը:

Հանրապետության արտադրական օբյեկտների գծով նոր շինարարության համար հատկացվող կապիտալ ներդրումների մեծությունը վերջին հնգամյակների ընթացքում ունեցել է նվազման, իսկ գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, վերակառուցման ու ընդլայնման ներդրումների մեծությունը՝ բարձրացման միտում: Այնուհետև անհրաժեշտ է էապես սահմանափակել նոր շինարարության մասշտաբները, իսկ դրա հաշվին ազատված ռեսուրսները ուղղել այն ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման համար, որտեղ դրանք ավելի մեծ տնտեսական արդյունք կտան: Բանն այն է, որ միութենական և հանրապետական շատ մինիստրություններ իրենց ճյուղերի զարգացման հարցերը դեռևս լուծում են նոր արտադրություններ ստեղծելու և եղածները ընդլայնելու հաշվին:

Ընթացիկ հնգամյակում Հայկական ՍՍՀ-ում նախատեսվում է գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու տեխնիկական վերազինմանն ուղղել 48,7 տոկոսով ավելի շատ կապիտալ ներդրումներ, քան նախորդ հնգամյակում: Դա հնարավորություն կտա արդյունաբերական արտադրանքի հավելաճի մոտավորապես 95 տոկոսը ապահովել գործող ձեռնարկությունների վերակառուցման հաշվին:

Կապիտալ ներդրումների հետ անմիջականորեն առնչվում են դրանց վերարտադրման և տեխնոլոգիական կառուցվածքները: Այսպես, որքան ավելի բարձր է վերակառուցման ու տեխնիկական վերազինման տեսակարար կշիռը կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ, այնքան ավելի բարենպաստ է սարքավորումների և շինարարական-մոնտաժային աշխատանքների վրա կատարվող ծախսումների հարաբերակցությունը, այնքան ավելի բարձր է արտադրության արդյունավետությունը: Հիմնական արտադրական ֆոնդերի ակտիվ բաժնի մեծացումը կապիտալ ներդրումների խնայողական օգտագործման վճռական գործոն է: Կապիտալ ներդրումներում մեքենաների ու սարքավորումների տեսակարար կշռի աճի դեպքում նվազում է արտադրական տարածությունների պահանջը, իսկ դրանով էլ կրճատվում է շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը, տնտեսվում են արտադրական կուտակման ֆոնդի ռեսուրսները: Սակայն մեքենասարքավորումներ ձեռք բերելու համար կատարվող ծախսումների բաժնի մեծացումը չի կարելի համարել անընդհատ ու անսահման պրոցես, քանի որ դրա մշտական աճը գործնականորեն անհնար է: Այդ նպատակով կատարվող ծախսերի բաժնի և շինարարական-մոնտաժային աշխատանքների ծախսումների միջև եղած հարաբերակցությունը կախված է կոնկրետ պայմաններից և գիտատեխնիկական առաջադիմության ու կոնկրետ



լուծվող խնդիրների ազդեցության տակ կարող է փոխվել: Բայց, ընդհանուր առմամբ, իհարկե, երկար ժամանակամիջոցի համար առաջադիմական միտում պետք է համարել մեքենաներ ու սարքավորումներ ձեռք բերելու համար կատարվող ծախսումների տեսակարար կշռի աճը կապիտալ ներդրումների մեջ: 1984 թվականին հանրապետությունում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի մեջ սարքավորումների բաժինը կազմել է 36 տոկոս՝ 1975 թվականի 25 տոկոսի դիմաց: Ներդրումների տեխնոլոգիական կառուցվածքի կատարելագործումը կանխորոշվում է կապիտալ շինարարության կազմակերպման բարելավմամբ, աշխատանքների էժանացմամբ, մեքենաշինական բազայի մակարդակի բարձրացմամբ:

Կապիտալ շինարարության արդյունավետությունը գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում կախված է նաև մի շարք այլ գործոններից: Այսպես, նրա վրա բացասաբար է ազդում այն հանգամանքը, որ այստեղ բանվորների մի նշանակալի մասը առայժմ զբաղված է ձեռքի ցածր արտադրողական աշխատանքով: Աշխատանքները ձեռքով են կատարվում նաև շինարարության հետ կապված բազմաթիվ օժանդակ արտադրություններում: Ուստի արդեն տեսանելի հեռանկարում շինարարության ու արտադրության արագացած մեքենայացումն ու ավտոմատացումը կդառնան կապիտալ ներդրումների արդյունավետության աճի վճռական գործոն:

Շինարարության հետագա զարգացումն այժմ ընթանում է օբյեկտների կառուցման կոմպլեկտաբլոկային մեթոդի լայն կիրառման ուղղությամբ՝ նրա տարրերի մեջ տեղադրված սարքավորումներով, գործարանային լրիվ արտադրանքի հեշտ տեղադրվող և հավաքվող տարրերի օգտագործմամբ: Նշված մեթոդի դեպքում օբյեկտները պատրաստվում են գործարաններում բլոկների ու կոմպլեկտների ձևով՝ ներառյալ և դրանց սարքավորումները: Այդ դեպքում օբյեկտները ստեղծվում են ավելի խնայողական նախագծերով և, որպես կանոն, բարձր արդյունավետ նյութերից, իսկ դրանց գործարանային պատրաստվածությունը երբեմն հասնում է հարյուր տոկոսանի մակարդակի: Դա թույլ է տալիս զգալիորեն կրճատել աշխատանքային ռեսուրսները շինարարական հրապարակում՝ գործարանային պայմաններում հավաքման-մոնտաժման աշխատանքների իրականացման շնորհիվ:

Կոմպլեկտաբլոկային մեթոդով կարելի է կառուցել ցանկացած նշանակության օբյեկտներ՝ պոմպակայաններ. կաթսայատներ, կոմպրեսորային կայաններ, մաքրիչ կառույցներ և այլն: Այդ մեթոդը հաջողությամբ կարելի է կիրառել նաև մեր հանրապետությունում, հատկապես՝ լեռնային ու հեռավոր շրջաններում:

Որպես արդյունաբերության և շինարարության կոոպերացում, կոմպլեկտաբլոկային մեթոդի հետագա զարգացումը հնարավորություն կտա ստեղծելու ավելի առաջադիմական տիպի շինարարական կազմակերպություններ և իրականացնելու անցում դեպի լրիվ պատրաստի շինարարության: Այս դեպքում կապալառու կազմակերպությունը, կատարելով բազմազան ֆունկցիաներ, ապահովում է ինվեստիցիոն կոմպլեքսի արդյունավետության աճը:

Այսպիսով, կապիտալ շինարարության արդյունավետությունը ինտենսիվացման պայմաններում կանխորոշվում է մի ամբողջ շարք գործոններով, որոնց իրականացումը հնարավորություն կտա զգալիորեն կրճատել կառուցվող օբյեկտների ժամկետներն ու քանակը, անավարտ շինարարության ծավալը հասցնել նորմատիվային մակարդակի:

# ԽԵԼԱՄԻՏ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ

**Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու, դոցենտ

**ՍՄԿԿ** XXVII համագումարն առաջադրեց սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման, էկոնոմիկայի աճին անհրաժեշտ դինամիկություն հաղորդելու, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ստրատեգիական ծրագիր: Այն նախատեսում է մեր կենսագործունեության բոլոր կողմերի որոշակի կատարելագործում, հասարակական-տնտեսական հարաբերությունների պլանային կառավարման այնպիսի մեխանիզմի արմատավորում, որն ավելի խոր և ամբողջական հաշվի առնի օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջներն ու դրանց իրացման հնարավորությունները: Այս առումով նորովի մոտեցում է պահանջում նաև հասարակական, կոլեկտիվ և անձնական շահերի փոխհամաձայնեցման մեխանիզմի հետևողական կատարելագործումը, որով բնութագրվում են ոչ միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացման մակարդակն ու արտադրողական ուժերի պոտենցիալ հնարավորությունները, այլև սոցիալիստական արտադրության վերջնական նպատակների իրացման աստիճանը: Բանն այն է, որ սոցիալիզմի պայմաններում, առաջին անգամ մարդկային հասարակության պատմության մեջ, արտադրության գլխավոր նպատակն է դառնում անհատի և ամբողջ հասարակության նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը՝ որպես մարդկանց համակողմանի և ազատ զարգացման նախապայմանի: Հասարակության նպատակներն ու շահերը դիալեկտիկական միասնության մեջ են անհատի պահանջմունքների և դրանց իրացման հնարավորությունների ստեղծման հետ: Հետևաբար՝ անհատն իր շահերով հանդերձ հանդես է գալիս ոչ միայն որպես հասարակական արտադրության զարգացումն ապահովող, այլև՝ վերջինիս նպատակը մարմնավորող սուբյեկտ, իսկ պահանջմունքների բավարարումը դառնում է ոչ միայն մարդկանց կենսագործունեության ապահովման միջոց, այլև հասարակական արտադրության հետագա զարգացումը խթանող գլխավոր ազդակ:

Ահա թե ինչու ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ կառավարման ամբողջ համակարգի կատարելագործման առջև խնդիր է դրվում՝ հենվելով տնտեսության սոցիալիստական պլանային սիստեմի առավելությունների ու հնարավորությունների, տնտեսական օրենքների ավելի խոր և բազմակողմանի օգտագործման վրա, ապահովել անձնական շահերի, աշխատավորական կոլեկտիվների, տարբեր սոցիալական խմբերի շահերի օպտիմալ զուգակցումը համապետական, համաժողովրդական շահերի հետ և այն օգտագործել որպես էկոնոմիկայի աճի շարժիչ ուժ:

Պահանջմունքների բավարարման հնարավորություններն ամենից առաջ պայմանավորված են արտադրողական ուժերի զարգացման մակարդակով: «...Անհրաժեշտ պահանջմունքների չափը,— գրում է Կ. Մարքսը,— ինչպես



և դրանց բավարարման եղանակները պատմության իսկ արդյունք են և մեծ մասամբ կախված են երկրի կուլտուրական մակարդակից...» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Երևան, 1954, էջ 182): Ընդ որում «Կուլտուրայի սաղմնային աստիճանների վրա աշխատանքի արտադրողական ուժերը չնչին են, բայց այդպիսին են նաև պահանջմունքները, որոնք զարգանում են իրենց բավարարման միջոցների հետ և անմիջաբար կախված են վերջինների զարգացումից» (Նույն տեղը, էջ 535): Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում անձնական շահերի իրացման կամ պահանջմունքների բավարարման փոխազդեցությունը արտադրողական ուժերի զարգացման վրա ձեռք է բերում առավել մեծ ազդեցություն, քանի որ հասարակական շահերի իրացումը նույնպես նպատակաուղղված է հասարակության առանձին անդամների հարաճուն պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը: Բնականաբար, այդ գլխավոր խնդրի լուծման հնարավորությունները մեծանում են արտադրողական ուժերի զարգացմանը զուգընթաց և օրինաչափ է, որ ներկայումս մեր կուսակցությունն ու կառավարությունն է՛լ ավելի մեծ ուշադրություն են նվիրում երկրի սոցիալական զարգացման խնդիրների լուծմանը՝ պահանջմունքների բավարարվածության աստիճանը հետևողականորեն ներդաշնակելով արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերած մակարդակին: Միաժամանակ, վերափոխվող արտադրահարաբերությունների ներկա պայմաններում այս խնդրի լուծումը նույնպես ձեռք է բերում որակական առանձնահատկություններ: Ինչպես նշվեց կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ, «Այժմ շատ բան, իսկ ըստ էության՝ ամեն ինչ, կախված կլինի նրանից, թե մենք որքան արդյունավետ կկարողանանք օգտագործել սոցիալիստական կարգերի առավելությունները ու հնարավորությունները, նրա տնտեսական հզորությունն ու սոցիալական պոտենցիալը, նորացնել հնացած հասարակական ձևերը, աշխատանքի ոճն ու մեթոդները, դրանք համապատասխանեցնել փոփոխված պայմաններին»: Գլխավորը, որը պետք է ապահովի մեր հաջողությունը, դա մասսաների կենդանի ստեղծագործությունն է, սոցիալ-տնտեսական աճի արագացման տնտեսական-կազմակերպչական և սոցիալ-հոգեբանական գործոնների ճիշտ զուգակցումը: Բնականաբար, մարդու կենսագործունեության հետ առնչվող ամեն մի քաղաքականություն կարող է պահանջվող արդյունքներ տալ միայն այն դեպքում, երբ ճշտորեն է հաշվի առնում դասակարգերի, սոցիալական խմբերի, անհատի շահերը, ելնում է այն ռեալ իրողությունից, որ հասարակությունը կոնկրետ մարդիկ են, որոնք ունեն կոնկրետ շահեր, կյանքի, նրա իրական և կարծեցյալ արժեքների մասին իրենց պատկերացումները:

Մարդկանց գործելակերպը, նրանց վերաբերմունքը բուն աշխատանքի և դրա արդյունքների, հասարակական առանձին երևույթների նկատմամբ առաջին հերթին օբյեկտիվորեն պայմանավորված է նրանց շահերով ու պահանջմունքների բավարարվածության ռեալ վիճակով:

«Այն ամենը,— գրում է Կ. Մարքսը,— որի համար մարդը պայքարում է, կապված է նրա շահերի հետ» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., изд. 2-е, т. 1, с. 72): Իսկ այդ շահերը հանդես են գալիս որպես սուբյեկտի գործունեության ներքին ազդակ, որպես հասարակական հարաբերությունների այնպիսի պրակտիկ դրսևորումներ, որոնք ուղղված են մարդկանց պահանջմունքների ձևավորմանն ու դրանց բավարարմանը: Ընդ որում աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի ձևավորումը առաջին հերթին պայմանավորված է մարդկանց նյութական շահերի իրացման մեխանիզմով: Ինչպես նշում է Ֆ. Էնգելսը, «Մարքսը հայտնագործեց մարդկության պատմության զարգացման օրենքը. մինչև վերջին ժամանակներս տեսական նստվածքի տակ թաքնված այն հասարակ փաստը, թե մարդիկ առաջին հերթին պետք է ուտեն, խմեն, բնակարան ունենան և հագնվեն, նախքան ի վիճակի կլինեն զբաղվելու քաղաքականությամբ, գիտությամբ, արվեստով...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, երեք հատորով, հ. 3, Երևան, 1978, էջ 207): Մարդկային գոր-

ծունեությունը, որն իրականացվում, խթանվում է նրա պահանջմունքներով, հանդես է գալիս ոչ միայն որպես պահանջմունքների բավարարման եղանակ, այլև ծնում է նոր պահանջմունքներ և նոր գործունեության շարժառիթներ: Անկախ պահանջմունքների բնույթից (նյութական, սոցիալական, թե հոգևոր), դրանք թելադրում են մարդկանց որոշակի գործելակերպ, որի արդյունքը պայմանավորված է առկա պահանջմունքների բավարարվածության աստիճանով կամ անձնական շահերի իրացման աստիճանով: Այդ առումով Վ. Ի. Լենինը նշում է. «Խանդավառության ալիքով ոգևորված, ժողովրդական, նախ ընդհանուր քաղաքական, ապա ռազմական խանդավառությունը կյանքի կոչելով, մենք հույս ունեինք, անմիջապես հենվելով այդ խանդավառության վրա, իրագործել նույնքան մեծ... տնտեսական խնդիրներ: Կյանքը ցույց տվեց մեր սխալը... ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխությամբ ծնված խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա, աշխատեցեք կառուցել նախ ամուր կամուրջներ... դեպի սոցիալիզմ (ընդգծումը մերն է— Գ. Հ.). այլ կերպ դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ դուք տասնյակ ու տասնյակ միլիոնավոր մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 44, էջ 181—182): Մեծ առաջնորդի այս պատգամը նույնքան կենսական և նույնքան կարևոր է նաև մեր ժամանակների համար: Սոցիալիստական հասարակարգում, երբ անձնական շահերն իրենց իրացումն են գտնում հասարակական նպատակների իրականացման մեջ, մարդկանց մոտ ձևավորվում է շահագրգիռ, տնտեսատիրոջ վերաբերմունք հասարակական զարգացման խնդիրների և դրանց մի մասը կազմող՝ անմիջականորեն իր կողմից իրականացվող գործի նկատմամբ: Սակայն, ինչպես ՍՄԿԿ XXVII համագումարում նշեց ընկ. Մ. Ս. Գորբաչովը, «Միամտություն կլիներ պատկերացնել, թե իբր տնտեսատիրոջ զգացում կարելի է դաստիարակել խոսքերով: Սեփականության նկատմամբ վերաբերմունքը ձևավորվում է նախ և առաջ այն ռեալ պայմաններով, որոնցում գտնվում է մարդը, արտադրության կազմակերպման, աշխատանքի արդյունքների բաշխման ու օգտագործման վրա նրա ազդեցության հնարավորություններով»: Հետևաբար, մեզ մոտ պետք է գործադրվեն աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի ձևավորման այնպիսի լծակներ, որոնք հասարակական պրակտիկայում անհրաժեշտ տնտեսական և սոցիալ-բարոյական միջավայր ստեղծեն անձի աշխատանքային ունակությունների, նրա ակտիվության պոտենցիալի լավագույն օգտագործման համար: Դա ամենից առաջ ենթադրում է որոշակի հարաբերակցության ձևավորում մարդկանց պահանջմունքների և ընդունակությունների միջև, որին ներդաշնակ պետք է լինի ստացված վարձաչափի և կատարած աշխատանքի չափի համապատասխանությունը: Ընդ որում պահանջմունքները հանդես են գալիս որպես ընդունակությունների իրացումը խթանող շարժառիթներ: Պահանջմունքները և ընդունակությունները ամբողջի երկու կողմերն են, որոնց փոխներգործությամբ է պայմանավորված աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի ներքին մղումը, հետևաբար և՝ ակտիվության աստիճանը:

Հարկ է նշել, որ ընդհանրապես մարդկային գործոնի ակտիվացման և, մասնավորապես, սոցիալական ու աշխատանքային ակտիվության բարձրացման խնդրի լուծումն ունի պատմական որոշակիություն: Այն պայմանավորված է տվյալ փուլում պահանջմունքների բավարարվածության աստիճանի և արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերված մակարդակի փոխհարաբերությամբ: Եթե արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների զարգացման դիալեկտիկան հանդես է գալիս որպես հասարակական-տնտեսական հարաբերությունների զարգացման գլխավոր շարժիչ ուժ, ապա արտադրողական ուժերի զարգացման մակարդակի և հասարակական անընդհատ աճող պահանջմունքների բավարարվածության աստիճանի միջև եղած հակասությունը այն բանի բնութագիրն է, թե արտադրողական ուժերի զարգացման մակարդակին որքանով են ներդաշնակ արտադրական հարաբերությունները:



Իր հերթին, պահանջմունքների բավարարվածության աստիճանը պայմանավորված է նրանով, թե ինչպիսին են առկա պահանջմունքներն ու դրանց փոփոխության օրինաչափությունները: Գլխավոր խնդիրը փաստորեն հանգում է պահանջմունքների փոփոխության խելամիտ կառավարմանը կամ խելամիտ պահանջմունքների ձևավորման ու դրանց բավարարվածության աստիճանի հետևողական բարձրացման անհրաժեշտ սոցիալ-տնտեսական նախադրյալների ստեղծմանը: Դա մարդկային գործոնի ակտիվացման և սոցիալական արդարության ամրապնդման առանցքային խնդիրներից մեկն է արտադրության միջոցների հասարակական սեփականության հիմքի վրա խարսխված արտադրական հարաբերությունների պայմաններում: Սոցիալիստական հասարակության մեջ անհատը և հասարակությունը միմյանցից անջատ համակցություններ չեն, այլ ընդհակառակը՝ դիալեկտիկական միասնության երկու կողմերն են: Միայն սոցիալիզմի պայմաններում է, որ նման միասնությունը հիմք է տալիս ճշմարիտ կյանքի նշանաբանը դարձնել՝ «ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար»: Վերջինիս կենսագործումը արտահայտվում է այն բանում, թե հասարակության առանձին անդամները ինչպես են բավարարում իրենց պահանջմունքները, ինչ են ակնկալում և ինչ են ստանում հասարակությունից, որքանով է իրենց ստացածն ու սպասածը համապատասխանում սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության չափանիշներին և հասարակության ռեալ հնարավորություններին: Այս հարաբերության մեջ են ձևավորվում ու կառավարվում անհատի պահանջմունքները՝ դառնալով նրա գործելակերպի հասարակականորեն ընդունելի խթաններ:

Մարքսիզմի դասականները, խորությամբ ու համակողմանիորեն բացահայտելով պահանջմունքների փոփոխության ու զարգացման օրինաչափությունները, ցույց տվեցին, որ առանց պահանջմունքների չկա արտադրություն, որ հենց սպառումն է վերարտադրում պահանջմունքներ, և դրանք ունեն հասարակական բնույթ: Նրանք բացահայտեցին զարգացման այն օբյեկտիվ օրենքը, ըստ որի, երբ բավարարվում է պահանջմունքների մի խումբը, ապա ազատություն են ստանում, ձևավորվում են նոր պահանջմունքներ: Հանգեցին այն կարևոր ընդհանրացմանը, որ պահանջմունքների չափը և դրանց բավարարման եղանակները պատմության իսկ արդյունք են և կախված են արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերած մակարդակից ու արտադրահարաբերությունների բնույթից: Ընդ որում բոլոր հասարակարգերում էլ գործում է պահանջմունքների անընդհատ աճի օրենքը, որը, սակայն, արտադրահարաբերությունների բնույթին համապատասխան դրսևորման որակական առանձնահատկություններ է ձեռք բերում:

Մեթոդաբանական այս կարևոր եզրահանգումներից ելնելով, պլանային էկոնոմիկայի պայմաններում անհրաժեշտություն է առաջանում հստակ հաշվի առնել, որ մարդկային գործունեությունը հանդես է գալիս ոչ միայն որպես պահանջմունքների բավարարման եղանակ, այլև ծնում է նոր պահանջմունքներ և գործունեության նոր շարժառիթներ: Անհրաժեշտ է պրակտիկ գործելակերպը ճիշտ բխեցնել սոցիալիստական հասարակարգում պահանջմունքների վեհացման օրենքի գործողության բնորոշ առանձնահատկություններից՝ ապահովել դրանց զարգացման պլանաչափությունը, անհատի պահանջմունքների բավարարման մղումների և հասարակական զարգացման նպատակների ներդաշնակությունը, պահանջմունքների զարգացման հասարակականորեն կառավարելի սոցիալական միջավայրի ստեղծումը, սոցիալիստական հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարման հավասար հնարավորությունների ստեղծումը և դրանց գնահատման հասարակականորեն ընդունելի միասնական չափանիշների արմատավորումը:

Խնդիրը հանգում է նրան, որպեսզի մշակվի և արմատավորվի պահանջմունքների փոփոխության մեխանիզմի կառավարման այնպիսի գործուն համակարգ, որը պատմական զարգացման յուրաքանչյուր փուլում հնարավորություն տա ձևավորելու խելամիտ պահանջմունքներ և, դրան համապատասխան՝ մարդկանց գործելակերպի խելամիտ մղում: Դրանք այն առանցքային հարցերն են, որոնց մեր երկրում չթուլացող ուշադրություն է դարձվում: Ընդ

որում այստեղ ելակետայինը «խելամիտ պահանջմունքներ» հասկացության ճիշտ բնութագրումն է։ Սակայն այդ հարցում գրականության մեջ դեռևս միասնական մոտեցում գոյություն չունի։ Ավելին, առանձնացվում են պահանջմունքների միանգամայն տարբեր բնութագրումներ՝ «խելամիտ», «ռացիոնալ», «իրական», «բացարձակ», «անհրաժեշտ», «գերանհրաժեշտ» և այլն։

Կանգ չառնելով պրոբլեմի առանձին մանրամասների վրա, նշենք, որ մեր կարծիքով, խելամիտ պահանջմունքների բնորոշ առանձնահատկություններն են.

— պահանջմունքների համապատասխանությունը հասարակության տնտեսական և սոցիալական ներդաշնակ հնարավորություններին,

— ներդաշնակությունը նյութական, սոցիալական և հոգևոր պահանջմունքների միջև,

— պահանջմունքների համապատասխանությունը, մի կողմից, անձնական աշխատանքային ներդրմանը և, մյուս կողմից՝ անհատին վեհացնող սոցիալական ու հոգևոր չափանիշներին։

Որպես պահանջմունքների խելամտության գնահատման կոնկրետ չափանիշ կարող է հանդիսանալ դրանց համապատասխանությունը սոցիալիստական ապրելակերպի սկզբունքներին, կուլտուրական ու բարոյական նորմերին։ Ընդ որում պահանջմունքների խելամտության չափանիշը նույնպես ունի կոնկրետ պատմական բնույթ, պայմանավորված է հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման մակարդակով, անհատի և հասարակության փոխհարաբերությունները կարգավորող սոցիալ-քաղաքական և բարոյական նորմերով։ Սակայն մնայունը, բնորոշն այն է, երբ մարդու ինքնաիրականացման բնական մղումի ձև է դառնում աշխատանքը, այլ ոչ թե նրա տնօրինության տակ գտնվող իրը, առարկան, այն միջոցները, որոնք պետք է նախադրյալ հանդիսանան մարդու ինքնահաստատման համար, սակայն առանձին դեպքերում ֆետիշացվելով՝ իշխում են մարդու վրա, դառնում նրա կենսադիրքի բովանդակությունը։ Ուստի մարդու պահանջմունքներն իրենց դրսևորման բոլոր ձևերով խելամիտ կարող են համարվել միայն այն դեպքում, երբ դառնում են անձի ստեղծագործական կարողությունների դրսևորման ու զարգացման խթան, երբ մարդուն մղում են մարդկային գործելակերպի՝ ինքնաիրականացման, որպես բանական էակի։

Անկախ նրանից, թե ինչ բնույթի են կոնկրետ պահանջմունքները՝ ֆիզիոլոգիական են, նյութական, սոցիալական, հոգևոր թե ինտելեկտուալ, միևնույն է՝ որպես մարդկային պահանջմունքներ պետք է համապատասխանեն խելամտության բերված չափանիշներին։ Հակառակ դեպքում դրանք մարդուն կմղեն այնպիսի գործելակերպի, որն իր բնույթով հակասության մեջ կմտնի նրա՝ որպես ստեղծարար, բանական էակի, կենսագործունեության բովանդակության հետ։

Խելամիտ պահանջմունքների ձևավորման առաջին և հիմնական նախապայմանը մարդու գիտակցականության և նյութական հնարավորությունների ճիշտ ներդաշնակումն է։ Միանգամայն արդարացի է Ֆ. Ի. Սադիկովը, նշելով, որ եթե գիտակցականության, կուլտուրայի աճը առանձին անհատների մոտ ետ է մնում նրանց կենսամակարդակի աճից, ապա դա կարող է հանգեցնել սպառողական էգոիզմի (Вопросы философии, 1985, № 1, с. 46)։ Հետևաբար, յուրաքանչյուրի կատարած աշխատանքի քանակին ու որակին համապատասխան նյութական ու հոգևոր արժեքների սպառման օբյեկտիվ անհրաժեշտությունը թելադրում է հետևողականորեն կատարելագործել ամեն մի գործունեության հասարակական գնահատման չափանիշները։ Մյուս կողմից, անհրաժեշտ է մարդկանց մոտ դաստիարակել այնպիսի պահանջմունքներ, որոնք համապատասխանում են հասարակական բարիքների ստեղծման գործում նրանց ունեցած մասնակցության չափին, որպեսզի մարդիկ հասարակությունից չպահանջեն անհնարինը, այն, ինչը չի համապատասխանում իրենց համարժեք ներդրմանը։ Երբ պահանջմունքների բավարարումը կտրվում է իր ռեալ նյութական հիմքից, երբ այն իրականացվում է ոչ իր աշխա-



տանքի, այլ ուրիշների հաշվին, ձևավորվում է համարժեք պահանջմունքների այնպիսի մի նոր մեխանիզմ, որը հանգեցնում է սոցիալական անարդարության, տեղիք է տալիս սոցիալիզմին խորթ սոցիալ-հոգեբանական երևույթների առաջացման, ծնունդ են առնում քաղքենիությունը, իրապաշտությունը, ընչաքաղցությունը, էգոիզմը, անտարբեր ու անհոգի վերաբերմունքը անձնական նեղ շահերին անմիջականորեն չառնչվող գործերին։ Անաշխատ ամեն մի եկամուտ, որքան էլ նպաստի մարդկանց սոցիալական այս կամ այն պահանջմունքի բավարարմանը, միևնույն է, ձևավորում է սոցիալ-հոգեբանական այնպիսի իրավիճակ, երբ ծագած նոր պահանջմունքները գնալով ավելի մեծ չափով կտրված լինելով իրենց խելամիտ բավարարման հնարավորություններից, առաջ են բերում սոցիալական անարդարության նոր դրսևորումներ, ծնում են կյանքի երևույթներն արժեքավորելու, ինքնահաստատման այնպիսի չափանիշներ, որոնցով թելադրված գործելակերպը բացասաբար է անդրադառնում հասարակական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման, բարոյահոգեբանական մթնոլորտի ձևավորման, արտադրատնտեսական գործունեության ընդհանուր արդյունքների վրա։ Շատ պատկերավոր է նկարագրում Կ. Մարքսը պահանջմունքների հարաբերական ձևավորման մեխանիզմը իր «Վարձու աշխատանք և կապիտալ» աշխատության մեջ։ «Որքան էլ փոքր լինի մի որևէ տուն,— գրում է նա,— բայց բավարարություն է տալիս հասարակական բոլոր պահանջներին բնակարանի վերաբերմամբ, քանի դեռ նրա շրջակա տներն իր նման փոքր են։ Բայց եթե փոքրիկ տան կողքին աճում, բարձրանում է մի պալատ, ապա տնակը կուչ է գալիս ու փոքրանում մի ողորմելի խրճիթի չափ... և որքան էլ խոշորանան տնակի չափերը քաղաքակրթության պրոգրեսին զուգընթաց, համեմատաբար, փոքր տնակի բնակիչն իր չորս պատերի մեջ իրեն կզգա ավելի անհարմար, ավելի ու ավելի չբավարարված, ավելի ու ավելի ճնշված, եթե հարևան պալատը մեծանում է հավասար կամ է՛լ ավելի մեծ չափերով»։ Այնուհետև շարունակում է. «Մեր կարիքներն ու վայելքները բխում են հասարակությունից. այդ պատճառով էլ մենք դրանք չափում ենք հասարակության չափանիշով և ոչ թե այդ կարիքների ու վայելքների բավարարման առարկաներով։ Որովհետև մեր կարիքներն ու վայելքները հասարակական բնույթ են կրում, նրանք հարաբերական են» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երեք հատորով, հ. 1, Երևան, 1950, էջ 88)։

Պահանջմունքների հասարակական բնույթը դրսևորման ավելի լայն հնարավորություն է ստանում արտադրության միջոցների համաժողովրդական սեփականության պայմաններում։ Դրան համապատասխան՝ ընդլայնվում են նաև հարաբերական ներազդման շրջանակները։ Սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում, երբ հասարակության բոլոր անդամները համաժողովրդական սեփականություն կազմող արտադրության միջոցների նկատմամբ ձեռք են բերում հավասար իրավունքներ, երբ մարդկանց մոտ անսասան հավատ ու վստահություն է առաջանում վաղվա օրվա նկատմամբ, սահմանադրությամբ վավերացված է նրանց աշխատանքային մշտական իրավունքը, յուրաքանչյուրն իր իրավունքները պաշտպանելու հարցում որևէ վավերագրված արգելքի չի հանդիպում, երբ ցանկացած աշխատանք կատարելն ու կառավարման հիերարխիայի ցանկացած օղակում տեղ զբաղեցնելը չի դառնում մարդկանց առանձին խմբի կամ որևէ խավի մենաշնորհը, մարդկանց պահանջմունքներն աճում են անհամեմատ բարձր տեմպերով։ Առանձին դեպքերում, եթե դրանք առաջ են անցնում իրենց բավարարման հնարավորություններից և գտնում են նաև բավարարման միջոցներ, ապա դա մարդկանց կարող է մղել այնպիսի գործելակերպի, որը կհակասի սոցիալիստական ապրելակերպի նորմերին։ Ընդ որում պահանջմունքների բավարարման հասարակական հնարավորությունների ավելի սուղ պայմաններում շատ ավելի սահմանափակ են նաև պահանջմունքների ընդլայնման թափն ու շրջանակները։ Արտադրության, գիտատեխնիկական առաջադիմության զարգացման հետ ոչ միայն փոխվում, հարստանում և խորանում են պահանջ-

մունքները, այլև դրանք ստանում են նոր որակ, ավելի ինտենսիվորեն ծնվում ու առաջ են գալիս նոր պահանջմունքներ, նախկինում վերացական պահանջմունքները դառնում են կենսական անհրաժեշտություն: Սակայն դրանք հասարակության առանձին անդամների մոտ խիստ շերտավորված բնույթ են կրում՝ կապված դրանց բավարարման և նոր պահանջմունքների առաջացման տարբեր նախադրյալների հետ: Իսկ եթե այդ պահանջմունքների կազմավորման մեխանիզմում ի հայտ են գալիս հասարակականորեն անկառավարելի երևույթներ, ապա դրա հետևանքով ոչ միայն կարող են առաջ գալ նոր պահանջմունքների բավարարման մերժելի մղումներ, այլև սոցիալական այնպիսի միջավայր, որը ծնում է դժգոհություն, վատատեսություն, խաթարվում է հավատն ու համոզվածությունը, նվազում է սոցիալական ակտիվությունը: Միաժամանակ տիրապետող է դառնում անտարբերությունը, աստիճանաբար սոցիալական անարդարության շատ դրսևորումներ ազատ «քաղաքացիականություն» են ստանում: Այս բոլորը հետևանք է այն բանի, որ խելամտության բոլոր չափանիշներին համապատասխան պահանջմունքներ ունեցող մարդկանց մոտ փոխվում է վերաբերմունքը «փոքրիկ տան» նկատմամբ, այն դառնում է «մի ողորմելի խրճիթ»: Նման պարագայում պահանջմունքների բավարարվածության աստիճանը զգալիորեն իջնում է, խզում է առաջանում հասարակությունից անհատի սոցիալական ակնկալումների և ռեալ ստացածի միջև՝ որքան էլ վերջինս համապատասխանի իր աշխատանքային ներդրմանը: Նման երևույթները, որոնք սոցիալական և աշխատանքային ակտիվության նվազեցման էական պատճառ են հանդիսանում, վկայում են, որ սոցիալիզմի պայմաններում առաջ եկող ամեն մի հակասություն չէ, որ ունի օբյեկտիվ բնույթ, բնորոշ է սոցիալիզմին և հանդես է գալիս հակադրությունների միասնության ու պայքարի ձևով: Պրակտիկ կյանքում կարող են ծագել ու տեղ գտնել նաև այնպիսի հակասություններ, որոնք բնորոշ չեն սոցիալիստական արտադրահարաբերություններին, այլ առաջ են գալիս սուբյեկտիվիզմի, բյուրոկրատիզմի, սխալ իրականացվող քաղաքականության, կառավարման տարբեր օղակներում տեղ գտած թերությունների, սոցիալական անարդարության դրսևորումների հետևանքով և խոչընդոտում են մեր հասարակության առաջընթացին: Նման երևույթները կարող են ի հայտ գալ կենսագործունեության բոլոր ոլորտներում, իրենց կնիքը դնելով հասարակական հարաբերությունների վրա, բացասաբար անդրադառնալով սոցիալիստական անհատի ձևավորման, նրա կենսադիրքորոշման վրա: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում «...վերահսկողության թուլացման հետևանքով և մի շարք այլ պատճառներով հայտնվել են մարդկանց խմբեր՝ պարզորոշ արտահայտված սեփականատիրական ձգտումներով, հասարակական շահերի նկատմամբ արհամարհական վերաբերմունքով» (Մ. Ս. Գորբաչով, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումը ՍՄԿԿ XXVII համագումարին, «Հայաստան» հրատ., 1986 թ., էջ 76—77): Նման երևույթների կանխման, սոցիալական արդարության սոցիալիստական սկզբունքի հետևողական կենսագործման համար վճռական քայլ էր ՍՄԿԿ Կենտկոմի «Անաշխատ եկամուտների դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների մասին» որոշման ընդունումը: Սոցիալիզմի բնույթին խորթ անաշխատ եկամուտներն արմատախիլ անելը քաղաքական, սոցիալ-տնտեսական և դաստիարակչական կարևոր խնդիր է և դրա հաջողությամբ լուծումը մեծապես կնպաստի մարդկանց աշխատանքային ու սոցիալական ակտիվության հետագա բարձրացմանը: Ընդհանրապես պահանջմունքների ամեն մի շեղում իր բավարարման հասարակականորեն ընդունելի հնարավորություններից ուղղակիորեն առնչվում է անձի ակտիվության, գործելակերպի ու դրա նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքի հետ: Գործելակերպի նման մղումները փոխում են նաև մարդկանց վերաբերմունքը աշխատանքի արդյունքների նկատմամբ, աշխատողը շոշափելիորեն չի զգում իր և հասարակական շահերի ներդաշնակությունը: Ընդ որում, եթե մեծ են արդարացված սպասելիքները, մեծ է նաև ակտիվությունը, ձգտումը դրանց կենսագործման ռեալ հնարավորություններ ստեղծելում: Մյուս կողմից՝ եթե սպասելիքները չեն համապատասխանում իրենց բավարարման ռեալ հնարավորություններին, ապա կամ ծնվում է սոցիալական դժգոհություն, կամ էլ՝ այդ սպասելիքների կենսագործման հասարակականորեն անընդունելի մղումներ: Իրատեսորեն գնահատելով նման երևույթների առաջացման պատճառները, ՀԿԿ XXVIII համագումարը խնդիր դրեց. վճռականորեն մերժել այն ամենը, ինչը հակասում է սոցիալիստական ապրելակերպին, սոցիալական արդարությանը: Եվ, ինչպես նշեց համագումարում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը. «Ազնիվ, բարեխիղճ աշխատանքը պետք է լինի մարդու սոցիալական վարկի գլխավոր չափանիշը»: Ուստի, խելամիտ պահանջմունքների ձևավորման ամբողջ համակարգը՝ ներառելով սոցիալ-տնտեսական, դեմոգրաֆիական, բնակլիմայական և այլ օբյեկտիվ պայմանները, պետք է ունենա նաև անհատի սուբյեկտիվ մղումներով (ճաշակ, կարծիք, հակումներ և այլն) պայմանավորված գործոնների վրա ներազդելու ճկուն լծակներ:

Իրենց բնույթով առանձնանում են խելամիտ պահանջմունքների ձևավորման տնտեսական, սոցիալական, գաղափարադաստիարակչական և վարչական լծակները, որոնց հստակ տարբերակումը, դրանց կիրառման տեղի ու դերի ճիշտ որոշումը ներկայումս ձեռք է բերում մեծ կարևորություն: Ընդ որում տնտեսական լծակները, լինելով բազիսային հարաբերությունների կառավարման միջոցներ, առաջնային նշանակություն ունեն՝ մյուս բոլոր լծակների արդյունավետ ներգործության միջավայր ստեղծելու առումով: Իր հերթին տնտեսական լծակների ներգործությունը պայմանավորված է մի կողմից՝ այդ լծակների համակարգի կատարելությամբ, ճկունությամբ, դրանց խելամիտ գործադրման ունակությամբ, մյուս կողմից՝ այդ լծակների կիրառման համապատասխան սոցիալական ու գաղափարաբարոյական միջավայրի առկայությամբ: Ուստի երկու դեպքում էլ խելամիտ պահանջմունքների ձևավորման սոցիալ-տնտեսական անհրաժեշտ նախադրյալների ստեղծման հիմնական պայմանը սոցիալիստական ինքնավարման հետագա խորացման հիման վրա տնտեսավարման մեխանիզմի հետևողական կատարելագործման ՍՄԿԿ XXVII համագումարի կողմից մշակված կուրսի և սոցիալական արդարության սոցիալիստական սկզբունքի անշեղ կենսագործումն է:

---

# ՍԹԱՓ ԵՎ ԱՌՈՂՋ ԿԵՆՑԱՂԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Ռ. ՊԵՏՈՅԱՆ
Ս. ՍԱՔԱՆՅԱՆ

ՍԹԱՓ ԵՎ ԱՌՈՂՋ ԿԵՆՑԱՂԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ սոցիալիստական հասարակարգի, սովետական ապրելակերպի բնորոշ առանձնահատկությունն է, պայմանավորված է մեր երկրի տնտեսական ու սոցիալական առաջընթացով: «Հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մայիսին ընդունած որոշման մեջ ասվում է, որ ժամանակակից պայմաններում, երբ է՛լ ավելի են բացահայտվում մեր սոցիալիստական կարգի ստեղծարար ուժը, սովետական ապրելակերպի առավելությունները, առանձնակի նշանակություն են ստանում կոմունիստական բարոյականության սկզբունքների հետագա կիրառումը, վնասակար սովորույթների և մնացուկների, առաջին հերթին այնպիսի այլանդակ երևույթների հաղթահարումը, ինչպիսիք են հարբեցողությունը, սպիրտային խմիչքների չարաշահումը:

Հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարումը դիտելով որպես քաղաքական մեծ կարևորության սոցիալական խնդիր՝ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական, սովետական և մյուս մարմիններից պահանջեց կազմակերպչական, վարչաիրավական և դաստիարակչական համակողմանի աշխատանք ծավալել հակաալկոհոլային պայքարն ուժեղացնելու և դրա արդյունավետությունը բարձրացնելու համար: Այդ խնդիրը սրությամբ առաջ քաշվեց նաև կուսակցության XXVII համագումարում: Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ հանուն հասարակության և մարդու առողջության մենք դիմեցինք վճռական միջոցների, պայքար սկսեցինք այն ավանդույթների դեմ, որոնք առաջացել ու արմատավորվել էին դարերով: Համագումարը խնդիր դրեց շարունակել հետևողական պայքարը հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ: «...Այսուհետև էլ մեծ, հաստատակամ, բազմազան աշխատանք տանել՝ ստեղծված սովորույթների մեջ վերջնական բեկում ապահովելու համար: Այստեղ ոչ մի թուլացում չպետք է լինի»:

Այս խնդիրների շուրջ էլ ծավալվեց մեր զրույցը ՀԿԿ Վարդենիսի շրջկոմի առաջին քարտուղար Մ. Գրիգորյանի հետ: Այդ զրույցից, բնակավայրերում ու զանազան օբյեկտներում մեր կատարած դիտումներից և ուսումնասիրություններից պարզորոշ երևաց, որ հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի վերաբերյալ կուսակցության հրատապ պահանջները գործողության ուղեցույց են դարձել շրջանային կուսակցական կազմակերպության համար և իրականացվում են հետևողականորեն: Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները բյուրոյի նիստերում ու կուսակցական ժողովներում ժամանակին և գործարար մթնոլորտում քննարկել են հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը և կանխորոշել իրենց, մյուս մարմինների ու կազմակերպությունների անելիքները՝ շրջանի տարածքում այդ վնասակար երևույթները կանխելու և իսպառ վերացնելու համար: Շրջկոմն իր մշակած միջոցառումների պլանով այդ առնչությամբ կոնկրետ խնդիրներ է առաջադրել շրջկոմի և շրջսովետի գործկոմի բաժիններին, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, ժողովրդական վերահսկողության, տնտեսական ու իրավապահպան մարմիններին, բնակչության սպասարկման հիմնարկություններին:



Եվ, ամենակարևորը, կուսշրջկոմը խիստ հսկողություն է սահմանում այդ պլանի իրագործման նկատմամբ, մշտապես հաշիվ պահանջում դրա համար պատասխանատու յուրաքանչյուր կազմակերպությունից ու պաշտոնական անձանցից: Հատկանշական է, որ հետագայում ևս շրջկոմը քանիցս անդրադարձել է հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ տարվող պայքարի հարցերին, պարզել, թե տեղերում ինչպես են կատարվում ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջները:

Քննարկումների ընթացքում դրական աշխատանքի ընդհանրացման հետ միասին բացահայտվել են սթափ և առողջ կենցաղավարության գործում տեղ գտած թերությունները ու թերացումները: Այսպես, անցած տարվա դեկտեմբերին նախապես հանգամանորեն ուսումնասիրվեց և կուսշրջկոմի բյուրոյում քննարկվեց հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման միջոցառումների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշման կենսագործման ընթացքը: Նշվեց, որ սթափության համար տարվող պայքարը մշտական բնույթ է կրում, էապես բարելավվել են կուլտուր-լուսավորական և ֆիզկուլտուրային աշխատանքները, կազմակերպվում են աշխատավորական, երիտասարդական և մանկական ժամանակակից տոներ, «անալկոհոլ» հարսանիքներ և այլ միջոցառումներ, որոնք մեծապես նպաստում են սպիրտային խմիչքների օգտագործման կրճատմանը, մարդկանց զերծ պահում ալկոհոլիզմի չարիքից:

Բյուրոն միաժամանակ արձանագրեց, որ դեռևս հակաալկոհոլային աշխատանքում կան թերություններ: Առանձին գյուղերում և հիմնարկ-ձեռնարկություններում հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ տարվող աշխատանքը կրում է ոչ սիստեմատիկ բնույթ, վատ են օգտագործվում հասարակական-դաստիարակչական ներգործության հնարավորությունները:

Սթափ ապրելակերպը արմատավորելու նպատակով սահմանվեցին սկզբնական կուսկազմակերպությունների, սթափության համար պայքարի շրջանային խորհրդի, սովետական ու տնտեսական մարմինների, արհմիութենական, կոմերիտական, սպորտային կազմակերպությունների, բուժհիմնարկների կոնկրետ անելիքները: Մասնավորապես խնդիր դրվեց 1986 թվականին ընդլայնել թեյարանների, սրճարանների, ոչ ալկոհոլային խմիչքների և զովացուցիչ ջրերի, հրուշակեղենի և կաթնամթերքի վաճառքի ցանցը, արդյունավետորեն կազմակերպել աշխատավորների, հատկապես երիտասարդության ազատ ժամանակը, նրանց ժամանցը:

Ընթացիկ տարվա հունվարին կուսշրջկոմը վերստին, այս անգամ առավել համակողմանիորեն, ուսումնասիրեց հարբեցողության և ալկոհոլիզմի հաղթահարման նպատակով տարվող աշխատանքի վիճակը: Նշվեց, որ այդ բնագավառում կուսակցության վարած կուրսը արժանացել է շրջանի աշխատավորության հավանությանն ու աջակցությանը, սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած պայքարը առավել ակտիվ ու հետևողական բնույթ է կրում, այդ գործում նրանք ներգրավում են մեծ թվով ակտիվիստներ, իրականացնում նախականխող միջոցառումներ: Այդ ամենի շնորհիվ շրջանում նկատելիորեն նվազել են ալկոհոլային խմիչքների վաճառքն ու օգտագործումը, զանցանքներն ու հանցանքները:

Շրջկոմը իրավապահպան մարմինների առջև խնդիր դրեց բարձրացնել պրոֆիլակտիկ միջոցառումների արդյունավետությունը, կոորդինացնել ժողդրուժինաների, ընկերական դատարանների և հասարակական մյուս կազմակերպությունների հակաալկոհոլային աշխատանքը: Շրջանային, գյուղական և ավանային սովետների գործկոմներին, տնտեսությունների և հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին հանձնարարվեց սոցիալ-տնտեսական պլաններում նախատեսել կոլեկտիվների և բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման միջոցառումներ, աշխուժացնել ակումբային և մարզական հիմնարկությունների աշխատանքը, հարստացնել նրանց նյութական բազան: Սկզբնական կուսկազմակերպություններից, շրջանային թերթի խմբագրությունից, ՀԼԿԵՄ շրջկոմից մասնավորապես պահանջվեց ուժեղացնել հակաալկոհոլային պրոպագանդայի ներազդեցությունը, բարձրացնել դրա արդյունավետությունն ու որակը, մշտապես պրոպագանդել առանց ալկոհոլային խմիչքների ծեսերի ու հանդեսների կազմակերպման պրակտիկան, ցույց տալ սթափ կենցաղավարության սոցիալ-տնտեսական հսկայական նշանակությունը: Առևտրական կազմակերպություններին հանձնարարվեց վճռական միջոցներ ձեռնարկել ապրան-

քաշրջանառության կառուցվածքը կատարելագործելու, առաջին անհրաժեշտության ապրանքների նկատմամբ բնակչության պահանջարկը բավարարելու, ալկոհոլային խմիչքների վաճառքի գործում նկատվող թերությունները ու վրիպումները արագորեն վերացնելու համար, արմատապես բարելավել հասարակական սննդի օբյեկտների, մասնավորապես, բանվորական ճաշարանների աշխատանքը:

Շրջկոմը հետևողականորեն խորամուխ է լինում սթափ և առողջ կենցաղավարության արմատավորման մեջ, դրան առնչվող հարցերը հարկ եղած դեպքում դարձնում գործարար քննարկման առարկա: Սակայն նա չի սահմանափակվում սոսկ ուսումնասիրություններով ու քննարկումներով, այլև մշտապես հետևում է իր ընդունած որոշումների կենսագործմանը, տված հանձնարարությունների կատարմանը, զուգակցում կազմակերպչական և դաստիարակչական միջոցները: Շրջկոմը ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լույսի ներքո պարբերաբար լսում է արտադրության տարբեր օղակների ու տեղամասերի ղեկավարների հաղորդումները՝ աշխատավորական կոլեկտիվներում ալկոհոլային խմիչքների չարաշահումների դեմ պայքարի գործում նրանց անձնական մասնակցության մասին: Այդ առնչությամբ շրջկոմին հաշիվ են տվել իրավապահպան ու առողջապահական մարմինների, ձեռնարկությունների, առևտրական և այլ կազմակերպությունների ղեկավարներ: Շրջանային խորհրդակցությունում հանգամանորեն պարզաբանվել և կանխորոշվել են ըստ բնակության վայրի և աշխատանքային տեղամասերի հակաալկոհոլային աշխատանք ծավալելու ասպարեզում տեղական կազմակերպությունների խնդիրները:

Ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմը ժամանակին հաստատել է ալկոհոլային խմիչքներ վաճառող մանրածախ առևտրի ու հասարակական սննդի օբյեկտների ցանկը, սահմանել դրանց վաճառքի գրաֆիկը և մշտապես հետևում է, որպեսզի չխախտվի հաստատված կարգը:

Ժողովրդական վերահսկողության շրջանային կոմիտեն հրավիրել է վերահսկողության խմբերի նախագահների և արտահաստիքային աշխատողների խորհրդակցություն, նախատեսել նրանց խնդիրները հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ տարվող պայքարում:

— Սթափ ապրելակերպի և առողջ կենցաղավարության արմատավորման նպատակով,— ասում է կուսշրջկոմի առաջին քարտուղարը,— ակտիվ գործունեություն են ծավալում սկզբնական կուսկազմակերպությունները: Նրանք կուսակցական ժողովներում և բյուրոների նիստերում պարբերաբար քննարկում են ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարի վիճակը, լսում ղեկավար և միջին օղակի կադրերի, կոմունիստների հաշվետվությունները ու հաղորդումները այդ ասպարեզում նրանց ծավալած աշխատանքի մասին: Շատ հիմնարկ-ձեռնարկությունների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպություններին առընթեր ստեղծվել են հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի կուսակցական, իսկ խոշոր գյուղերում (Ակունք, Ծովակ, Կարճաղբյուր, Մեծ Մազրա և այլն)՝ նաև թաղամասային հանձնաժողովներ:

Ակունքի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը սթափ ապրելակերպի ապահովումը համարում է իր հիմնական խնդիրներից մեկը, ժողովներում ու բյուրոյի նիստերում մշտապես անդրադառնում է այդ հարցին: Ակտիվորեն է գործում կուսբյուրոյին առընթեր կուսակցական հանձնաժողովը՝ գյուղսովետի գործկոմի նախագահ Ֆ. Մովսիսյանի գլխավորությամբ: Թաղամասային հանձնաժողովները նույնպես պարբերաբար գումարում են նիստեր, կարգի հրավիրում ոգելից խմիչքները չարաշահողներին, անհատական աշխատանք տանում բնակիչների շրջանում:

Լճավանի պետական տնտեսության կուսկազմակերպությունը, քննարկելով հարբած վիճակում հասարակական վայրեր այցելած բանվոր Թ. Մանուկյանի հարցը, գործը հանձնել էր ընկերական դատարանին: Հասարակական նման միջամտությունը բարերար ներգործեց նրա վրա: Նա այժմ նորից դարձել է կոլեկտիվի լիիրավ անդամը:

Շրջկոմը հակաալկոհոլային պայքարի գործում էապես ուժեղացրել է պահանջկոտությունը հատկապես այն կոմունիստների նկատմամբ, ովքեր սպիրտային խմիչքներ օգտագործելու հակում ունեն, ինչպես նաև այն ղեկավարների նկատմամբ, ովքեր խուսափում են մասնակցել ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարին, չեն կանխում



հարբեցողության դեպքերը, անտարբերություն են ցուցաբերում դրանց նկատմամբ: Այսպես, Գյունաշլիի տնտեսության զոոինժեներ Զ. Զավադովը Կիրովաբադ քաղաքում հարբած վիճակում վարել է իր անձնական օգտագործման մեքենան: Պետավտոտեսչության աշխատողները արձանագրել են այդ փաստը և հայտնել Վարդենիսի շրջմիլբաժնին: Սակայն տնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը սկզբունքային գնահատական չի տվել նրա վարքագծին և բավարարվել է նկատողություն անելով: Կուսշրջկոմի բյուրոն չի հաստատել կազմակերպության որոշումը և Զ. Զավադովին հայտարարել է խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական հաշվառման քարտում:

Կամ մեկ ուրիշ օրինակ. Ն. Շորժայի տնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու Ի. Վալինին կուսակցական տույժի է ենթարկել հարբեցողությամբ զբաղվելու և սոցիալիստական համակեցության կանոնները խախտելու համար, մինչդեռ շրջկոմի բյուրոն իրավացի կերպով կուսակցության մեջ նրա մնալը համարել է անհամատեղելի:

Շրջկոմը կոորդինացնում է շրջանային մարմինների ու կազմակերպությունների ջանքերը սոցիալական այդ չարիքն արմատախիլ անելու գործում: Մասնավորապես ուսանելի է ժողվերահսկողության շրջկոմի և շրջկոոպի, իրավապահպան ու առողջապահական մարմինների, ավտոձեռնարկության ու ավտոտեսչության և այլ մարմինների համագործակցության փորձը: Ժողվերահսկողության շրջկոմի և շրջկոոպի խմբի ստուգման արդյունքների հիման վրա շրջկոոպի վարչությունը մի շարք պատասխանատու վաճառողների ենթարկել է համապատասխան տույժերի: Իրավապահպան մարմինները կազմել են համատեղ օպերատիվ միջոցառումների պլան և յուրաքանչյուր ամիս ամփոփում են դրա կատարման արդյունքները: Ներքին գործերի բաժինը միջոցներ է ձեռնարկում հասարակական վայրերում հարբեցողության և ալկոհոլային խմիչքների օգտագործումը կանխելու համար: Այդ նպատակով որոշակի աշխատանք է տարվում կամավոր ժողովրդական դրուժինայի, ընկերական դատարանների, իրավախախտումների կանխման խորհուրդների, կարգուկանոնի պահպանման հասարակական կետերի և այլ կազմակերպությունների հետ: Խիստ հսկողություն է սահմանվում ինքնաթոր խմիչքների պատրաստումը կանխելու և արմատախիլ անելու համար:

Ձեռնարկված պրոֆիլակտիկ միջոցների շնորհիվ խիստ նվազել է հարբած վիճակում հանցանքներ ու զանցանքներ կատարող անձանց թիվը: Ներքին գործերի բաժնի պետավտոտեսչությունը պարբերաբար անցկացնում է ստուգայցեր՝ ալկոհոլ օգտագործած վիճակում ավտոմեքենա վարելը կանխելու նպատակով: Անցած տարի 15 վարորդներ զրկվել են վարորդական իրավունքից, մի քանիսն ստացել են վարչական տույժեր:

Շրջկոմի և իրավապահպան մարմինների նախաձեռնությամբ կազմակերպվել է հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի մասնագիտացված դրուժինա, որի խմբերում ընդգրկվել են սթափության համար պայքարի ընկերության և հիմնարկ-ձեռնարկությունների դրուժինաների անդամները: Հսկողության է ենթարկված ալկոհոլային խմիչքների վաճառքը առևտրի օբյեկտներում սահմանված կարգով ճշտորեն կատարելու նկատմամբ:

Ալկոհոլիզմը և հարբեցողությունը հաղթահարելու գործում խոշոր անելիքներ ունեն առևտրական կազմակերպությունները: Հարկ է նշել, որ նրանց ղեկավարները ու կուսկազմակերպությունները լուրջ հետևություն են արել իրենց հասցեին արված քննադատությունից և որոշակի քայլերի դիմել կուսակցության պահանջները անվերապահորեն կատարելու համար: Վերապրոֆիլացվել են հասարակական սննդի օբյեկտները, ալկոհոլային խմիչքների վաճառքը կենտրոնացվել սահմանափակ կետերում, զգալիորեն ընդլայնվել է ոչ ալկոհոլային խմիչքների, մրգահյութերի, հրուշակեղենի վաճառքը: Շրջկենտրոնի ռեստորանը կերպարանափոխվել է: Առաջին հարկը վերածվել է թխվածքի սրահի, իսկ երկրորդը՝ հյութերի վաճառքի սրահի և թեյարանի: Նման բարեփոխման է ենթարկվել նաև Զոդի բանվորաբաժնի ռեստորանը: Այդ ամենի շնորհիվ անցած տարվա հունիս—դեկտեմբեր ամիսների ընթացքում ալկոհոլային խմիչքների վաճառքը, 1984 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, մանրածախ առևտրի համակարգում նվազել է 20 տոկոսով, իսկ

հասարակական սննդի օբյեկտներում՝ երկուսուկես անգամ: Նույն տենդենցը նկատելի է նաև ընթացիկ տարում: Շրջանի առևտրական կազմակերպությունները միջոցներ են ձեռնարկում հանքային ջրերի, հյութերի, հրուշակեղենի վաճառքի նոր կետեր բացելու և մանրածախ առևտրի ցանցը ընդլայնելու համար:

Կուսշրջկոմն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում հակաալկոհոլային պրոպագանդայի ներազդեցության ուժեղացմանը: Այդ նպատակով անցկացվել են սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների, պրոպագանդիստների, քաղինֆորմատորների ու ագիտատորների, «Գիտելիք» ընկերության դասախոսների, կուլտլուսհիմնարկությունների աշխատողների խորհրդակցություններ, որտեղ պարզաբանվել են նրանց խնդիրներն ու անելիքները՝ հակաալկոհոլային պրոպագանդան ու ագիտացիան լայնորեն ծավալելու և կատարելագործելու ասպարեզում:

Շրջկոմը հաստատել է հակաալկոհոլային պրոպագանդայով զբաղվող դասախոսների կազմը, ըստ եռամսյակների պլանավորել նրանց կատարելիք աշխատանքը: Անցած ժամանակաշրջանում աշխատավորների համար կարդացվել են այդ թեմաներով բազմաթիվ դասախոսություններ: Վերջերս անցկացվեց «Առողջ ապրելակերպ՝ նշանակում է արմատախիլ անել վնասակար սովորությունները» թեմայով գիտագործնական կոնֆերանս, որտեղ զեկուցումներով հանդես են եկել շրջանի պատասխանատու աշխատողները: Քաղպարապմունքների ընթացքում, ծրագրային թեմաներին զուգահեռ, պրոպագանդիստներն ունկնդիրներին իրազեկ են պահում գյուղում, շրջանում, հանրապետությունում հարբեցողության դեմ մղվող պայքարի վիճակին ու արդյունքներին:

Շրջանային «Վարդենիս» թերթը պարբերաբար հրապարակում է այդ խնդրին վերաբերող ուշագրավ հոդվածներ, որոնցով հանդես են գալիս իրավապահպան և առողջապահական մարմինների պատասխանատու աշխատողները: Թերթի խմբագրությունը սերտորեն համագործակցում է ԼԿԵՄ շրջկոմի, պետավտոտեսչության, սթափության կամավոր ընկերության շրջխորհրդի հետ: Նրանք անցկացնում են ստուգայցեր, ընդհանրացնում սթափ և առողջ կենցաղավարության ուսանելի փորձը, քննադատում այդ գործում տեղ գտած թերություններն ու թերացողներին, լուսաբանում հակաալկոհոլային պայքարի դրվածքը:

Սթափ և առողջ կենցաղավարության արմատավորման գործում կուսակցությունը մեծապես կարևորում է աշխատավորության, հատկապես երիտասարդության ազատ ժամանակի խելամիտ և արդյունավետ կազմակերպումը: Այս ասպարեզում շրջկոմի և սկզբնական կազմակերպությունների ծավալած գործունեությանը նոր լիցք հաղորդեց «Ակումբային հիմնարկությունների և մարզական կառույցների օգտագործման բարելավման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Ուղեցույց ունենալով որոշման պահանջները՝ նրանք ուժեղացրել են հսկողությունը կուլտլուսհիմնարկությունների, կինոցանցի, մարզական կազմակերպությունների նկատմամբ, բարձրացրել նրանց պատասխանատվությունը աշխատավորների ժամանցի անցկացման, ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարի գործում: Ակումբների, կուլտուրայի տների, գրադարանների զգալի մասում ստեղծվել են մարդկանց հանգստի կազմակերպման անհրաժեշտ պայմաններ:

Մի հոյակերտ շինություն է Ակունք գյուղի կուլտուրայի տունը՝ 600 և 280 տեղանոց դահլիճներով, խաղասենյակներով, գրադարան-ընթերցարանով, այլևայլ հարմարություններով: Ժողգործիքների, ազգագրական երգի-պարի, մեծահասակների ու մանկական թատերական խմբակներում ընդգրկված են մեծ թվով կոլտնտեսականներ ու դպրոցականներ: Նրանք պարբերաբար հանդես են գալիս համերգներով աշխատավորների առջև: Աշխատանքից ազատ ժամերին կուլտուրայի տունը միշտ էլ մարդաշատ է: Երիտասարդներն այստեղ զբաղվելու շատ բան ունեն՝ բիլյարդ, սեղանի թենիս, շաշկի, շախմատ, նարդի, կինոնկարի դիտում: Առանձին հարմարեցված սենյակներում զբաղվում են կարուձևի, «հմուտ ձեռքեր» խմբակների անդամները: Շատերն էլ իրենց հանգիստն անցկացնում են գրադարան-ընթերցարանում:

Հակաալկոհոլային պայքարում կուլտուրայի տունը (դիրեկտոր՝ Օ. Սիմոնյան) կազմակերպում է բազմազան միջոցառումներ՝ զրույց-դասախոսություններ, մեծարման և այլ երեկոներ: Հիշարժան են «Ձեզ տեսնենք, աղջիկներ», հարբեցողությունը ծաղրող երգիծական-կատակ երեկոները և այլ միջոցառումներ: Պարբերաբար գրքի



կոլեկտիվ քննարկումներ են կազմակերպվում գրադարանում: Ինչպես կուլտուրայի տանը, այնպես էլ գրադարանում ստեղծվել են ալկոհոլիզմի դեմ պայքարի անկյուններ, ուր կան այդ երևույթի վնասակարությունը բացահայտող գրականություն, թերթեր և ամսագրեր, ցուցադրական զանազան միջոցներ: Հատկանշական է, որ այս խոշոր գյուղում ալկոհոլային խմիչքների վաճառքը չնչին քանակություն է կազմում, վերացել են հարբեցողության և սոցիալիստական համակեցության կանոնների խախտման դեպքերը:

Ակունքի օրինակը եզակի չէ: Այդպես է դրվածքը նաև Ծովակի, Նորակերտի, Փոքր Մազրայի, գորգի ֆաբրիկայի, ավտոձեռնարկության մշակույթի օբյեկտներում: Խրախուսելի է հատկապես շրջանային կուլտուրայի տան գործունեությունը: Այս օջախը մի տեսակ ձգողական ուժ ունի իր գեղարվեստական ինքնագործունեության խմբերի շնորհիվ: Ժողովրդական ու մանկական թատրոնները, ժողովրդական ու վոկալ գործիքների, մեծահասակների և մանկական պարի խմբերը ոչ միայն գեղագիտական հաճույք են պատճառում շրջկենտրոնի աշխատավորությանը, այլև գյուղական բնակչության ցանկալի հյուրն են: Երիտասարդությունն իր ակտիվ հանգիստը հաջողությամբ է անցկացնում նաև Ձորի հանքերի կուլտուրայի պալատում: Այստեղ ևս հաճախակի են կազմակերպվում կուլտուր-մասսայական զանազան միջոցառումներ:

Վերջին շրջանում լուրջ տեղաշարժ է նկատվում նաև մարզական կյանքում: Կուսշրջկոմի բյուրոյի որոշմամբ հանրակրթական դպրոցների մարզադահլիճներն ու պարզ տիպի խաղահրապարակները դասերից հետո տրամադրվում են գյուղական երիտասարդությանը, որի շնորհիվ վերջին մեկ տարում 2.900 մարդով ավելացել է սպորտով զբաղվողների թիվը: Շրջանում արմատավորվում են տափօղակով հոկեյի և թեթև ատլետիկայի մարզաձևերը:

Ավանդույթ են դարձել կուլտուր-մասսայական և սպորտային համատեղ միջոցառումները: ԼԿԵՄ շրջկոմի, շրջանային կուլտուրայի բաժնի և ֆիզկուլտկոմիտեի նախաձեռնությամբ բարձր մակարդակով են անցնում «Վարդենիսի ձմեռ», «Բոլորը՝ դահուկների վրա», «Բերքի տոն», «Հովվի տոն» և այլ միջոցառումներ: Ի դեպ, շրջանային կոմերիտական կազմակերպությունը, ինչպես ասում են, հակաալկոհոլային պայքարի առաջին բնագծում է: ԼԿԵՄ շրջկոմը մշտապես այդ պայքարը խթանող զանազան միջոցներ է ձեռնարկում:

Այժմ շրջանի կոմերիտականներն ու երիտասարդները հարբեցողության ու ալկոհոլիզմի երևույթների դեմ անհանդուրժողականության մթնոլորտ են ստեղծել: «Կոմերիտական լուսարձակի» էջերում զետեղվում են ալկոհոլի վնասակարության և դրա նկատմամբ հակում դրսևորողների մասին նյութեր:

Հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող պայքարը կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպությունները սերտորեն շաղկապում են աշխատանքային կարգապահության ամրապնդման, կարգուկանոնի հաստատման նպատակով տարվող աշխատանքի հետ: Իրականացված արդյունավետ միջոցառումների շնորհիվ նախորդ տարիների համեմատությամբ կրկնակի կրճատվել են աշխատաժամանակի կորուստները, հասցվել նվազագույնի, իսկ կոլեկտիվների ճնշող մասում իսպառ վերացվել են գործալքումները, անհարգելի բացակայություններն ու ուշացումները: Եվ այդ ամենը բարերար ազդեցություն է գործել արտադրական խնդիրների լուծման վրա:

Չնայած այս ամենին, շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները շատ անելիքներ ունեն հատկապես մարդկանց ազատ ժամանակի արդյունավետ անցկացումը կազմակերպելու ասպարեզում: Բանն այն է, որ մի շարք գյուղերում ակումբային շենքերի վթարային վիճակի պատճառով երիտասարդության հանգիստը վատ է կազմակերպվում: Ընթացիկ հնգամյակում շրջանում կկառուցվեն մի քանի մշակութային օբյեկտներ, իսկ շատ տեղերում կկարգավորվեն ակումբային շենքերը, զարկ կտրվի սոցիալական զարգացմանը, կձեռնարկվեն բազմաբնույթ միջոցներ սթափ ու առողջ կենցաղավարությունը լիովին արմատավորելու համար:

# ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Արդի ազգային-ազատագրական* հեղափոխությունների պրոբլեմներն իրենց զարգացման նոր փուլում ձեռք են բերում առանձնահատուկ հրատապություն, տեսական ու քաղաքական մեծ կարևորություն։ Դա ամենից առաջ վերաբերում է կապիտալիզմից դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ մարդկության անցման պրոցեսում այդ հեղափոխությունների պատմական տեղի որոշմանը։ Վերջինիս հետ, իրենց հերթին, սերտորեն կապված են նաև դրանց բնույթի և շարժիչ ուժերի՝ որպես հեղափոխական պրոցեսի հատուկ տեսակի, յուրահատկության հարցերը։ Օրինաչափ է, որ ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերում, առաջին հերթին, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ նորովի են ձևակերպված որոշ դրույթներ՝ կապված համաշխարհային հեղափոխական պրոցեսում և համաշխարհային զարգացման մեջ ազատագրված երկրների տեղի ու դերի որոշման, աշխարհի հեղափոխական նորացման գործում ազգային-ազատագրական պայքարի նշանակության աճի հետ։

60—80-ական թվականների ազգային-ազատագրական հեղափոխությունները զարգանում են պատմականորեն միանգամայն նոր ազգային ու միջազգային պայմաններում։ Նախ, արմատապես փոխվել է դրանց վրա միջազգային գործոնի ազդեցության բնույթը։ Համաշխարհային երկու հակադիր հասարակական սիստեմների միջև ուժերի նոր հարաբերակցությունը, համաշխարհային սոցիալիզմի՝ միջազգային զարգացման վճռական գործոնի վերածվելը ազգային-ազատագրական պայքարի հետագա աճի ու խորացման համար ստեղծում են բացառիկ բարենպաստ արտաքին պայմաններ։ Երկրորդ, այդ շարժումները գաղութային վարչակարգերի վերացման և ինքնուրույն ազգային պետությունների երևան գալու ներկա պայմաններում վերածվել են պետականորեն կազմակերպված ուժի, ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարը հանուն ազգային-ազատագրական խնդիրների լուծման զարգանում է պետական-քաղաքական շրջանակներում ու ձևերում։ Այդ պայքարի խորությունն ու թափը, նրա հաջողությունները կարող են որոշակի ներքին և արտաքին քաղաքականության հետևանք լինել, որի մշակումն ու իրականացումը այժմ հենց ազատագրված երկրների պետությունների ֆունկցիան է։ Դրանում է ազգային-ազատագրական պայքարի զարգացման արդի փուլի արմատական նոր գիծը։

Այդ պայքարի ներքին բովանդակության ու բնույթի ուսումնասիրումը, նրա օբյեկտիվ խնդիրներն ու հակասությունները, որոնք կյանքի են կոչել այդ շարժումները, վկայում են, որ այդ պայքարը տակավին չի սպառել իր ազգային-ազատագրական առանձնահատկությունը։ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում ամենայն որոշակիությամբ արտահայտված է այդ դրույթը։ Ամենից



առաջ նշվում է այն գաղափարը, որ իմպերիալիզմի գաղութային սիստեմի խորտակմամբ և համաշխարհային ասպարեզում ավելի քան հարյուր նոր, երիտասարդ պետությունների երևան գալով ազգային-ազատագրական պայքարը պատմության գիրկը չի անցնում։ Ծրագրում ընդգծված է, որ մեր դարաշրջանը «...սոցիալիստական ու ազգային-ազատագրական հեղափոխությունների» դարաշրջանն է, այսինքն՝ ազգային-ազատագրական պայքարը ողջ արդի դարաշրջանի, այլ ոչ թե նրա սկզբնական փուլերի օրինաչափությունն է։ Սահմանելով միջազգային ասպարեզում կուսակցության խնդիրները, ծրագիրը որպես ՍՄԿԿ-ի միջազգային քաղաքականության կարևոր ուղղություն նշում է ինտերնացիոնալ համերաշխությունը «...միջազգային բանվորական շարժման, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետ»։

Կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ ասվում է. «Սոցիալական առաջադիմության ընթացքը սերտորեն կապված է հակագաղութային հեղափոխությունների, ազգային-ազատագրական շարժման... հետ»։ Զեկուցման մի այլ տեղում մատնանշվում է. «Անփոփոխ են մնում ՍՄԿԿ համերաշխությունը ազգային և սոցիալական ազատագրության ուժերի հետ...» և բացատրվում է, որ խոսքը վերաբերում է սոցիալիստական կողմնորոշման երկրների, հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների, չմիանալու շարժման հետ սերտ փոխգործողության գծին։ Ինչպես երևում է, կուսակցության համագումարում հաստատված կարևորագույն փաստաթղթերը պարզ ու միանշանակ հավաստում են ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարի ազգային-ազատագրական յուրահատկությունը։

Միաժամանակ ՍՄԿԿ ծրագրում նոր տեսական դրույթների ձևով արտացոլվել են նաև այդ պայքարի նոր երևույթները։ Ամենից առաջ անհրաժեշտ է առանձնացնել բացառիկ կարևոր այն հետևությունը, որ «համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասն է գաղութային լուծը թոթափած ժողովուրդների և երկրների հակաիմպերիալիստական պայքարը հանուն իրենց անկախության ամրապնդման, հանուն սոցիալական առաջադիմության»։ Այս դրույթում տեսականորեն արտահայտված է ազգային-ազատագրական պայքարի ներկայիս կոնկրետ պատմական յուրահատկությունը, դրա կարևորագույն գիծը. համաշխարհային ասպարեզում այն հանդես է գալիս որպես պետականորեն կազմակերպված ուժ։

Այսօր ազատագրված երկրների շրջանակներից դուրս գործնականորեն արդեն չկա ազգային-ազատագրական պայքար, եթե չհաշվենք ապարտեիդի դեմ մղվող պայքարը և դեռևս առկա մի քանի մանր գաղութային տիրույթները։ Իմպերիալիզմին, նրա նեոգաղութատիրական քաղաքականությանն ու պրակտիկային դիմակայում է ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարը, որոնք այդ պայքարում որպես հզոր զենք օգտագործում են պետական իշխանությունը։ Ազատագրված երկրներում այդ պայքարի բնույթն ու ուղղվածությունը, խորքային հասարակական պրոցեսների բովանդակությունը և ձևերն ըմբռնելու համար պետք է կրկին վերադառնալ ազգային-ազատագրական պայքարի՝ որպես հեղափոխական պրոցեսի հատուկ տեսակի, յուրահատկության հարցին։ Այս խնդրում լիակատար պարզությունը կարևոր է նաև ժամանակակից ազգային-ազատագրական հեղափոխությունների պատմական տեղին գիտականորեն հիմնավորված սահմանում տալու համար։

Գաղութային լծի դեմ ժողովուրդների պայքարն անցյալում, նեոգաղութատիրության դեմ՝ այսօր, խորքային այն պրոցեսները, որոնք նեոգաղութատիրության դեմ մղվող պայքարի ընթացքում զարգանում են ազատագրված երկրների հասարակական կյանքում, կրել և կրում են ազգային-ազատագրական առանձնահատկություն, դրանցում էական տեղ է զբաղեցնում ազգային հանգամանքը։ Դա ինքնին ակնհայտ է, երբ խոսքը վերաբերում է գաղութային վարչակարգերի դեմ մղվող պայքարին՝ հանուն գաղութատիրության լծի վերացման և ինքնուրույն ազգային պետությունների ստեղծման։ Խնդիրն ավելի է բարդանում, երբ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարը շարունակվում է

գաղութային վարչակարգերի և դրանց հետ կապված ազգային-գաղութային լծի, քաղաքական ստրկացման ուղղակի ձևերի վերացման պայմաններում:

Արդի դարաշրջանում բոլոր հեղափոխական ու ազատագրական պրոցեսներում շեշտակի աճում է միջազգային գործոնի դերը՝ ինչպես դրանց զարգացման տեմպերի, այնպես էլ բովանդակության հայտնի փոփոխությունների ու տեղաշարժերի իմաստով: Դա լիովին վերաբերում է նաև ազգային-ազատագրական շարժմանը: Օբյեկտիվ հակասությունները, որոնք կյանքի են կոչել այդ շարժումները, օբյեկտիվ խնդիրները, որոնք ծառացած են դրանց առջև, լուծվում են ոչ միայն ազգային, այլև միջազգային հիմքի վրա: Ընդ որում ազգային ազատագրության խնդրում այդ գործոնն այսօր ստանում է առանձնահատուկ կարևոր նշանակություն:

Ամենից առաջ հարկ է նշել, որ ազգային-ազատագրական պայքարը անցյալում ևս, ուղղված լինելով գաղութային վարչակարգերի դեմ, միաժամանակ հանդես էր գալիս նաև որպես հակաիմպերիալիստական պայքար: Իմպերիալիզմը և ֆինանսական կապիտալը, ստեղծելով ազգերի ճնշում նոր պատմական հիմքի վրա, նորովի են սահմանել նաև ազգային ազատագրության պրոբլեմի բովանդակությունը: Նախ, իմպերիալիզմը տակավին XX դարի սկզբին է սկսել ստրկացված երկրների ազգային տնտեսությունների ինտեգրացման պրոցեսն իր համաշխարհային տնտեսական համակարգում՝ որպես վերջինիս հետամնաց, կախյալ ու շահագործվող օղակներ: Նեոգաղութատիրությունն այսօր այդ պրոցեսին հաղորդել է համընդհանուր բնույթ և ջանում է կապիտալիստական արտադրահարաբերություններն ազատագրված երկրներ արտահանելու օգնությամբ նրանց օրգանապես ներգրավել համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ՝ այժմ արդեն որպես այդ համակարգի միատիպ, հարազատ տարրեր: Իսկ նրա գործառության օրենքները վերականգնում են կախվածության, համեմատական հետամնացության հարաբերությունները, աշխատանքի բաժանման գաղութային ձևը: Այսօր այդ ամբողջ տնտեսական կառուցվածքը հանդես է գալիս որպես կախվածության տարբեր ձևերի պահպանման ու խորացման գործում իմպերիալիստական տերությունների և միջազգային մոնոպոլիաների գործունեության լայն միջազգային հիմք: Ուստի ազատագրված ամեն մի երկրի այսօր դիմակայում է ոչ թե առանձին իմպերիալիստական պետություն կամ մոնոպոլիա, այլ ֆինանսական կապիտալի միջազգային միավորման ողջ քաղաքական ու տնտեսական կառուցվածքը, արդի պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ամբողջ միջազգային հզորությունը:

Դա, երկրորդ, երիտասարդ պետությունների սուվերենության պրոբլեմը միանգամայն նորովի է դնում: Լուրջ փոփոխություններ է կրում նաև ազգային ազատագրության բուն պրոբլեմը: Սուվերենությունն այսօր ներառում է և՛ տնտեսական ինքնուրույնության, իր բնական ռեսուրսների, ազգային շրջանակներում ողջ տնտեսական կյանքի պրոբլեմը, և՛ իրավահավասար, ամենից առաջ, փաստական տնտեսական հավասարության վրա հիմնված հարաբերությունների պրոբլեմը՝ համաշխարհային կապիտալիստական տնտեսության շրջանակներում: Ազգային ազատագրությունը չի հանգում սոսկ քաղաքական անկախության նվաճման, ազգային պետականության ստեղծման, այն ներառում է ոչ միայն քաղաքական, այլև կարևոր սոցիալական ու տնտեսական խնդիրներ:

Ընդհանուր տեսական մոտեցմամբ կարելի է համեմատություն կատարել տվյալ պրոբլեմի և ազգային հարցի միջև: Կա ազգային հարցի համադեմոկրատական, քաղաքական-իրավական լուծում և կա ազգային փաստական անհավասարության վերացման պրոբլեմ: Վերջինս էլ իրական, լիակատար ազգային ազատագրության գործում միջուկն է, գլխավորը: Մարքս-լենինյան տեսությունը միշտ էլ ազգային ստրկացման հասկացության էական բաղադրամաս է համարել սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և այլ կարգի խոր կախվածությունը, ժողովուրդների միջև փաստական ազգային անհավասարության ու շահագործման հարաբերությունները, որոնք ազգային թշնա-



մանք, անհաշտելի հակասություններ են ծնել երկրների ու ժողովուրդների հակադիր խմբերի միջև:

Փաստերը հավաստում են, որ խզումը ազատագրված երկրների և բարձր զարգացած կապիտալիստական տերությունների տնտեսական զարգացման մակարդակների միջև ոչ թե նվազում, այլ նույնիսկ աճում է: Եթե 50-ական թվականների կեսերին այդ խզումը հավասար էր 1 : 10, ապա 80-ական թվականների սկզբին՝ 1 : 13: Սոցիալ-տնտեսականի հետ մեկտեղ ծագել են կախվածության նոր խոր ձևեր՝ ֆինանսական, տեխնոլոգիական, գիտատեխնիկական և այլն: Նեոգաղութատիրության համակարգում երիտասարդ պետությունների ֆինանսական պարտքի աճը ստանում է աղետալի չափեր: 50-ական թվականների կեսերի 9 մլրդ դոլարից նրանց պարտքն այսօր հասել է ավելի քան մեկ տրիլիոն դոլարի: Այդ պարտքի միայն տոկոսները մարելու համար ազատագրված երկրներն ամեն տարի վճարում են ավելի քան 100 մլրդ դոլար: Համաշխարհային կապիտալիստական տնտեսության կախյալ ու շահագործողական հարաբերությունների ողջ համակարգը ոչ միայն պահպանում, այլև շեշտում է հակաիմպերիալիստական պայքարի ազգային-ազատագրական առանձնահատկությունը: Այսօր երիտասարդ պետությունների տնտեսական ինքնուրույնությունը ավելի շատ հենվում է նոր միջազգային հարաբերությունների, քան համարժեք ազգային տնտեսական հիմքի վրա:

Դրա հետ մեկտեղ առկա է և տվյալ պրոբլեմի երկրորդ կարևոր ասպեկտը. դա երիտասարդ պետություններում ներքին ազգային պրոցեսներն են, որոնք լուրջ ազդեցություն են գործում հակաիմպերիալիստական պայքարի վրա: Համաշխարհային կապիտալիստական տնտեսությունում ազատագրված երկրների կախյալ և շահագործվող կացությունը, նեոգաղութային բռնությունը և տարազգային կորպորացիաների էքսպանսիան լրջորեն կասեցնում են ազգային համախմբման ու վերածնության պրոցեսներն այդ երկրներում: Ներազգային տնտեսական ու լայն սոցիալական խնդիրները, որոնց հաջող լուծումը շատ դեպքերում հանգում է երիտասարդ պետությունների արտաքին կախյալ, ենթակա վիճակին, արտահայտում են նաև ազգային հանրությունների ձևավորման ու զարգացման պահանջները:

Օրինաչափ է, որ ներքին սոցիալ-տնտեսական պրոցեսների խորացումը, հանուն սոցիալ-տնտեսական առաջադիմության պայքարը ազատագրված երկրների հասարակական կյանքում ստանում են վիթխարի ազգային կարևորություն:

Ներքին սոցիալ-տնտեսական առաջադիմության հարցը հանդես է գալիս նաև որպես երկրի ներսում հասարակական զարգացման ու ինքնուրույն, անկախ, իրավահավասար առաջընթացի ազգային հարց համաշխարհային ասպարեզում ընդհանրապես և համաշխարհային տնտեսական հարաբերություններում հատկապես: Միշտ, բոլոր ազգային ու ազատագրական շարժումներում երևան է եկել այդ շարժումների ներքին, խոր սոցիալական բովանդակությունը: Եվ չի կարելի խնդիրը ներկայացնել այնպես, որ իբր ազգային կողմը հանդես է գալիս որպես շարժման, պրոցեսի ձև, իսկ սոցիալական կողմը՝ որպես բովանդակություն: Նախ, բուն ազգային հարցը սոցիալական հարց է, ունի իր քաղաքական, տնտեսական և գաղափարախոսական կողմերը, իր մեջ է ընդգրկում էական սոցիալ-դասակարգային շահեր, պահանջում է իր լուծման համար արմատական վերափոխություններ սոցիալական հարաբերությունների բոլոր ոլորտներում: Երկրորդ, ճնշված ազգի պայքարն է ընդդեմ ճնշողի՝ հանուն իր ազատագրման, հանուն ազգային անիրավահավասարության, կախվածության ու շահագործողական հարաբերությունների վերացման, հենց ազգային-ազատագրական շարժման սոցիալական բովանդակությունն է: Վ. Ի. Լենինն այդ պայքարում տեսնում էր նման շարժումների «իրական սոցիալական բովանդակությունը» (ԵԼԺ, հ. 30, էջ 36):

Ինչպես երևում է, ազգային պարագան կամ ազգային կողմը հանդես է գալիս և՛ որպես ազգային-ազատագրական պայքարի ձև, և՛ որպես նրա սոցիալական էության կարևոր բաղադրամաս: Ազգայինի և սոցիալականի հա-

րաբերակցության դիալեկտիկան այն է, որ ազգային ազատագրության, ազգային ծավալուն խնդիրների լուծման համար մղվող պայքարի հաջողությունը պայմանավորված է այդ պայքարի «իրական սոցիալական բովանդակությամբ»։ Սոցիալական պայքարի խորությունից ու թափից, ազգային-ազատագրական շարժման ընթացքում դրված և լուծվող բուն սոցիալական պրոբլեմների համազգային կարևորությունից է կախված նրա հաջողությունը։ Կարելի է հիշել Կ. Մարքսի վերաբերմունքը Իռլանդիայում հնարավոր ագրարային հեղափոխության նկատմամբ՝ որպես նրա ազգային ազատագրության պայման։

«Սոցիալական բովանդակություն» հասկացությունն ընդգրկում է ոչ միայն ազգային-ազատագրական պայքարի ընթացքում առաջադրվող օբյեկտիվ սոցիալական խնդիրներ ու պրոբլեմներ, այլև նրանում զանազան սոցիալ-դասակարգային ուժերի, ձևերի ու մեթոդների մասնակցություն, որոնց հետ նրանք պաշտպանում են իրենց առանձնահատուկ սոցիալական ու դասակարգային շահերը։ Առաջին, պայքարի քաղաքական փուլը հաճախ անվանվում է համազգային փուլ ոչ միայն նրա համար, որ այն միավորել է հանուն ազգային ազատագրության հանդես եկող ողջ խայտաբղետ սոցիալ-դասակարգային կոալիցիան։ Այդ պայքարի ընդերքում իսկ արդեն այն ժամանակ տեղի էր ունենում հատուկ սոցիալական խնդիրների, նրանում մասնակցող ուժերի բյուրեղացում։ Այդ կապը նկատվում է շատ հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների փաստաթղթերում։ Օրինակ, ԱԺԴՀ-ի ազգային խարտիայում ասվում է, որ Ալժիրում «ազգային շարժումը հենց սկզբից ստանում է անսովոր լայն սոցիալական թափ», որի հետևանքով այդ շարժման կողմից նվաճված անկախությունը «դառնում է հասարակության լիակատար վերակառուցման հոմանիշ» («Азия и Африка сегодня», 1985, № 11, с. 4)։

Ազգային-ազատագրական հեղափոխությունների պատմական տեղը մեծապես որոշվում է նրանց բնույթով։ Պարզել ցանկացած հեղափոխության բնույթը՝ նշանակում է ամենից առաջ բացահայտել այն օբյեկտիվ խնդիրները, որ ծառացած են նրանց առջև, ի հայտ բերել այն օբյեկտիվ հակասությունները, որոնցով նրանք կյանքի են կոչվել։ Իսկ ինչ վերաբերում է ազգային-ազատագրական հեղափոխություններին, ապա դրանց բնույթը նույնպես որոշվում է այն դարաշրջանի գլխավոր օրինաչափություններով, որի շրջանակներում դրանք զարգանում են։ Հետհոկտեմբերյան ազգային-ազատագրական շարժումները, զարգանալով որպես կապիտալիզմից դեպի սոցիալիզմ ամբողջ մարդկության համաշխարհային-պատմական անցման անքակտելի մաս, մեր դարաշրջանի պատմական շրջանակներում, իրենց բնույթով էապես տարբերվում են բոլոր մինչհոկտեմբերյան շարժումներից։ Մեր դարաշրջանի օրինաչափություններով էլ որոշվում են նաև դրանց կոնկրետ գծերն ու առանձնահատկությունները։

Կարելի է, օրինակ, նշել այդ շարժումների որոշ առանձնահատկություններ, որոնք ամբողջովին պայմանավորված են արդի դարաշրջանի օրինաչափություններով։ Նախ, սոցիալիզմի և սոցիալիստական պետությունների սիստեմի առաջացումը, համաշխարհային երկու հասարակական սիստեմների պայքարի ընթացքում ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի օգտին արմատապես փոխվելը ստեղծում են այնպիսի միջազգային պայմաններ, որոնցում սոցիալիզմի հետ ազգային-ազատագրական պայքարի օբյեկտիվորեն անհրաժեշտ ու անխուսափելի մերձեցումն ուղեկցվում է համաշխարհային զարգացման մեջ այդ պայքարի հեղափոխական դերի և պատմական նշանակության մշտական բարձրացումով։ Միաժամանակ սոցիալիզմի հզոր ազդեցության ներքո տեղի է ունենում այդ պայքարի ներքին բովանդակության հարստացում՝ ամենից առաջ նրա ընդերքում սոցիալ-դասակարգային, հեղափոխական պրոցեսների զարգացման ու ուժեղացման տեսանկյունից։

Երկրորդ, չի կարելի լիովին գնահատել ազգային-ազատագրական պայքարի իրոք հեղափոխական հնարավորությունները, ըմբռնել նրա ընդերքում տեղի ունեցող սոցիալ-դասակարգային պրոցեսների բնույթը, եթե աչքաթող



արվի այն պարագան, որ ամբողջ համաշխարհային հասարակական զարգացումն այսօր ընթանում է երկու անհաշտ հասարակական սիստեմների պայքարի նշանաբանով։ Անհրաժեշտ է մշտապես նկատի ունենալ, որ ազատագրված երկրներն այսօր այդ համաշխարհային անհաշտ ուժերի հակամարտության ու պայքարի ասպարեզ, մարտադաշտ են։ Այդ հակամարտությունը խորապես ներգործում է երիտասարդ պետությունների ներքին պրոցեսների վրա, իր սեփական հունի մեջ առնելով բոլոր տեղական սոցիալ-քաղաքական ուժերին՝ լրջորեն ազդելով ներքին սոցիալ-դասակարգային բախումների, հատկապես հասարակական զարգացման ուղիների ընտրման պրոբլեմների շուրջ ծավալվող գաղափարաքաղաքական պայքարի խորության ու սրության վրա։

Երրորդ, ազգային-ազատագրական զարգացման ողջ պրոցեսը, նրա ընթացքն ու ձևերը, բնույթն ու փուլերը, շարժիչ ուժերի տեղաբաշխումը, ժամանակագրական շրջանակները և այլն, վկայում են ինչպես համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ընդհանուր ընթացքի հետ նրա անխզելի կապի, այնպես էլ համաշխարհային սոցիալիզմի զարգացման ու ամրապնդման պրոցեսների համաստորադասության և հանուն ազգային ազատագրության պայքարի աճի մասին։ Հենց Հոկտեմբերյան հեղափոխությունը բացեց իսկապես հաղթական ազգային-ազատագրական շարժումների, ժողովուրդների փաստական ու լիակատար ազատագրման դարաշրջանը։ Ետպատերազմյան ժամանակաշրջանում ազգային-ազատագրական պայքարի հզոր վերելքն ու գաղութային վարչակարգերի զանգվածային փլուզումը անմիջականորեն պայմանավորված էին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորմամբ։

Չորրորդ, համաշխարհային սոցիալիզմը ոչ միայն ազգային-ազատագրական շարժման զարգացման նեցուկն է, այլև նրա ներքին պրոցեսների վրա դասակարգային ազդեցության հզոր գործոնը, միջազգային կոմունիստական շարժման հետ մեկտեղ համաշխարհային մասշտաբով կատարում է պրոլետարիատի դասակարգային ավանգարդի ֆունկցիաներ։

Բուն սոցիալիզմի հետ է անխզելիորեն կապված և հետհոկտեմբերյան ազգային-ազատագրական հեղափոխությունների, որպես նոր տիպի դեմոկրատական հեղափոխությունների, բնույթը։

Արդի ազգային-ազատագրական հեղափոխությունները հիրավի ժողովրդական հեղափոխություններ են, քանի որ նրանց զարգացման բոլոր փուլերում վճռորոշ դեր են խաղում քաղաքի և գյուղի աշխատավոր զանգվածները։ Դրանք հակաիմպերիալիստական հեղափոխություններ են, որոնք կյանքի են կոչվել ժողովուրդների սոցիալ-տնտեսական զարգացման ու առաջադիմության օբյեկտիվ պահանջմունքների և օտարերկրյա ստրկացման միջև առկա հակասություններով, իմպերիալիզմի կողմից կախվածության ու շահագործման զանազան ձևերի հաստատումով։ Նրանց հակաիմպերիալիստական գլխավոր ուղղվածությունը հաճախ միահյուսվում է ֆեոդալական, ցեղային և այլ հետադեմ հարաբերությունների ձևերի դեմ մղվող պայքարի հետ։ Դրանց սոցիալական բովանդակության խորացումը դրսևորվում է ոչ միայն լուծվող պրոբլեմների բարդացման, ամենաբարդ սոցիալ-տնտեսական հարցերի՝ համազգային ասպարեզ դուրս գալու մեջ, այլև այն բանում, որ այդ ամենի համար մղվող պայքարը ստանում է հեղափոխական ձևեր ու մեթոդներ, դառնում հեղափոխական պրոցեսի հարց ազատագրված երկրներում։

Ի վերջո, ժամանակակից ազգային-ազատագրական հեղափոխություններն իրենց ներքին զարգացմամբ անցնում են երկու հաջորդական փուլ։ Առաջին փուլը գաղութային վարչակարգերի ոչնչացման, իմպերիալիզմից քաղաքականապես ազատագրվելու, ինքնուրույն պետությունների ստեղծման համար մղվող պայքարն է։ Երկրորդ փուլը պայքար է հանուն տնտեսական ազատագրման, ազգային ինքնուրույն էկոնոմիկայի ստեղծման, իմպերիալիստական տերություններից ու մոնոպոլիաներից տնտեսական, ֆինանսական, գիտատեխնիկական և այլ կարգի կախվածության վերացման։ ՍՄԿԿ ծրագրում նշվում է. «Վարելով նեոգաղութատիրության քաղաքականություն, իմպերիալիզ-

մը ձգտում է ամլացնել երիտասարդ պետությունների նվաճած սուվերենությունը, պահպանել և անգամ ուժեղացնել վերահսկողությունը նրանց նկատմամբ... Օգտագործելով ազատագրված երկրների տնտեսական ու տեխնոլոգիական կախվածությունը, անիրավահավասար դրությունը համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ, իմպերիալիզմն անխնա շահագործում է նրանց, բռնագանձելով բազմամիլիարդանոց տուրք, որը հյուծում է այդ պետությունների էկոնոմիկան» (ՍՄԿԿ ծրագիր, էջ 26)։

Եթե արդի ազգային-ազատագրական հեղափոխությունների բնույթը մեծ Հոկտեմբերից սկսած մնում է անփոփոխ, այն է՝ նոր տիպի դեմոկրատական հեղափոխություն, ապա էական փոփոխությունների է ենթարկվում շարժիչ ուժերի կառուցվածքը դրանց զարգացման երկու փուլերում։ Գաղութային վարչակարգի դեմ մղվող պայքարի շրջանում գործնականում բոլոր դասակարգերն ու սոցիալական խմբերը (բացառությամբ կոմպրադորական առևտրավաշխառուական, ֆեոդալական-ցեղային առանձին խմբերի, որոնք սերտորեն կապված էին գաղութային վարչակարգի հետ) մասնակցում էին ազատագրական պայքարին, քանի որ ենթարկվում էին գաղութարարների կեղեքմանը։ Թեպետ արդեն այդ ժամանակաշրջանում ակնհայտորեն դրսևորվում էին լուրջ տարբերություններ հակագաղութային պայքարում տարբեր դասակարգերի ու խմբերի հետամտած նպատակների ու խնդիրների միջև։ Այդ պայքարում վառ կերպով դրսևորվեցին նաև աշխատավորական զանգվածների անձնազոհությունը, հետևողականությունը և լայն մասնակցությունը, ինչպես և ազգային բուրժուազիայի երկերեսանիությունը, անհետևողականությունը։

60-ական թվականների կեսերից սկիզբ առած ազգային-ազատագրական պայքարի երկրորդ փուլի շարժիչ ուժերն են բանվոր դասակարգը, գյուղացիությունը, դեմոկրատական մտավորականությունը, քաղաքային մանրբուրժուազիան, բանակի հայրենասեր շրջանները, քաղաքային միջին խավերն ամբողջությամբ, ազգային բուրժուազիայի որոշակի մասը։ Արդի ազգային-ազատագրական հեղափոխությունների պատմական տեղի տեսանկյունից հետաքրքիր է ազգային բուրժուազիայի՝ որպես շարժիչ ուժի, տեղի ու դերի էվոլյուցիան։ Երկրորդ փուլում ևս բուրժուազիան շարունակում է մասնակցել ազգային-ազատագրական պայքարին, քանզի պահպանվում է հակասությունը նրա ու իմպերիալիզմի շահերի միջև, որն ազգային բուրժուազիային դիտում է իբրև կրտսեր և կախյալ պարտնյոր։ Բայց որպես դասակարգ նա կորցնում է ազգը շարժիչ ուժ լինելու իր նախկին դերը, և նրա որոշ խավերը համագործակցում են իմպերիալիստական բուրժուազիայի հետ, դառնում նեոգաղութատիրության սոցիալական հենարանը։

Ազգային բուրժուազիայի հեղինակության ու դերի անկումն ամենից առաջ կապված է այն իրողության հետ, որ կապիտալիստական զարգացումը ցույց է տվել կարևորագույն և բացառիկ սրությամբ դրված սոցիալ-տնտեսական պրոբլեմները լուծելու նրա անկարողությունը։ Ուստի ըստ դասակարգային հատկանիշի խոր շերտավորումն ուժեղանում է ինչպես ազատագրված երկրների ներսում, այնպես էլ նրանց միջև։ Ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարն է՛լ ավելի է ձեռք բերում հեղափոխական ձևեր ու մեթոդներ, ավելի ու ավելի շատ երկրներ են թևակոխում սոցիալիստական կողմնորոշման ուղին։ Այսպիսով, տեղի է ունենում հետագա մերձեցում համաշխարհային հեղափոխական պրոցեսի դեմոկրատական և համեմատաբար ինքնուրույն ճյուղի, այն է՝ ազգային-ազատագրական պայքարի սոցիալ-դասակարգային բովանդակության ու ուղղվածության և այլ հեղափոխական համաշխարհային ուժերի միջև։ Եվ ազգային-ազատագրական շարժումը կապիտալիզմից սոցիալիզմին ամբողջ մարդկության անցման մի մասն է դառնում ոչ իբրև այդ հզոր հոսանքի մեջ ակամայից հայտնված, նրա կողմից ներգրավված մի ուժ, այլ կապիտալիզմի՝ որպես հասարակարգի դեմ հեղափոխական պայքարի ակտիվ մասնակից։ Մեր դարաշրջանը, սահմանում է ՍՄԿԿ ծրագիրը, սոցիալիստական և ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջան է։

---

Ժամանակ և մարդիկ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

ՏԱՏՅԱՆԱ ՏԵՐԵՆՏԵՎՆԱ ԲՈԳԴԱՆՈՎԱՅԻ երրորդ նամակը հարկադրեց ինձ թողնել անհետաձգելի գործերը և մեկնել Սպիտակ։ Ես պետք է ծանոթանայի մի մարդու հետ, որով Տատյանա Տերենտևնան հպարտանում էր ոչ միայն նրա համար, որ նա լավագույն ձևով է իրեն դրսևորում աշխատանքում, այլ նաև այն բանի համար, որ նրա դաստիարակության գործին ինքն ունեցել է ամենաանմիջական մասնակցություն։

Տարիներ առաջ Նորայր Գրիգորևիչ Մուրադյանը, այժմ Սպիտակի կարի արտադրական միավորման գլխավոր դիրեկտորը, իսկ այն ժամանակ՝ պարզապես Նորիկը, եղել է նրա աշակերտը։ Անցնելով թոշակի և չկարողանալով անգործ մնալ, դպրոցական ուսուցչուհին խնդրել է՝ իրեն վստահել ֆաբրիկայի նորաստեղծ պանսիոնատի ծառ ու ծաղկի խնամքը։

Ահա այսպիսի մանրամասնություն, որ նշված է նամակում։ Պանսիոնատ տանող ճանապարհի երկայնքով, դիրեկտորի նախաձեռնությամբ, տնկված են չորս հազար ընկուզենի։ Դա ինքնին բարի գործ է, որն իր մեջ խոր իմաստ է պարունակում. չորս հազար սպիտակցիներ չվերադարձան Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներից...

Իր նամակներում, ներկայացնելով ենթադրվող ակնարկի հերոսին, ուսուցչուհին նրա բնավորության մեջ շեշտում է մի կարևոր գիծ, որ արժանի է առանձնահատուկ ուշադրության։ Ն. Մուրադյանին, հավաստիացնում է նա, երբեք չեք տեսնի աթոռին գամված, նա միշտ շարժման մեջ է, «Եթե ուզում եք իմանալ, մեր դիրեկտորը ամենաիսկական հակաբյուրոկրատ է»։

Ժամանելով Սպիտակ և հազիվ ներս մտնելով գլխավորող ֆաբրիկայի անցամուտքից՝ ես ականատես եղա մի տեսարանի, որի գլխավոր գործող անձը արտաքուստ հազիվ թե թողներ գործարար մարդու տպավորություն։ Ձեռնարկության վարչության շենքի հարմարավետ բակում դրված ծիրանագույն թավիշով պատած բազկաթոռին, կիսախուփ աչքերով, կարծեք համերգասրահում, նստած էր ոչ այլ ոք, բան ինքը՝ Նորայր Մուրադյանը։ Բայց ահա նա կտրուկ բարձրանում է տեղից, ուշադիր զննում բազկաթոռը և, դատելով ըստ ամենայնի, լիովին գոհ մնում։

— Հենց սա՛ է մեզ պետք, վերցնո՛ւմ ենք։

Բանվորները անմիջապես բացեցին «Կամազի» թափքը, որը բեռնված էր ձեռնարկության ակումբի համար նախատեսված բազկաթոռներով։

Սկզբում տարօրինակ թվացող տեսարանը բացատրվում է շատ պարզ. դիրեկտորը, մինչև ուրիշներին որևէ բան առաջարկելը, նախ ինքն է փորձում։ Միավորման արտադրության առանձնահատկությունը հնարավորություն է տալիս այդ սկզբունքը տարածել համարյա ամբողջ արտադրանքի վրա. բաճկոններ, վերարկուներ, կաշվե անձրևանոցներ, թաշկինակներ... Կարելի է համաձայնել, որ սա իրենց իսկ արտադրած ապրանքների իսկական արժեքը որոշելու վատ եղանակ չէ։ Իրոք, եթե կարի միավորման ղեկավարները մարդկանց առաջարկեին իրենց արտադրանքը, իսկ իրենք պճնվեին արտասահմանյան պիտակ կրող կոստյումներով, ի՞նչ կարժենային նրանց հավաստիացումները, թե այստեղ թողարկվող արտադրանքը համապատասխանում է համաշխարհային ստանդարտին, այլապես մարդիկ կարող էին հարցնել. «Իսկ ինչո՞ւ իրենք չեն հագնում»։ Պետք է նկատել, որ ղեկավարների օրինակին հետևում են կոլեկտիվի շատ անդամներ՝ գերադասելով սեփական արտադրանքը։

Տեղին է համառոտակի պատմել միավորման մասին. դա նույնն է, ինչ խոսել նրա դիրեկտորի մասին:

Սկսեմ բավականին պերճախոս մի թվից. 1974 թ. Սպիտակի ֆաբրիկան, երբ բաժանվեց Կիրովականի կարի միավորումից և ինքնուրույնություն ստացավ, թողարկում էր ընդամենը 200 հազար ռուբլու արտադրանք: Այսօր այդ ցուցանիշն անցնում է հարյուր միլիոնից: Սպիտակցիները «Ն» ինդեքսով և պայմանագրային գներով թողարկում են արտադրանքի 36 տոկոսը: Միավորման կազմում գործում են վեց ֆաբրիկա և քսաներկու արտադրական տեղամաս, որոնցում ընդամենն աշխատում է հինգ հազար մարդ: Սպիտակցիները ճյուղում առաջինը կատարեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները և երկրին տվեցին 75 **մլն** ռուբլու արտապլանային արտադրանք: Կարելի է բերել բազմաթիվ թվեր ու փաստեր, որոնք վկայում են միավորման շեշտակի առաջընթացը, սակայն, թվում է, նշվածն էլ բավական է, որպեսզի պարզ լինի, թե ինչի է հասել այդ կոլեկտիվը: Ավելացնենք միայն, որ ընթացիկ հնգամյակում ապրանքային արտադրանքը հասցվելու է 637 **մլն** ռուբլու, որի կեսը թողարկվելու է «Ն» ինդեքսով և պայմանագրային գներով:

Սրանով էլ, թերևս, սահմանափակենք արտադրության հետ կարճ ծանոթությունը, որպեսզի կրկին անդրադառնանք ուսուցչուհու նամակին, ուր նա թղթակցին խնդրել է ուշադրությունը կենտրոնացնել նախ և առաջ մարդկանց վրա, ավելի ճիշտ՝ այն վերաբերմունքի վրա, որ տածում են կոլեկտիվի անդամների նկատմամբ ղեկավարները՝ նրանց նպատակամղելով ստեղծագործ ու բարձրարտադրողական աշխատանքի: Իր նամակում թեև չի օգտագործում «մարդկային գործոն» արտահայտությունը, սակայն Տատյանա Տերենտևնան հենց այդ հասկացությունն է նկատի ունեցել: Եվ դա նախ և առաջ վերաբերում է կանանց, որոնք կարի արտադրությունում գերակշռող մեծամասնություն են կազմում:

— Ե՞րբ կարող են կանայք հանգիստ խղճով աշխատել,— հարցնում է տեխնիկական վերահսկողության բաժնի վերահսկիչ Վալենտինա Թորոսյանը, և ինքն էլ պատասխանում իր հարցին,— միայն այն ժամանակ, երբ նրանք շատ թե քիչ ազատ են տնային հոգսերից: Այս առումով մենք, եթե կարելի է այդպես արտահայտվել, գտնվում ենք արտոնյալ վիճակում: Եվ նա սկսում է թվարկել. երեք մանկապարտեզ, երկուսն էլ կառուցվում են, երկու կոոպերատիվ շենք, ջերմոցային տնտեսություն՝ բանջարեղենը ձեռք ենք բերում մատչելի գներով, ծրագրվում է ստեղծել ձկնաբուծարան: Ճաշարան, բուֆետ, հիգիենայի սենյակներ, դեղատուն, խանութ՝ այս մասին արդեն էլ չեմ ասում: Շուտով կունենանք լվացքատուն, որտեղ մինչև քսան կիլոգրամ սպիտակեղենը կլվացվի անվճար: Ակումբ... դուք մի տեսնեիք, թե ինչպիսի բազկաթոռներ բերեցին... իսկ պիոներական ճամբար-պանսիոնա՞տը, դա արդեն պետք է անձամբ տեսնել: Հենց այդպես էլ կոչվում է՝ «Հեքիաթ»: Ամառը՝ երեխաների համար, մնացած ժամանակ՝ մեծահասակների:

Եվ ահա թե ինչն է կարևոր: Այն ամենին, ինչին հասել են սպիտակցիները, աշխատավոր մարդու համար է, և նա դա տեսնում ու գնահատում է արժանապատվությամբ ու գիտակցում, որ եթե ինքն աշխատում է բարեխղճորեն, ապա լիարժեք ձևով կարող է օգտվել վաստակած բարիքներից:

Ն. Մուրադյանը, կարծես թե ի միջի այլոց, նկատեց, որ մեր երկրում կեգլախաղարաններ կան ընդամենը յոթ քաղաքներում՝ Մոսկվա, Լենինգրադ, Սոչի... թեկուզ և շատերը տեղյակ չեն, բայց այն, ինչ ունեն Սպիտակի կարագործները, ինքս եմ տեսել: Չկարողացա խուսափել գայթակղությունից՝ զվարճանալ էլեկտրոնային ատրակցիոններով, որոնք տեղադրված են ընդհանուր օգտագործման համար՝ հավաքովի կիսաշրջան սրահում:

Այո՛, միավորման ղեկավարությունն ամեն ինչ անում է կոլեկտիվի անդամների և նրանց երեխաների հանգստի համար, և այդ նպատակով ծախսված միջոցներն ամենևին էլ քամուն տված փողեր չեն: Իհարկե, միամտություն կլինի պնդել, թե արտադրական բարձր ցուցանիշների հասնելուն կարագործներին օգնում է միայն կեգլախաղարանը:

...Ստացվեց այնպես, որ Մուրադյանի հետ մեր հաջորդ հանդիպումը կայացավ մարզահամերգային համալիրում, որտեղ աշխատում էր Հայաստանի կոմկուսի քսանութերորդ համագումարը: Ընդմիջման ժամերին մենք կարծիքներ էինք փոխա-



նակում, և նա մշտապես անդրադառնում էր «մարդկային գործոնի» թեմային, որով ներթափանցված էին հաշվետու զեկուցումը, պատգամավորների ելույթները: Թվում էր, թե նա փնտրել ու գտել է այն գծի հաստատումը, որ տարիներ շարունակ ինքը տարել է, և ամենևին էլ միշտ չէ, որ փոխըմբռնման է արժանացել: Իսկ այժմ ահա, նա չի թաքցնում իր բավականությունը, որ այդ գաղափարը պաշտպանություն է ստանում կուսակցական համաժողովում:

Չժլատանալով վճարել վաստակած բարիքների համար, գլխավոր դիրեկտորը, միաժամանակ, ոչ իրեն, ոչ էլ մյուսներին չի ներում շռայլությունը, անփութությունը, հատկապես, երբ խոսքը վերաբերում է արտադրությանը: Այստեղ նա «սեղմում է» մինչև վերջ: Եվ դրանից չէ՞, արդյոք, որ կոլեկտիվի դրամարկղն են հոսում այն կոպեկները, որոնցից ռուբլիներ են գոյանում:

Թեկուզ այսպիսի «մանրուք». մի ժամանակ, մինչև երեսուն սանտիմետր դեֆիցիտային բամբակյա գործվածք էր օգտագործվում ամեն մի արտադրանքի համար պիտակի կախիչներ պատրաստելու նպատակով: Հենց ֆաբրիկայում հավաքեցին պոլիէթիլենից կախիչներ շտամպելու մամլիչ-ավտոմատ: Առկա է խնայողությունը: Կազմակերպեցին տեղամաս, որտեղ թափոններից կոճակներ են պատրաստում: Երբեմն էլ օգտագործում են դուրս գրված մեքենաները՝ վերանորոգում են, «ոտքի կանգնեցնում» և աշխատեցնում. դարձյալ խնայողություն է: Երբ սկսեցին պանսիոնատի շինարարությունը, հեռու շրջաններից բերած քարը խիստ թանկ էր նստում: Բացեցին դեռևս պատերազմի տարիներից լքված հին քարհանքը, որը քաղաքի մոտակայքում էր գտնվում, ձեռք բերեցին քարհատ մեքենա, և յուրաքանչյուր քարի արժեքը իջավ մինչև քսան կոպեկ:

Սպիտակցիները խնայում են ոչ միայն միջոցները, այլև ժամանակը: Միավորումը մոդելագործների կարիք է զգում, և այստեղ հուսով են, որ շուտով երկու մասնագետներ իրենց մոտ մշտական գրանցում կստանան, ուստի չպետք է ժամանակ կորցնել նրանց պատրաստման վրա: Մոսկվայի տեխնոլոգիական ինստիտուտի հինգերորդ կուրսեցիներ Վոլոդյա Վորոբյովին և Նինա Կովալչուկին Սպիտակում հետաքրքիր աշխատանք և հարմարավետ բնակարան է սպասում: Վոլոդյային և Նինային Նորայր Մուրադյանը պատահաբար հանդիպել էր մայրաքաղաքի պուրակներից մեկում՝ էտյուդապնակների մոտ: Ծանոթացել և հետը բերել է Սպիտակ: Մեկ ամիս անց ուսանողների էսքիզներով պատրաստված տասներկու մոդելներ հենց իրենց ներկայությամբ իջեցվեցին արտադրություն...

Միավորման ղեկավարությունը հասավ այն բանին, որ Երևանի էլեկտրամեխանիկական տեխնիկումի Սպիտակի մասնաճյուղում երեսուն տեղ հատկացվեց կարող-շարժիչագործներ պատրաստելու համար: Դա, անշուշտ, լավ է, սակայն հարց է ծագում. ինչո՞ւ չի կարելի ամբողջ մասնաճյուղը վերապրոֆիլավորել Սպիտակին խիստ անհրաժեշտ մասնագետներ պատրաստելու համար, մինչդեռ այստեղ ավարտած էլեկտրիկները նշանակում չեն ստանում...

Մեկ ուրիշ հարցի մասին. միայն անցյալ տարի միավորման աշխատողները գյուղատնտեսական աշխատանքներին են հատկացրել տասնյակ հազարավոր մարդ-օր, որի պատճառով միլիոնավոր ռուբլու սեփական արտադրանք պակաս են տվել:— Մենք,— բացատրում է դիրեկտորը,— ձգտում ենք թեթևացնել կանանց աշխատանքը, բարենպաստ պայմաններ ստեղծել նրանց համար, մինչդեռ ահա նրանք ստիպված են ձեռքերով արմատապտուղներ մշակել: Բայց, դե՛, առանց գյուղին օգնելու էլ չի լինի, ուրեմն այդ դեպքում ինչպե՞ս համաձայնեցնել փոխադարձ շահերը:

— Ժամանակն է,— շարունակում է Ն. Մուրադյանը,— գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների փոխհարաբերությունները դնել իրավական ամուր հիմքի վրա: Ինչպիսի՞ն են այսօր դրանք: Բանավոր պայմանավորվածություն մեր միավորման և կոլտնտեսության միջև այն մասին, թե այս կամ այն մասնաճյուղից քանի՞ մարդ պետք է մասնակցի գյուղատնտեսական աշխատանքներին: Սակայն դա ջենտլմենական համաձայնագրի տպավորություն է թողնում, որը կոլտնտեսությանը հնարավորություն է տալիս ցանկացած ձևով պահել, ձեռքից բաց չթողնել բանուժի ռեզերվը: Ուստի նպատակահարմար է երկարաժամկետ պայմանագրեր կնքել արդյունաբերական ձեռնարկության ադմինիստրացիայի և այն տնտեսության ղեկավարների միջև, որոնց տարածքում է գտնվում արտադրական տե-

ղամասը: Երկու կողմերի պարտավորությունները պետք է ամրապնդվեն գրավոր համաձայնագրով:

Ն. Մուրադյանը հատկապես ընդգծում է հարցի տնտեսական կողմը: Մինիստրությունները, տարեկան արտադրական պլանները հաստատելիս, հաշվի չեն առնում գյուղատնտեսական աշխատանքների համար կատարվող աննախատեսելի «մասհանումը»:

— Կորցրածը,— ասում է նա,— ստիպված ենք լինում հատուցել շաբաթ օրերի, արտաժամյա աշխատանքի հաշվին: Անհրաժեշտ է, որպեսզի պլանավորող մարմինները փոփոխություններ մտցնեն այն ձեռնարկությունների արտադրության պլանավորման կարգի մեջ, որոնց կոլեկտիվներն ամեն անգամ ընդգրկվում են սեզոնային աշխատանքներում: Հարկ է փոխել նաև մատակարարման կարգը: Մեր մինիստրության միավորումներում ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ հումքի պակասի պատճառով ամենաքիչ արտադրանքը բաժին է ընկնում առաջին եռամսյակին, այսինքն՝ այն ժամանակ, երբ մեզ մոտ աշխատուժի պակաս չի զգացվում և կարելի է ամառվա ամիսների դիմաց պաշար ստեղծել: Արտադրանքի սեզոնային պլանավորման հաշվեկշռվածությունը մեզ համար տարեկան պլանի կայուն կատարման երաշխիքն է:

Իսկ այժմ աշխատանքի վարձատրության մասին:

Կոլտնտեսությունում մեր աշխատողները, որպես կանոն, ավելի շատ են վաստակում, քան իրենց ձեռնարկությունում, և տարբերությունը հատուցվում է միավորման հաշվին: Դրա հետևանքով գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի մի մասը փոխանցվում է արդյունաբերական ձեռնարկության արտադրանքի ինքնարժեքի վրա: Ճիշտ է, թեթև արդյունաբերության մինիստրությունը աշխատավարձերի այդ տարբերությունը հատուցելու համար մեզ լրացուցիչ փոնդ է հատկացնում, սակայն աշխատավարձի փոնդի և ձեռնարկության շահույթների հաշվին այդպիսի «սնուցումը» խոչընդոտում է ագրոարդյունաբերական ինտեգրացիայի զարգացմանը:

Անդրադառնալով այս հարցերին, Ն. Մուրադյանը միաժամանակ նկատեց, որ գյուղատնտեսության աշխատողներին օգնել, անշուշտ, անհրաժեշտ է, բայց լավ կլինի որքան հնարավոր է շուտ հասնել այնպիսի իրավիճակի, որպեսզի հողագործներն իրենք հավաքեն դաշտերի բերքը, իսկ թեթև արդյունաբերության աշխատողները նրանց «հագցնեն»:

Այո՛, ինչպե՞ս կարելի է չհամաձայնել այդպիսի կարծիքի հետ: Բաժանելով այդ տեսակետը՝ կարողների բրիգադավար, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ն. Գասպարյանը նշեց մի թիվ, որը չի կարող տագնապ չառաջացնել: Ըստ նրա հաշվարկների, միայն անցյալ տարի միավորումը երկու շաբաթ պարապուրդ է տվել՝ լրիվ զբաղվելով բերքահավաքի աշխատանքներով:

Հիշատակման արժանի ևս մեկ նկատառում. մենք, ընդգծում է դիրեկտորը, մարդկանց մոտ մասնագիտական հպարտության զգացում ենք պատվաստում ամեն կերպ բարձրացնում ենք նրա հեղինակությունը, փառաբանում մեր վարպետներին: Յուրաքանչյուրը, ով իր գործի մեջ հմուտ է, արժանի է ճանաչման ու պատվի: Եվ երբ մենք կտրում ենք նրան աշխատանքից ու ստիպում զբաղվել այլ գործով, արդյոք մենք դրանով չե՞նք նսեմացնում մարդկանց պրոֆեսիոնալ հպարտությունը:

...Սպիտակում օրերն արագ անցան. մեր մեկնելու նախօրյակին միավորումում տեղի ունեցավ ժողով, որտեղ կոլեկտիվը ՍՄԿԿ XXVII համագումարի պահանջների ոգով վերանայեց իր պարտավորությունները: Ժողովը գումարվել էր ակումբում, որտեղ արդեն հասցրել էին տեղադրել այն բազկաթոռները, որոնք մի ժամանակ այնքան բծախնդրությամբ զննում էր գլխավոր դիրեկտորը:

Ես, նստած Տատյանա Տերենտևնայի կողքին, նրան շնորհակալություն հայտնեցի այդ հետաքրքիր հանդիպմանը նպաստելու համար: Նա ժպտաց՝ չթաքցնելով նպատակին հասած մարդու իր բավականությունը:

**Ս. ԲԱԲԼՈՒՄՅԱՆ**

## Գրախոսություն և քննադատություն

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՆՎԻՐՅԱԼԸ

ՀԱՐՈՒՍՏ ՈՒ ԱՆՍՊԱՌ Է ազատարար Հոկտեմբերի տարեգրությունը, որի վավերագրերը պատմական մեծ արժեք են ներկայացնում: Այդ անսպառ գանձարանը բովանդակում է դեպքերի ու դեմքերի բազում վկայություններ, որոնք ամբողջացնում են աշխարհի սոցիալիստական վերափոխման պատմության համայնապատկերը: Այս առումով էլ ուշագրավ է պրոֆեսիոնալ հեղափոխական Վլադիսլավ Կասպարովի (Կասպարյանցի) նամակների, հոդվածների, փաստաթղթերի ժողովածուի հրատարակումը*:

Ժողովածուում առաջին անգամ ի մի են բերված Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հետ բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ Վ. Մ. Կասպարովի նամակագրական նյութերը, Ստ. Շահումյանին և կուսակցական այլ գործիչներին գրած նամակները, բոլշևիկյան «Պրավդա» և կովկասյան մի շարք թերթերում նրա հրապարակած հոդվածներն ու արխիվային փաստաթղթեր, որոնք վերաբերում են Բաքվում, Դոնի Ռոստովում, ինչպես նաև Բեռլինում ու Շվեյցարիայում Վ. Կասպարովի վտարանդիության տարիների հեղափոխական, կուսակցական բեղմնավոր աշխատանքին: Ինչպես հոդվածները, այնպես էլ նամակագրական նյութերն ու մյուս փաստաթղթերը սոսկ մեկ մարդու նեղ անձնական գործունեությանը չեն վերաբերում, այլ սերտորեն առնչվում են կուսակցության պայքարի տարեգրության հետ և հարստացնում մեր պատկերացումներն այդ պատմության մի շարք, անցյալում գրականության մեջ քիչ լուսաբանված դեպքերի ու իրադարձությունների մասին: Բոլոր այդ նյութերի համար ելակետ են ծառայում ժողովածուի սկզբում զետեղված՝ Վ. Ի. Լենինի նամակները Վ. Մ. Կասպարովին: Դրանք վկայում են, թե մեծ առաջնորդը որքան մեծ վստահություն է տածել Կասպարովի նկատմամբ, ինչպես նաև այն մասին, թե կուսակցության գործի համար, հեղափոխության հաղթանակը նախապատրաստելու համար որքան կարևոր աշխատանք է կատարել Կասպարովը՝ իրականացնելով Լենինի հանձնարարությունները: Եվ պատահական չէ, որ 1917 թ. դեկտեմբերի 9-ին Վ. Ի. Լենինը մի առիթով Յա. Մ. Սվերդլովին հղած նամակում Կասպարովին բնութագրում է որպես իրեն «...լավ հայտնի, հին կուսակցական աշխատող» (Վլադիսլավ Կասպարով, **Նամակներ, հոդվածներ, փաստաթղթեր,** «Հայաստան» հրատ., 1985 թ., էջ 35), իսկ 1921 թ. դեկտեմբերին Ա. Ա. Սոլցին և Պ. Ա. Զալուցկուն գրած նամակում, խոսելով դարձյալ Վ. Մ. Կասպարովի մասին, նշում է, որ նա «...վայելում էր բոլոր այն բոլշևիկների արժանի հարգանքը, որոնց հետ ինձ վիճակված էր հանդիպել, և որոնք տեսնում էին Կասպարովի աշխատանքը» (նույն տեղը, էջ 36):

Լինելով ՌՍԴԲԿ արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի, նրա առաքող հանձնաժողովի անդամ և այդ կոմիտեի գանձապահն ու վտարանդիական փոխօգնության դրամարկղի նախագահը՝ Վ. Մ. Կասպարովը նյութական սուղ պայմաններում և առողջական ծանր վիճակում աշխատում էր անխոնջ ու եռանդուն:

Ժողովածուում զետեղված Կասպարովի նամակների մեծ մասը՝ հասցեագրված Վ. Ի. Լենինին, առաջին անգամ հայերեն լույս է տեսել «Լենինյան ուղիով» ամսագրի էջերում (№ 12, 1960 թ., № 6, 1975 թ., № 4, 1981 թ.): Առաջնորդին գրած իր նամակներում Վ. Կասպարովը հայտնում է այնպիսի տեղեկություններ ու փաստեր, որոնք այսօր ավելի են ընդարձակում մեր գիտելիքները Վ. Ի. Լենինի արտասահմանյան գործունեության և առհասարակ բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության պատմության վերաբերյալ: Դրանք առատ են ժողովածուի մանավորապես այն բաժիններում, որոնցում ներ-

* *Վլադիսլավ Կասպարով,* **Նամակներ, հոդվածներ, փաստաթղթեր,** *կազմել և ծանոթագրել է պրոֆ. Հ. Ն. Կարապետյանը, «Հայաստան» հրատ., 1985:*

կայացված է Կրուպսկայայի և Կասպարովի նամակագրությունը։ Դրանցում առանձնապես արժեքավոր են Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ու բոլշևիկ գործիչների հետ Վ. Ի. Լենինի և կուսակցության արտասահմանյան կենտրոնի կապերի հաստատմանը վերաբերող նյութերը։ Այդ դժվարին ու մեծ ջանքեր պահանջող աշխատանքի հետ մեկտեղ Վ. Մ. Կասպարովը օժանդակում էր Վ. Ի. Լենինի երկերի տպագրությանն ու Ռուսաստան ուղարկելուն, դրանք այլ լեզուներով հրատարակելու և տարածելու գործին։ Միաժամանակ այդ նյութերը հնարավորություն են տալիս ավելի լայն պատկերացում կազմելու ՌՍԴԲԿ արտասահմանյան կազմակերպության կոմիտեի և նրա առաքող հանձնաժողովի գործունեության մասին։

Ընթերցելով ժողովածուի նամակները՝ մենք տեղեկանում ենք, թե որքան մեծ նշանակություն է տվել Վ. Ի. Լենինը Ստ. Շահումյանի հետ իր նամակագրությունը վերահաստատելուն, Ռուսաստանի այլ բոլշևիկների և կազմակերպությունների հետ նամակագրական մշտական կապը պահպանելուն։ Ահա թե ինչ է գրում Ն. Կ. Կրուպսկայան Վ. Մ. Կասպարովին ուղղված 1914 թ. ապրիլի 18-ի նամակում. «Շտապ ուղարկեցե՛ք, խնդրում եմ, Շահումյանի հասցեն, շատ է պետք»։ Նույնը կրկնում է նաև ապրիլի 23-ի նամակում, իսկ ապրիլի 27-ի նամակում, իր շնորհակալությունը հայտնելով հանձնարարությունը կատարելու կապակցությամբ, միաժամանակ տալիս է նոր առաջադրանք՝ որքան հնարավոր է հաղորդել բոլշևիկ գործիչների նոր հասցեներ, գրելով. «Հիմա մենք կապեր ենք հավաքում, օգնեցեք, ինչով կարող եք» (նույն տեղը, էջ 52—53)։

Պետք է ասել, որ Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի՝ Վ. Մ. Կասպարովին ուղղած նամակներն իրենց առաջադրած խնդիրներով բավականաչափ նյութ են տալիս աշխատանքի լենինյան ոճը, ղեկավարման լենինյան արվեստը ըմբռնելու, հեղափոխական պայքարի մեջ ընդգրկված լայն մասսաների հետ կուսակցության սերտ կապերը բացահայտելու համար։ Բարձր գնահատելով Վ. Մ. Կասպարովի կուսակցական ծառայությունները՝ Ն. Կ. Կրուպսկայան իր հուշերում միաժամանակ նշում է, որ իր և Վ. Ի. Լենինի հարաբերությունները նրա հետ վերջին շրջանում այնքան ջերմ ու մտերմիկ էին դարձել, որ կուսակցության առաջնորդը նրան ուղղած նամակները առաջվա նման սկսում է ոչ թե «Թանկագին ընկեր», այլ «Թանկագին բարեկամ» բառերով (նույն տեղը, էջ 80)։ Վ. Մ. Կասպարովին առաջնորդի գրած նամակներից վերջինը, որ զետեղված է ժողովածուում, թվագրված է 1917 թվականի ապրիլի 9։ Վ. Ի. Լենինը այն գրել է Բեռնից՝ Ռուսաստան մեկնելուց առաջ։ Կուսակցության առաջնորդը, հուսադրելով Վ. Մ. Կասպարովին, այդ նամակում գրել է. «Թանկագին Կասպարո՛վ։ Ամուր-ամուր սեղմում եմ Ձեր... ձեռքը, ցանկանում եմ առողջություն։ Համբերել է պետք։ Հուսով եմ, որ Պիտերում կհանդիպենք և շուտով» (նույն տեղը, էջ 32)։ Դժբախտաբար, այդ հանդիպումը ոչ միայն «շուտով», այլև առհասարակ տեղի չունեցավ։ Այն ժամանակ, երբ փոթորկվում էր Ռուսաստանը, Վ. Մ. Կասպարովը Շվեյցարիայի Դավոս քաղաքում, հայրենիքից հեռու, հեղափոխության կրակը սրտում հիվանդ գամված էր անկողնուն։ Նույն թվականի սեպտեմբերի 6-ին դադարեց բաբախելուց անկուն հեղափոխականի և հայրենասերի սիրտը։

Ժողովածուում առանձին բաժին են կազմում Վ. Մ. Կասպարովի հոդվածները, որոնցում հեղինակը բոլշևիկյան դիրքերից քննադատում է բուրժուական մտահայեցողությունը՝ որպես իր դարն ապրած ու մահվան դատապարտված գաղափարախոսություն։ **Արա՛, ինչ ուզում ես, ապարեգը քոնն է** հոդվածում նա մերկացնում է բուրժուական թերթերի կեղծիքն ու զրպարտությունը, ցույց տալիս, որ տեռորն ու մարդասպանությունը հատուկ են հենց բուրժուազիային, նրա կամակատարներին և ոչ թե պրոլետարիատին ու նրա կազմակերպություններին։ **Ճապոնական կադետները** հոդվածում, քննադատելով ճապոնական լիբերալներին, որոնք դեմոկրատների շարժումից ահաբեկված փոխզիջման մեջ են մտնում ամենահետադեմ ուժերի հետ, Կասպարովը իրավացիորեն գտնում է, որ դեմոկրատական ուժերը թե՛ ռեակցիայի, թե՛ լիբերալների դեմ պետք է հանդես գան համարձակ ու բացահայտ՝ բանվոր դասակարգի և նրա կուսակցության առաջնորդությամբ։ **Լիբերալի դիտողականությունը** հոդվածում նա վերլուծում և քննադատում է եվրոպացի լիբերալ ոմն Պետր Ռիսի «սալոնային» և մակերեսային տպավորությունները Ռուսաստանի մասին, ցույց տալիս, որ նա չի տեսել իսկական հեղափոխական Ռուսաստանն ու նրա մարտնչող պրոլետարիատին։ Ժողովածուում զետեղված նրա մյուս հոդվածները՝



**Դոնում ընտրական կամպանիայի արդյունքների մասին, Ձևական ինքնադատափետում** և այլն, նույնպես տոգորված են լենինյան վեհ գաղափարներով ու սկզբունքներով, նպատակամղված պաշտպանելու բոլշևիկյան կուսակցության ստրատեգիան ու տակտիկան։ Ինչպես նամակները, այնպես էլ հոդվածները վկայում են, որ Կասպարովը եղել է կուսակցության գործի համար անխոնջ պայքարող, մինչև վերջ կուսակցության գործին նվիրված լենինյան, հեղափոխության բոցաշունչ մարտիկ։

Հակիրճ են գրքում զետեղված նամակները, դրանք հաճախ գրված են ծածկագրային լեզվով, մի շարք դեպքերում չկան տարեթվեր, անստորագիր են և այլն։ Սակայն գործին օգնում են ժողովածուի ծանոթագրությունները, որոնցում ճշգրտված են որոշ տարեթվեր, նախկինում ընդունված որոշ ընթերցումների տրված են նոր մեկնաբանություններ, բացահայտված են նոր փաստեր։ Ճշգրտումներ և լրացումներ կան նաև Վ. Կասպարովի կյանքին ու գործունեությանը վերաբերող տվյալներում։

Ցավոք, ժողովածուն զերծ չէ նաև թերություններից, մասնավորապես՝ ոճական և ուղղագրական բնույթի սխալներից։

Վլադիսլավ Կասպարովի կյանքին ու գործունեությանը նվիրված սույն ժողովածուն, որ հրատարակման է պատրաստել ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղը, ունի ոչ միայն պատմագիտական արժեք, այլև դաստիարակչական նշանակություն։

**Ֆ. ՊՈՂՈՍՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

# ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ*

ՄԵՐ ԳՐԱԿԱՆ ԱՆԴԱՍՏԱՆԻ չգերազանցված քնարերգու Վահան Տերյանը իր շռայլ տաղանդը դրսևորեց նաև հեղափոխական պայքարի հորձանուտում՝ զինվորագրվելով լենինյան հաղթական բանակին։ Անպարփակ ու ընդգրկուն է նրբաճաշակ բանաստեղծի ոգեշնչման աղբյուրը, որտեղ իրենց ուրույն տեղն ունեն հասարակականն ու ներանձնականը։

Նոր կյանքի ծնունդը երգող բանաստեղծը, ոգեշնչված Վ. Ի. Լենինի տիտանական գործունեությամբ ու գիտական ժառանգությամբ, իր տաղանդը նվիրաբերեց առաջնորդի աշխարհափոխ գաղափարները ժողովրդի սեփականությունը դարձնելու վեհ գործին։ Նա դարձավ լենինյան երկերի լավագույն թարգմանիչներից ու ակտիվ պրոպագանդիստներից մեկը։ Սակայն, ցավոք, Տերյանի գործունեության այս կողմը համեմատաբար քիչ է ուսումնասիրված։ Այս առումով ողջունելի է գրախոսվող աշխատությունը։

Նախաբանից և երկու բաժիններից բաղկացած այս գրքի առաջին մասում, որը կրում է **Տերյանը լենինյան գաղափարների պրոպագանդիստ** վերնագիրը, հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես բանաստեղծը քաղաքագետի խորամիտ հմտությամբ ու հեռատեսությամբ կոչ է անում հայ բանվորներին ու գյուղացիներին՝ միանալ «Ռուսաստանի բանվորների ու գյուղացիների կուսակցության, այսինքն՝ բոլշևիկների կոմունիստական կուսակցության և Ռուսաստանի բանվորական ու գյուղացիական կառավարության հեղափոխական կարմիր գնդերին» (էջ 56—57)։

1919 թ. սկզբին լույս է տեսնում Տերյանի **Ի՞նչ է ասում Լենինը գյուղացիներին** գրքույկը, որը կազմելիս, իր իսկ խոստովանությամբ, աչքի առաջ է ունեցել Լենինի հոդվածներն ու մանավանդ այն ճառը, որ արտասանել է Իլյիչը գյուղական պատգամավորների խորհրդում 1917 թվականի մայիսի 22-ին։

Մատչելի, անմիջական զրույցի ձևով պատմելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մասին՝ Տերյանն անկեղծ ու ջերմ սիրով հայ գյուղացիներին է ներկայացնում Լենինին, բոլշևիկներին։ Մարքսիստական տեսության պրոբլեմների արտակարգ պարզ ու համոզիչ շարադրանքը, որ նրա գաղափարական խոր համոզվածության ու մեծ տաղանդի վկայությունն է, համակում է ընթերցողին, մղում խորհելու իր վիճակի մասին, այդ վիճակից ելք գտնելու ուղիների որոնման։

* *Մ. Տ. Խոցանյան*, Տերյանը լենինյան երկերի պրոպագանդիստ և թարգմանիչ, *«Հայաստան» հրատ., 1985*։

«Կարիքն է,— շեշտում է նա,— ստիպում մարդկանց փոխել կյանքի սովորական եղանակն ու ձևերը»: Կարիքն էր, որ հանգեցրեց հեղափոխության և հանգեցնելու է հողի համայնական մշակման, իսկ աշխատանքը դարձնելու ընդհանուր ու պարտադիր...

**Տերյանը լենինյան երկերի թարգմանիչ** բաժնում, նախքան անմիջական նյութին անցնելը, Խոցանյանը ներկայացնում է Տերյան-թարգմանչին ընդհանրապես, նրա հայացքները հայ թարգմանական արվեստի, մեր գրականության մեջ դրա վիճակի ու մակարդակի մասին:

Հեղինակը ցույց է տալիս, թե Տերյանը որքան կարևոր է համարել թարգմանության գործը, թե ինչպիսի՜ բծախնդրությամբ է ընտրել թարգմանելի, իր հոգուն հարազատ, իր ժողովրդի համար հույժ անհրաժեշտ երկը: Վերոհիշյալ բաժնում զգալի տեղ է հատկացված Տերյանի թարգմանություններին, դրանց գնահատմանը: Այս առումով ուշագրավ է Ն. Յա. Մառի կարծիքը **Վագրենավորի** նախերգանքի՝ Տերյանի կատարած թարգմանության մասին. «Համահանճար է Ռոթային», գրել է Մառը «Վ. Տերյանի բանաստեղծական թարգմանության առանձնահատկությունները» հոդվածում:

Պետական բուռն գործունեություն, առողջական ծանր վիճակ, կարճատև կյանք... Որքա՜ն շատ բան կարող էր անել... Բայց պետք էր հասցնել ամենակենսականը, ամենակարևորը իր ժողովրդի համար: Եվ իր կյանքի վերջին տարիները կոմունիստ բանաստեղծը նվիրեց Լենինի **Կարլ Մարքս, Պետություն և հեղափոխություն** աշխատությունների թարգմանությանը: Վերջինում Լենինը հանգամանորեն լուսաբանել է պետության, պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան ըմբռնումը՝ այն առնչելով սոցիալիստական պետության հաստատման ու ամրապնդման խնդիրների հետ: Հենց այս թարգմանություններն էլ դառնում են Վահան Տերյանի թարգմանչական արվեստի ձևավորման հենքը:

Հայ իրականության մեջ քաղաքական ու տեսական գրականության թարգմանությունների համարյա բացակայության, բազմաթիվ տերմինների ու արտահայտությունների հայերեն համարժեքները ստեղծելու հետ կապված դժվարությունների պայմաններում Տերյանը կարողացել է գրեթե անթերի թարգմանությամբ հայ ընթերցողին ներկայացնել լենինյան այդ աշխատությունները:

Վ. Ի. Լենինի երկերի՝ Վահան Տերյանի թարգմանության համեմատական քննությամբ ու վերլուծությամբ աշխատության հեղինակը կոնկրետ օրինակներով ցույց է տվել, թե լեզվական ինչ միջոցներով, թևավոր խոսքերով ու ոճական արտահայտություններով է թարգմանիչը կարողացել ամենաբարդ, ամենավերացական դատողությունները վերարտադրել պարզ ու մատչելի՝ առանց վնասելու բնագրի իմաստին: Համեմատելով, համադրելով ժամանակակից թարգմանությունների հետ՝ հեղինակը հանգել է այն եզրակացության, որ շատ առումներով այն գերիվեր է հետագա թարգմանություններից և ուսանելի շատ բան է պարունակում:

Գնահատելով Մ. Խոցանյանի կատարած աշխատանքը՝ հարկ ենք համարում նշել, որ հատկապես գրքի վերջին մասը դեռևս ամբողջական, ավարտուն համարել չի կարելի. այն կարող է առավել հանգամանալի, մանրակրկիտ ու գիտական ուսումնասիրության: Գրքի վերնագիրն իսկ հուշում է, որ Տերյանի՝ իբրև լենինյան երկերի պրոպագանդիստի ու թարգմանչի, գործունեությանը պետք է հատկացվեր աշխատության մեծ մասը, սակայն, ցավոք, խախտված է համամասնությունը և համեմատաբար քիչ տեղ է հատկացվել այդ թեմային:

Այդուամենայնիվ հեղինակին հաջողվել է մի անգամ ևս ցույց տալ, որ, ինչպես գրել է Ալ. Մյասնիկյանը **Պետություն և հեղափոխություն** աշխատության տերյանական թարգմանության վերջաբանում, «Տերյանի թարգմանությունն իսկապես նրա հեղափոխական պատգամն է հայ պրոլետարիատին. Տերյանն այսուհետև անբաժանելի է պրոլետարիատից և մասնավորապես հայ պրոլետարիատից»:

**Ս. ՍԱՐԳՍՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների թեկնածու**

---

*Հանձնված է շարվածքի՝ 12.06.86 թ.: Ստորագրված է տպագրության՝ 8.07.86 թ.: ՎՖ 05625 Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 17732: Պատվեր 1231:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*